# ԿՈՌՆ. ՆԵՊՈՏԱՅ

ՎԱՐՔ

# ԶՕՐԱՒԱՐԱՑ ԱՆՈՒԱՆԵԱՑ

ԶՈՐ ԹԱՐԳՄԱՆԵԱԼ Է

Հ. ՂԵՒՈՆԴԵԱՅ ՅՈՎՆԱՆԵԱՆՑ

ՅԱՇԱԿԵՐՏԱՑ ՄԵԾԻ ՀՕՐՆ

ՄԽԻԹԱՐԱՅ





Ի ՎԻԷՆՆԱ

Ի ՎԱՆՍ Պ. Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ

1842 ՌՄՂԱ

# ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆՔ

# ՀՌՈՄԱՅԵՑՒՈՑ

## ՄԱՏԵՆԱԳՐԱՑ



---

## Ա



ԿՈՌՆ· ՆԵՊՈՏ

# ԿՈՌՆ. ՆԷՊՈՏԱՑ

## Վ Ա Ր Ք

# Զ Օ Ր Ա Ւ Ա Ր Ա Ց

## Ա Ն Ո Ւ Ա Ն Ե Ա Ց

ԶՈՐ ԹԱՐԳՄԱՆԵԱԼ Է

Հ. ՂԵՒՈՆԴԵԱՅ ՅՈՎՆԱՆԵԱՆՑ

ՅԱՇԱԿԵՐՏԱՑ ՄԵԾԻ ՀՕՐՆ

ՄԽԻԹԱՐԱՅ





Ի ՎԻԷՆՆԱ

Ի ՎԱՆՍ Պ. Մ. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ

1842 ՌՄՂԱ

# Կ. ՆԵՊՈՍՏԱՅ

## ՎԱՐՔ

# ԶՕՐԱՎԱՐԱՑ

## ԱՆՈՒԱՆԵԱՑ

### ՅԱՌԱՋԱԲԱՆ

ԶԿԱՍԿԱԾԵՄ, ո՛ Ատտիկէ, եթէ բազումք իցեն, որ զայս սեռ գրոյ գոյզն ինչ եւ ոչ արժանի արանց գլխաւորաց համարիցին, իբրեւ ընթեռնուցուն ի պատմութեանս եթէ ո՛վ Էպամինոնդեայ զնուագածութիւնն ուսուցեալ իցէ, եւ կամ յորժամ ի նորա քաջութիւնսն լսիցեն եթէ ճարտար կաքաւէր եւ քաջ երգէր սրնգաւ։ Բայց որ այդպէսն խորհիցին, թերեւս նոքին իսկ իցեն

որք սովորութեանց եւ դպրութեան Յունաց աշխարհին չիցեն տեղեակ. եւ որ ինչ միաբան իւրեանց բարոյից չիցէ, զայն չհամարիցին ուղիղ: Ոքա թէ ուսանիցին եթէ ոչ ամենեցուն նոյն մի ինչ պարկեշտութեան կամ ծանականաց է, այդ ամենայն ինչ ի նախնեաց խտրանաց ընտրիցի, այնու հետեւ չզարմանայցեն ինչ ընդ մեր զՅունաց սովորութեանց զհետ երթալ, յորժամ զնոցա առաջինութիւնս պատմիցեմք: Քանզի եւ ոչ Կիմոնի քարուականութիւն էր, առն գլխաւորի աթենացւոց զիւր իսկ քոյր հարազատ ի կնութիւն ունել, զի ամենայն նորին քաղաքի քաղաքացիք նովին հաստատութեամբ վարէին. այլ այն ըստ մերոց բարուց անարժան ինչ հաշուի: Չիք այրի ի Ղակեդմոնիա, թէպէտ եւ ի կարի իսկ յազնուականաց ոք իցէ, որ ոչ վարձուք ի գուսանութեան արուեստըն վարձիցի: Դարձեալ մեծ պատիւ համարէր ի համօրէն Յունաց աշ-

խարհին , յաղթօղ ըմբշական մրր-
ցութեանցն քարոզել : Իսկ ի թա-
տերս երթալ եւ տեսիլ նշաւակի ամ-
բոխին լինել ոչ ումեք յազգաց ան-
տի ամօթանք ինչ թուէին : Յայսմ
ամենայնէ է ինչ որ առ մեզ դրսովու-
թեան համարի , եւ է որ խոնարհա-
գոյն եւ ի ցածութենէ հեռի :

Նմին հակառակ բազում ինչ որ
մեզ վայելուչն կարծին , առ նոցա-
նէ ծանականաց իրք հաշուին : Եւ
արդարեւ իսկ ո՞ ոք հռոմայեցի այր
ամօթ համարիցի զիւր կին ի խրա-
խունս ածել . ո՞ր տանտիկին իցէ որ
ոչ զառաջին տեղին ունիցի ի տան ,
եւ ի ժողովս արանց խօսիցի . որ կա-
րի այլազգ առնի ի Յունաց աշխար-
հին , զի ոչ յուրախութիւն ուրեք
երթան կանայք եթէ ոչ ջերմոցն ,
եւ ի ներքսագոյն կողմն տաննստին
զոր Գինեկոնիտիս անուանեալ կո-
չեն ; որ է կանանց տուն , յոր հուպ
ոք չերթայ , բայց միայն որ ի մօ-
տաւոր ազգականութենէ իցէ :

Այլ աստէն բազում բանս տողել թանձրութիւն մատենիս արգելու, եւ փութամ իսկ զի զոր սկսայն յայս առնիցեմ։ Վասն այնորիկ իսկ յայն որ առաջին կայ եկեսցուք, եւ կարգեսցուք ի գիրս յայս զվարս Հայակապ զօրաւարացն։

# ՅԱՆԴԻՄԱՆՈՒԹԻՒՆ

Ա. ՄԻՂՏԻԱԴԵՍ զօրաւոր գաղթականութեանն ի ճանապարհին ծառս առնէ ի ղեմնացւոց։ Բ. Յետ քերսոնեսացւոց քաղաքին տիրելոյ, զՂեմնոն առնու եւ զԿիւկղադան։ Գ. Մինչ դեռ Դարեհն ընդ սկիւթացւոց տայր պատերազմ, Միղտիադէս՝ որ պահապան էր կամրջին, խրատ տայ զպարսկական տէրութիւնն հարկանել քակել, բայց Հիստիէոս նմա խափան լինի։ Դ. Ի խաղալ Դարեհի ի վերայ Յունաց զիւրսն ճոխութեամբ համարձակեցոյց զի ընդ առաջ երթիցեն թշնամւոյն։ Ե. Յառաջ քան զնիզակակցացն հասանել Պարսից յաղթէ ի մարաթոնական կռուին։ Զ. Վարձս ընդ յաղթութեանն առնու։ Է. Յետ Պարեայ պատերազմին ի բաց թողլոյ, պատժապարտ լեալ ի կապանս ի պահեստի մեռանի։ Ը. Ճշմարիտ պատճառք պատժոց Միղտիադեայ, ժողովրդեան կասկածն։

# ԱՌԱՋԻՆ

## Մ Ի Ղ Տ Ի Ա Դ Է Ս

### Ա Թ Ե Ն Ա Ց Ի

Ա. ՄԻՂՏԻԱԴԷՍ կիմոնի աթենացի նախաւորութեամբ ազգին, եւ փառաւորութեամբ նախնեացն, եւ իւրովն զգաստութեամբ անցանէր զանցանէր զամենեքումբք, եւ յայնպիսի, տիս էր, զի ոչ միայն բարւոյ ակն ունէին ի նմանէ իւր առհմային քաղաքացիքն, այլ եւ վստահ եւս էին եթէ այնպիսի ոք լինելոց է, որպիսի յետոյ զչափ առեալ գիտացին։ Դէպ լինէր աթենացւոց վարատականս ի քերսոնեսացւոց աշխարհն արձակել։ Եւ քանզի բազում յաճախութիւն էր գաղթականացն, եւ շատք եւս ընդելանէին յարել ի նոսա, զայս ոմանս ի նոցանէ ի Դեղփիս ընդրեալ առաքեցին, զի զԱպողոն հարցանիցեն եթէ ո զօրաւար գաղթականութեանն լինիցի։ Զի

Թրակացիք ի ժամանակին բռնա-
ցեալ ունէին զկողմանն զայնոսիկ,
ընդ որս պնդոյք եւ ապառաժինօք
հարկ էր ի մարտ պատերազմի բախել:
Եւ քրմացն այսպիսի ինչ նախիղ-
ձիկս բարբառեալ եթէ Միղտիադէս
զօրաւար լիցի, զայդ եթէ առնի-
ցեն, իւրեանց յաջողութեամբ ի գլուխ
ելանիցեն: Իբրեւ այս հրամանք ի
դիցն լինէին, Միղտիադէս ընտիր
ընտիր զօրու աորմիղ նաւամարտիկ
նաւուց գումարէր, խաղայր գնայր
ի Քերսոնեսոսն. եւ իբրեւ մօտ ի
Լեմնոն հասանէր, զբնակիչս կղզւոյն
ընդ աթենացւոցն իշխանութեամբ
նուաճել կամէր, եւ թէ զայն զե-
մնացիքն ինքնակամ գործիցեն: Նո-
քա ծաղր արարեալ տային պա-
տասխանի եթէ զայն յայնժամ առ-
նիցեն յորժամ հիւսիսի շնչիցէ, եւ
նա նաւարկեալ յիւրոցն ի Լեմնոն
հասանիցէ: Քանզի այս հողմ ի
հիւսիսոյ շնչեալ, ընդդէմ նոցա է,
որ յաթենացւոց քաղաքէն նաւար-
կիցեն: Միղտիադէս իբրեւ տեսա-
նէր եթէ չէր ժամանակ յամելոյ,
դէմ եդեալ ի Քերսոնեսացւոց աշ-
խարհն հասանէր:

շանցն կռուելոյ խնդրէր զի զքաղաքն ի ձեռս առցէ։ Վասնզի էր իսկ առացեալ նոցա եթէ յորժամ հիւսիսային հողմով նաւարկեալ յաշխարհէն անդր դարցէ, լինիցին անձնատուրք. արդ այժմ նորա աշխարհ Քերսոնեսոսն է։ Կարեայք՝ որ ի ժամանակին ի Լեմնոսն բնակէին, թէպէտ եւ ոչ որպէս կարծէինն իւրքն դիպեցան, այլ յաջողութենէ անտի հակառակորդացն գրաւեալք, դիմադարձ լինել չիշխեցին, եւ ի բաց թողեալ զկղզին երթային յո եւ երթայինն։ Նովին յաջողութեամբ եւ զայլ եւս կղզիսն որ Կիկղադքն անուանեալ կոչին, ընդ աթենացւոց իշխանութեամբ նուաճէր։

Գ. Ի ՆՈՅՆ ժամանակաւ Դարեհ արքայ Պարսից ի մտի դնէր յասիացւոց անտի խաղալ գնալ զօրու ի կողմանս եւրոպէացւոց, տալ մարտ պատերազմի ընդ սկիւթացիսն։ Կամուրջ ի վերայ Իստրոս գետոյ գործէր զի ընդ այն զզօրսն անցուցանիցէ։ Եւ կամրջացն, մինչ դեռ հեռին էր, պահապանս թողոյր զիշխանս զորս ընդ իւր ի Յոնիայ եւ յԵւոլիդեայ առեալ ածէր, որոց իւրաքանչիւր

զայնց քաղաքաց հանապազորդ իշ-
խանութիւն շնորհեալ էր։ Վասնզի
այսպէս դիւրին իմն համարեցաւ ըզ-
յունալեզուսն՝ որ յԱսիա բնակիցեն,
ընդ ձեռամբ նուաճել, եթէ բա-
րեկամաց իւրոց տայցէ զքաղաքսն զի
զգուշանայցեն, որոց յետ իւրոյ պար-
տելոյ, չկայցէ ինչ յոյս ապրանաց.
Միլտիադէս եւս էր թելակալ պա-
հապան ընդ այնոսիկ որոց պահպա-
նութիւն յանձն էր։ Երբեմն յաճախ
զուժկանք հասանէին Դարեհի ձա-
խողել եւ ի պարտութիւն ի սկիւ-
թացւոց մատնել, Միլտիադէս խր-
րատ տայր նոցա՝ որ պահ ունէին կա-
մրրջացն, մի զդէպսն՝ որ յաջողե-
ցանն նոցա յազատութիւն զՅոյնս
հանելոյ, ի ձեռաց թողուցուն։ Զի
թէ Դարեհ հանդերձ զօրուն՝ զոր
ընդ իւրն ածեալ իցէ, սատակիցի,
ոչ միայն եւրոպացւոց աշխարհս յա-
մուր զգուշութեան կայցէ, այլ եւ
նոքին՝ որք յասիացւոց աշխարհին
բնակիցեն ի Յունաց ազգէ, ազատք
ի Պարսից տէրութենէ եւ ի տագնա-
պէն լինիցին։ Եւ այնմ մարթիցի
դիւրաւ ի գլուխ ելանել, զի իբրեւ
զկամուրջն հատանիցեն, թագա-

ւորն կամ ի սուր սուսերի թշնա-
մեացն եւ կամ ի սովոյ ի տակաւ ա-
ւուրս տառապէին։ Իբրեւ բազումք
յնոց խորհրդոյն հաւանէին, Հիս-
տիէոս Միղեսացի ընդդէմ դառնայր
զի մի իրքն ի գլուխ ելանիցեն, եւ
ասէր Ոչ նոյն մի ինչ նոցա՝ որ ըզ-
գլխաւոր իշխանութիւնն ունիցին,
եւ բազմութեանն յօգուտ լինիցի.
զի Դարեհի թագաւորութեամբն
կայցէ ի կայի իշխանութիւն նոցա,
ապա թէ այն քակիցի, ինքեանք
եւս յիշխանութենէն անկանիցին,
եւ պատիժ պատուհասի յիւրեանց
քաղաքացւոցն կրիցեն։ Այնն իրի
ինքն խորշիցի եւ զարշիցի յայդոցն
խորհրդոց, այնպէս զի եւ չհամարի-
ցի ինչ նոցա առաւել ծգտանկար
քան զհաստատել թագաւորու-
թեանն Դարեհի։ Իբրեւ շատք զհետ
նորա մտացն գնացին, Միղտիադէս
չլինէր երկմիտ եթէ ի բազմաց անտի
որ խրատէին եղեն, խորհուրդքն յա-
կանջս թագաւորին հասանիցեն, եւ
թողեալ զԽերսոնեսոս դէմ եդեալ
անդրէն յԱթէնս կոյս չոգաւ։ Արդ-
թէպէտ եւ բանն ոչ կատարեցաւ,
սակայն կարի իսկ յարգանաց է, այ-

Ընդ այն աղմուկ յուզեալ աթե-նացւոցն, որ մօտ առ. կուրծս հա-սեալ կայր, թիկունս օգնականու-թեան ոչ ուստեք եթէ ոչ ի ղակեդ-մոնացւոց խնդրէին. եւ գփիղիպպի-դէս ուրհանդակ յայնցանէ որ Եմե-րոդրոմիքն կոչին, ի ղակեդմոնացւոց քաղաքն առաքէին, պատմել թէ արագ օգնականութեան եւ թիկանց պէտք են: Եւ անդէն յիւրեանս տա-սըն այր իշխան հազարապետ կար-գէին, զի ի վերայ զօրուն կայցեն, եւ զՄիղտիադէս ընդ նոսա: Եւ եղեւ հակառակութիւն մեծ ի մէջ նոցա, եթէ ի պարի՞սպս ամրանայցեն, ե-թէ ընդ առաջ երթեալ ի դիմի հար-կանիցին թշնամեացն եւ ճակատ տայցեն: Միղտիադէս միայն առա-ւելագոյն ջանայր, զի վաղվաղակի բանակս հարկանիցեն. եւ եթէ զայդ առնիցեն, եւ քաղաքացիք զօրա-ցին, իբրեւ տեսցեն եթէ չեն ինչ անյոյս ի նոցա քաջութենէ, եւ թը-շնամիքն հեղգագոյնք լինիցին, յոր-ժամ տեսցեն եթէ այդպիսի սակա-ւաձեռն գնդաւ իշխիցեն կռուել:

Ե. ՅՈՒՆՔ ժամանակի ոչ ուստեք զօրաւիգն օգնականութեան լինէին

աթենացւոցն բայց միայն ի պղատէացւոյ՝ որ առաքեցին զօրս հազար մի։ Ի սոցա գալ լինէր տասն հազար վառեալ սպառազէն, եւ անհնարին տապէին զօրքն ելանել տալ մարտ պատերազմի. վասն որոյ զօրանայր Մ՝իլտիադեայ բանն քան զայլոցն որ նիզակակիցք նորա էին։ Նորին ճոխութեամբ աթենացիք զզօրսն ի քաղաքէն հանէին, եւ ի պատեհ տեղւոջ բանակ հարկանէին. ապա ի վաղիւ անդր առ լերանց ստորոտովք դէմ յանդիման թշնամեաց գնդին ճակատ յարդարէին, մեծաւ ճարտարութեամբ անհնարին սաստկութեամբ զմարտն մղեցին։ Զի ծառատունկ բազում ունէր զվայրն, զի ի լերանցն բարձրութենէ պատրսպարիցն, եւ ի ծառոյն լինիցի խափան առն եւ ձիոյ թշնամեացն, զի մի շուրջ փակիցին ի բազմութենէն։ Դատիս թէպէտ եւ ոչ դիպան զտեղին տեսանէր, սակայն ի բազմութիւն զօրացն յուսացեալ կամէր ընդխառնել, վասն այնորիկ մանաւանդ զի մինչ չեւ ղակեդմոնացւոյն ի թիկունս հասեալ, տալ պատերազմ ի դէպ համարէր։ Նմին

յաղթութիւն հան, այսպիսի ինչ պատիւ տուեալ ի սրահին որ անուանեալ կոչի Պիկիլէ. զի իբրեւ մարաթոնական կռուին նկարիցի, ի մէջ տասն իշխանացն նաեւ նորին պատկեր գծիցի, որպէս թէ քաջալերս զօրացն տայցէ եւ զպատերազմն մղիցէ: Այլ նոյն ազգ իբրեւ ի մեծ իշխանութիւն եհաս, եւ անչափ ազատութեամբ իշխանացն զեղծաւ, երեքհարիւր անդրի պատկերս Դեմետրի փաղերեանց տայր կանգնել:

Է. ՅԵՏ պատերազմին տորմիղ եւթանասուն նաւուց տային աթենացիք նմին Միլտիադեայ, զի ընդկզեալ որք բարբարոսացն թիկունք լեալ էին, ի մարտ պատերազմի բախիցէ: Նոյնին իշխանութեամբն զբազումս ստիպեաց դառնալ ի հնազանդութիւն, եւ զոմանս բռնութեամբ փլանդէր: Ի նոցանէ զՊարոսն կղզի` որ մեծութեամբն հպարտացեալ էր, իբրեւ բանիւք չկարաց ածել յաղերս, զզօրսն ի նաւացն հանէր, եւ շուրջ նստեալ զքաղաքն պաշարէր, եւ արգելեալ զամենայն պաշար: Յետոյ աւուրբք բազում մեքենայս եւ պատուարս եւ նետա-

կալս չինէր, եւ ի պարխապս անդր մատուցանէր։ Իբրեւ յառնուլ երքաղաքն, դէպք եւ պատահարք պատահէին հեռի ի ցամաքի յանկարծ դիպէրի անտառի հրձիգ լինել։ Զորոյ զբոցն իբրեւ տեսանէին բնակիչք կղզւոյն եւ որ շուրջն նստեալ պահէին զնոսա, սոքա եւ նոքա ի կարծիս անկանէին եթէ այդ նշան նաւական զօրու թագաւորին իցէ։ Վասն այնորիկ պարիացիք ձեռս տալ չկամէին, եւ Միղտիադէս երկուցեալ թէ մի արքունի նաւատորմիղն հասանիցէ, հրձիգ առնէր զգործիսն եւ անդէն ամենայն նաւօքն՝ որովք երթեալն էր, նոքիմբք նաւարկեալ յԱթէնս դառնայր. ընդ որ զայրանային իմն քաղաքայիքն։ Ամբաստանութիւն լինեալ զնմանէ եթէ ի թշնամիս անդր մատնուու եղեւ, զի իբրեւ զՊարոն կղզի ձեռնհաս էր առնուլ, կաշառեալ ի թագաւորէն, ի պաշարմանէն ի բաց եկաց։ Յայնմ ժամանակի անկեալ դնէր նա խաւթացեալ ի վիրաց անտի զոր առ մինչդեռ ընդ քաղաքին կռուէր։ Եւ իբրեւ չէր առակ ինքն ընդ անձին առնել պատասխանի, նորին եղբայր

Տիսագորաս տայր պատասխանի փո-
խանակ նորա ։ Իբրեւ իրքն ի յայտ
գային, ապրէր ի մահուանէ, բայց
կամէին զի տուժեսցի յիսուն քան-
քարս արծաթոյ, որչափ ծախք ի
նաւսն եղեն. եւ իբրեւ չկարաց հա-
տուցանել, արկաւ ի բանդ ուր եւ
մեռաւ իսկ ։

Ը. Արդ թէպէտ եւ վասն բանի
պարիացւոց քաղաքին ամբաստանե-
ցաւ, սակայն այլ իմն պատճառք
պարտաւորութեանն էին ։ Զի ա-
թենացիք յաղագս Պիսիստրատեայ
բռնակալութեանն՝ որ սակաւ ամօք
կանխագոյն եղեւ, յիւրեանց քաղա-
քացւոցն ամենեցունց իշխանութե-
նէ երկուցեալ կասկածէին ։ Արդ
Միղտիադէս քանզի բազում ժամա-
նակս յիշխանութեան եւ ի պետու-
թեան էր, թուէր այնպէս եթէ չի-
ցէ մարթ այնու հետեւ զհասարա-
կաց կեանս կեալ. մանաւանդ զի ան-
դրստին ի սովորութենէ իսկ յիշխա-
նութեանն ցանկութիւն յօժարել
կարծէր ։ Քանզի զամենայն զայն ա-
միս՝ զոր ի Քերսոնեսոսն եկաց, ըղ-
մշտնջենաւոր իշխանութիւնն ունէր,
եւ անուանեալ կոչէր բռնաւոր, այլ

վերադարձան հանդերձ Սայիդ բռնա-
ւոր: Զի ոչ եթէ բռնութեամբ ինչ
կայն պատիւ ըմբռնէր, այլ իւրոյ ան-
փոփոխամտոյն կամացք, եւ իւրով լաւու-
թեամբն հաստատուն ունէր: Քան-
զի ամենեքին՝ որք մշտնջենաւոր իշ-
խանութիւն ի քաղաքի որ տղաման
լիցէ, ունիցին, բռնաւորք կոչին: Նոյն
Միղարիատէս այնչափ մարդասիրու-
թիւն եւ հաղորդութիւն ընդ ամե-
նեսեան ունէր, զի եւ կարի իսկ ան-
տրգաց միութ էր համարձակ առ նա
մատանել եւ եղանել. ունէր եւ բա-
զում ճոխութիւն, յամենայն քաղա-
քրո, եւ բարգաւաճանս եւ յառ-
գանս ի գործ պատերազմի: Ընդ
այն հայեցեալ ժողովրդեանն, կա-
մէին առնուլ զնա որ անպարտ էր,
խոշտանգեսցի, քան թէ նոքեանք
հանապազ ի կասկածանս կացցեն:

# ՑԱՆԴԻՄԱՆՈՒԹԻՒՆ

Ա. ԹԵՄԻՍՏՈԿԼԷՍ ի մանկութեան իստահակութիւն հատուս եւ ի հօրէն տարագիր ի ժառանգութենէ լեալ, միջամուխ ի քաղաքի իրս եղեւ։ Բ. Թեմիստոկղէս երեւելի լեալ կորկիւրական եւ պարսկական մարտիւն։ Գ. Թեմիստոկղի առ Արտեմիսեաւ ի կռուի յաղթողութիւնն։ Դ. Ի Սաղամին ի պարտութիւն մատնի Քսերքսէս։ Ե. Քսերքսէս յեւրոպացւոց աշխարհէն մերժի։ Զ. Յետ մարտին ի գլուխ ելանելոյ, զպարիսպն նորոգէ։ Է. Զբապարտացին յետ հնարիւք պատրելոյ սաստիկ կշտամբեալ յանդիմանէ։ Ը. Յաշխարհէ ի բաց ընկեցեալ պէսպէս փախըստեամբ շրջէր։ Թ. Թեմիստոկղի առ Արտաշէս գիր։ Ժ. Զպարսկերէն լեզուն ուսանի, եւ զհասս քաղաքաց ինչ ի թագաւորէն առնու. Նորին մահն եւ թաղել։

ԵՐԿՐՈՐԴ

# ԹԵՄԻՍՏՈԿՂԷՍ

## ԱԹԵՆԱՑԻ

Ա. ԹԵՄԻՍՏՈԿՂԷՍ ուստր Նէոկղի աթենացի, զմանկութեան բիծս մեծավաստակ առաքինութեամբքն ուղղէր, որպէս զի չառնիցի ոք նախամեծար քան զնա, եւ սակաւք նմին զոյգ համարիցին։ Այլ պարտ է ի սկզբանէ իսկ ասել։ Հայր նորա Նէոկղէս ազնուական էր. սա կին արար զոմն յաղիկառնացւոց քաղաքէ[1], յորմէ ծնաւ Թեմիստոկղէս։ Իբրեւ չլինէր հաճոյ հօրն եւ մօրն, զի անառակութեամբ կեայր, եւ զառանձին իրաց չպէտս առնէր, մերժէր զնա հայրն ի ժառանգութենէ։ Թշնամանքն զնա ոչ ի կոր ինչ կործանեցին, այլ կանգնեցին եւս։ Զի զմտաւ ածեալ եթէ առանց մեծի քաջութեան չմարթի զթշնամանսն յանձնէ ի բաց քերել, փութայր զի

օգուտ ինչ ընկերհաշտութեանն գործիցէ, եւ բազում հաւատեաւ բարեկամաց եւ համբաւոյ պատկառ կայր ։ Յաճախ յայլոց դատաստանս զանձն ի ներքս խառնէր. բազում անգամ յանդիմանս լինէր ի ժողովս ժողովրդեանն, ոչ ինչ իբր մեծամեծք առանց նորա վճարէին, վաղվաղակի որ ինչ պէտք լինէին, դատանէր, եւ զայն գիրաւ ճառիւք յայտ արարեալ ցուցանէր ։ Եւ զոր օրինակ կայտառ եւ կազմ ի գործս էր, նոյնպէս եւ առ հնարս իմանալ՝ փոյթ ։ Քանզի եւ զորոց առաջին կային, որպէս ասացն իսկ Թուկիդիդէս, ճըշմարտութեամբ առնէր դատաստան եւ զլինելոց իրաց խորագիտութեամբ ածէր զմտաւ ։ Որով եւ ի սակաւ ժամանակի պայծառանայր ։

Բ. ՕՐԻՆԱԿԻՆՆ ի կորկիւրական պատերազմին մտանէր ի գործ առաջնորդութեան քաղաքի. զի ընտրեցաւ հազարապետ ի ժողովրդենէն մղել զպատերազմն. եւ ոչ միայն ի պատերազմին որ առաջի կայր, այլ եւ յայլսն եւս ժամանակս զազմնագոյն եւ վայրենագոյն զքաղաքըն կազմէր ։ Քանզի իբրեւ հաստա-

բակաց դանձուց զոր ՚ի քրէական մետաղայն փորէին հանէին, յիշխանացն առատութենէ տարւոյ տարի կորուսա լինէր, ած զժողովուրդն ի հաւան զի նովին արծաթով տորմիղ հարեւր ՚նաւաց կազմիցի։ Եւ երբեւ այն արագ արագ ի գլուխ ելանէր, նախ զկորկիւրացիս հարկանէր, եւ ապա զծովական հէնսն հալածեալ զծով ի զգուշութեան առնէր։ Որով զաթենացիս մեծութեամբ զարդարէր, եւ հմուտս նաւամարտիկ պատերազմաց դործէր։ Եւ թէ որպիսի օգուտ անտի համօրէն Յունաց աշխարհին եղեւ, այն յայտ ի Պարսից պատերազմէն լինէր, յորժամ Քսերքսէսն ընդ ծով եւ ընդ ցամաք ի մարտ պատերազմի ընդ եւրոպէացւոց աշխարհին գրգռէր, այնչափ բազմութեամբ զօրաց որչափ ոչ յառաջ ոք եւ ոչ յետոյ գումարեաց երբեք. հազար եւ երկերիւր պատերազմիկ նաւօք, եւ այլ եւս երկու հազար լցեալ ակաղձեալ բեռամբ, եւ եւթանասուն բեւր հետեւակ զօրու, եւ քառասուն բիւրուք հեծելոց։ Եւ երբեւ համբաւ նորա զալատեանն ի Յոյնս հասանէր, եւ թէ առաւել ընդդէմ աթենա-

ցուոց դիմեալ զայ վասն պատերա-
զմին՝ որ ի Մ՚արաթոն գումարեցաւ, վաղվաղակի արս ի Դ՚եղփիս առաքեցին հարցանել թէ զինչ գործ գործիցեն, եւ հրաման պատասխանւոյ լինեալ ի դիցն եթէ ի պարիսպս փայտեղէնս ամրանայցեն։ Նա քանզի ոչ ոք ի վերայ հասանէր մտաց պատասխանւոյն, Թ՚եմիստոկլէս հաւանեցուցանէր թէ այդ խորհուրդ է Ապողոնեայ զի ի նաւս զանձինս եւ զամենայն ինչս իւրեանց առնիցեն ապաստան. զի զայն փայտեղէն պարիսպն ասել դիցն յայտ առնիցէ։ Իսկ իբրեւ հաճոյ թուեցաւ խրատն, յաւելյին յառաջինսն այլ եւս նոյնչափ պատերազմիկ նաւս, եւ զամենայն զկահ եւ զկազմած իւրեանց ի Սաղամին եւ ի Տրեզենէ փոխէին, եւ զամուրն քրմացն եւ սակաւ ծերոց թողուին զի զոհս զոհիցեն, եւ ինքեանք ելեալ գնային։

Գ. Սոր. խրատն բազմաց ի քաղաքաց չթուէր հաճոյ, եւ ի ցամաքի կռուել առաւել կամէին. վասն այնորիկ արս ընտիրս ընդ Ղեւոնիդեայ ղակեդմոնացւոց թագաւորի առաքէին, զի զԹ՚երմոպիւղիս կալցին,

եւ չտայցեն հինին յառաջ խաղալ ։ Նոքա չկարէին զդէմ ունել զօրութեան թշնամեացն, եւ ի նմին վայրի ամենեքին սատակէին ։ Այլ հասարակաց՝ երեքհարեւր տորմիղ նաւացն Յունաց, յորոց երկերիւր նաւք աթենացւոց էին, զառաջինն առ Արտեմիսեաւ, ի մէջ Եւբէայ եւ ցամաքին, ընդ նաւական զօրու թագաւորին ի մարտ պատերազմի բախէին. քանզի Թեմիստոկղէս զանձուկն խնդրէր, զի մի ի բազմութենէն շուրջ պաշարիցի ։ Արդ թէպէտ եւ հաւասար զօրութեամբ ի ճակատուէ անտի մեկնեցան, սակայն կալ մնալ ի նմին տեղւոջ չիշխէին ։ Քանզի տագնապ էր եթէ մասն մի նաւացն հակառակորդաց անդր քան զԵւբէա անցանիցէ, եւ ինքեանք յերկոցունց կողմանց ի տագնապ անկանիցին ։ Վասն որոյ մեկնեալ գնային յԱրտեմիսեայ եւ հանդէպ աթենացւոց քաղաքին մօտ ի Սաղամին եկեալ զիւրեանց տորմիղ նաւացն հաստատէին ։

Դ. ԱՅԻ. Քսերքսէս զԹերմոպիղէս առեալ, մօտագոյն ի քաղաք անդր հասանէր, եւ իբրեւ չէր ոք

դիմակալ, զքուրմն՝ զոր ի բերդին պատանէր, կոտորէր, եւ զքաղաքն հրձիգ առնէր։ Ի բոցոյ անտի[2] ահիւ զարհուրեալ նաւական զօրուն, իբրեւ կալ մնալ չիշխէին, եւ բազումք եւս յօժարեցուցանէին զի ի քաղաքս իւրեանց իջանիցեն եւ ի պարիսպս ամրանայցեն, Թեմիստոկղէս միայն ընդդէմ կայր, եւ ասէր Եթէ միաժողով կայցեն, յաղթիցեն, ապա թէ ցանեալ ցրուիցին, կորընչելոց են. զնոյն եւ Եւրիպիադեայ ղակեդմոնացւոց արքայի՝ որ յայնժամ զգլխաւոր իշխանութիւնն ունէր, յայտ առնէր։ Եւ իբրեւ չկարէր ածել ի հաւան, գիշերայն զմի ի ծառայից անտի իւրոց՝ որ կարի հաւատարիմն էր նմա, առ Թագաւորն յղէր պատմել նմա, եթէ ի փախստի են հակառակորդք նորա, որ եթէ պըրծանիցին, բազում աշխատութեամբ եւ երկայն ժամանակաւ զպատերազմըն վճարելոց է, զի հարկ լինիցի ուրոյն ընդ ամենեսին կռուել. եւ եթէ վաղվաղակի ի վերայ յարձակիցի, ի սակաւ ժամանակի զամենեսին ընդձեռամբ նուաճիցէ։ Եւ զայս վասն այնորիկ առնէր, զի բռնադատեսցէ

զամենեսեան յակամայ կամս ի դիմի հարկանել թշնամեաց: Զայս իբրեւ լսէր խուժդուժն, ոչ ինչ ի նենգութենէն կասկածէր. եւ յաւուրն երկրորդի ի տեղւոջ՝ որ նոցա չէր պատեհ, եւ թշնամեացն կարի իսկ դիպան, ի կրճի ծովուն ընդխառնէր ի պատերազմ, մինչեւ ոչ կարել տարածանել նաւացն բազմութեան: Եւ պարտէր առաւել Թեմիստոկղի խըրատուն քան Յունաց զինուք:

Ե. ԱՆԴ թէպէտ եւ ձախողեցաւ նմա, սակայն այնչափ մեացորդք էին զօրացն, զի եւ նոքօք մարթէր զթըշնամիս նուաճել, բայց յայնմանէ եւս վրիպէր. զի երկուցեալ Թեմիստոկղեայ, զի մի յաւելուցու կռուել, յայս առնէր եթէ զկամուրջն՝ զոր յՀեղեսպոնտոս գործեաց, քակելոց են, զի յասիացւոց աշխարհն դառնալոյ խափան լինիցի: Եւ հաւանեցոյց եւս զնա ի նոյն: Վասն որոյ ընդ որ ճանապարհ արարեալ էր զվեց ամիս, ընդ նոյն յաւուրս երեսուն յասիացւոց աշխարհն դառնայր. եւ ոչ եթէ ի պարտութիւն ինչ մատնեալ ի Թեմիստոկղեայ, այլ առաւել ըզգուշացեալ զանձն համարէր: Ընդ

այսպէս միոյն իմաստութեամբ ապ-րէր Յունաց աշխարհն, եւ ասիացւոց կողմանք ընդ եւրոպէացւոց աշխար-հանուաճէին: Այս մեւս եւս յաղ-թութիւն է, զոր մարթի ընդ մա-րաթոնական յաղթութեան նշանին կշռել: Քանզի եւ աստ առ Սաղա-մինաւ յաղթեալ պարտեցաւ նաւա-մարտիկ տորմիղ նաւաց, որչափ չիք ուրուք լուեալ եթէ զումարեալ եր-բեք իցէ:

Զ. Մնա էր Թեմիստոկլէս ի մար-տին ժամանակի, այլ ոչ եթէ նաւա-զագոյն ինչ յետ այնորիկ ի խաղա-ղութեան: Քանզի մինչեւ ցայն ժա-մանակս չէր այլ նաւահանգիստ Ա-թենացւոց, բայց միայն փաղերա-կանն որ չէր ինչ մեծ եւ ոչ ազնուա-գոյն, նորա խորհրդովն նաւահան-գիստն՝ որ անուանեալ կոչի Պիրեւս, շինեցաւ եւ պարսպեցաւ իսկ ի նմա-նէ. որպէս զի զեղեցկութեամբն քա-ղաքին կշիռ համեմատ գտանէր, եւ պիտոյիւք գլէր: Յետ այսորիկ ըղ-պարիսպս քաղաքին նորոգէր իւրով իսկ անձինն վնասու. քանզի ղակե-դմոնացիք դիպօղ պատճառս գտեալ վասն բարբարոսացն արշաւանաց զի

Հակառակ կայցեն, եթէ չէ պարտ արտաքս քան զՊետրոպոնեսոս լինել քաղաքի, զի մի իցեն ամուր տեղիք զոր թշնամիքն ըմբռնիցեն, Ջանային խափան լինել աթենացւոցն զի մի շինիցեն: Այս ամենեւին յայլ իմն միտս ուշ արարեալ նկատէր, քան զոր ինքեանք կեղծաւորէին երեւել: Քանզի աթենացիք վասն երկուց յաղթութեանցն՝ զոր ի Մարաթոն եւ ի Սաղամին յաղթեցին, յայնչափ փառաւորութիւն հասին, որպէս զի եւ ղակեդմոնացիք անդստին առնոյին ի միտ եթէ վասն գահերէց գլխաւորութեանն ոսցա ընդ նոսա կռիւ ի միջի լինելոց է. վասն որոյ եւ տկարս եւ անզօրս կամէին թէ իցեն: Եւ իբրեւ լուր լինէր նոցա պարըսպաց շինել, հրեշտակս յԱթէնս առաքէին զի արգելուցուն: Իբրեւ նոքա մօտ էին, դադարեցին, եւ խոստացան վաղվաղակի զսոցին իւրաց հրրեշտակադնացս անդր ի Ղակեդմոնիա առնել: Յանձն առ Թեմիստոկղէս իւրովի զայն հրեշտակութիւն. եւ նախ ինքն ելեալ երթայր առանձինն, հրաման տուեալ զի այլ եւս պատգամաւորքն յետոյ, յոր-

ժամ բաւական ի բարձրութիւն հասանիցեն պարիսպքն, մեկնեսցին ի քաղաքէն: Եւ ամենայն քաղաքացիք, եթէ ծառայք իցեն եւ եթէ ազատք, ի գործ շինուածոյն փութասցեն, եւ չխնայիցեն ինչ տեղեաց եթէ մեհենականք իցեն եւ եթէ պիղծ, թէպէտ առանձին ուրուք թէպէտ հասարակաց, եւ զամենայն որ ինչ պատշաճն թուիցի ի նիւթ շինուածոյն, յամենայն կողմանց ժողովիցեն: Ուստի աթենացւոց պարիսպքն ի մեհենից եւ ի գերեզմանաց կազմէին:

Ե. ԹԵՄԻՍՏՈԿՂԷՍ իբրեւ ի Ղակեդմոնիա գայր, չկամէր անդէն վաղվաղակի յանդիման լինել իշխանացըն, եւ զժամանակն որչափ ինչ ի նա ապաստան էր, ջանայր ձգել. պատճառեալ եթէ եւ այլք գալոց են: Եւ ի ստիպել ղակեդմոնացւոց թէ եւ այնպէս իսկ վճարի գործն, եւ եթէ խաբել իմն կամիցի, անդէն այլ եւս պատգամաւորքն գային հասանէին: Իբրեւ լուեր ի նոցանէ Թեմիստոկղէս եթէ գործ պարսպացն մօտ ի վախճան է, ապա այնուհետեւ երթայր յանդիման լինել ատենի՝

ուր պարետքն իսկ էին ղակեդմոնացւոց, հրամանատարք եւ գլխաւորք քաղաքին, եւ առաջի իսկ նոցա վիճեալ պնդէր եթէ սուտ պատմեցաւ նոցա, վասն որոյ պարտ եւ պատշաճ է արս լաւս ազնուականս առաքել, որք արժանի հաւատարմութեան իցեն, զի երթիցեն զիրսն լրտեսել, եւ ինքն անդէն ի պատանդս մնայցէ: Հաճոյ թուեցան բանքն. եւ հրեշտակք երեք անդստին ի գլխաւորաց քաղաքին արձակէին ի Նացանէ Աթէնս: Հրաման ետ Թեմիստոկղէս իւրոց ընկերացն ընդ նոսա երթալ. որոց պատուէր տայր մի պայրէն ըղղակեդմոնացւոց հրեշտակս առաքել, մինչ չեւ ինքն արձակեալ իցէ: Եւ իբրեւ համարէր այնպէս եթէ Աթէնս հասին, յանդիման լինէր իշխանաց եւ ծերակուտի ղակեդմոնացւոց, եւ անդէն համարձակութեամբ ազատօրէն խոստովան լինէր առաջի նոցա, եթէ Աթենացիք իւրով իսկ խորհրդովն զհասարակաց դիս եւ զիւրեանց հայրենի կուռսն պարըսպօք պատէին, զոր մարթի ամենայն ազգաց քննել, զի դիւրաւ ի թըշնամեացն պաշտպանիցին: Եւ այ-

նու ոչինչ վնաս Յունաց աշխարհին լինիցի · զի քաղաքն նոցա իբրեւ պատուար պարսպի է ընդդէմ արշաւանաց հինաւանդին, առ որով երկիցս իսկ նաւամարտիկ տորմիղ նաւաց Պարսից նաւաբեկ եղեւ ։ Իսկ ղակեդմոնացիք չարաչար եւ առանց արդարութեան գործեն, զի այնմ իմն առաւել ուշ ունին, որ նոցա իշխանութեան շահաւոր իցէ, եւ ոչ որ համօրէն Յունաց աշխարհին օգուտ ։ Այսմ որոյ եթէ կամիցին զի հրեշտակք իւրեանց՝ զորս յաթենացւոց քաղաքն առաքեցին, դառնայցեն, զնա առաքիցեն յետս, ապա թէ ոչ, բնաւ չեն ընդունելոց զնոսա այսրէն յաշխարհն իւրեանց ։

Ի. Ի ՆՈՅՆ սակայն ի նախանձուէ եւ ի չարակնութենէ իւրոց տոհմային քաղաքացւոց չապրէր · քանզի վասն նորին կասկածի՝ որով Մ՚իղտիադէսն պարտաւորեցաւ, եւ սա զխեցեկոյս վճիռ[3] առ, եւ վտարանդի ի քաղաքէն լինեալ, յԱրգիս երթայր բնակել ։ Անդ իբրեւ վասն արուութեանցն մեծապատիւ մեծարէր, ղակեդմոնացիք հրեշտակս յԱթէնս առաքէին, ամբաստան լինել զնմա-

նէ, մինչ դեռ հեւրին իսկ էր, եթէ միաբանեալ իցէ ընդ Պարսից թագաւորին առ ի զՅունաց աշխարհն նուաճելոյ։ Եւ վասն նորուն մեասու, յորժամ ի բացեայ էր, իբրեւ զմատնիչ աշխարհին դատապարտէր։ Զայս իբրեւ լսէր, քանզի ոչ անկասկած զանձն յարգիւացուց աշխարհին կարծէր, դէմ եդեալ տարադէմ ի Կորկիւրա գնայր։ Ընդ իբրեւ տեսանէր եթէ իշխանք քաղաքին ի կասկածի կային, մի գուցէ վասն նորա ի մարտ պատերազմի ընդ նոսա աթենացիքն եւ ղակեդմոնացիք գրգռիցին, առ Ադմետոս թագաւոր մողոսացւոց, որում վանատու իսկ լեալ էր նորա, փախստական անկանէր։ Իբրեւ գայր հասանէր անդր, եւ ի բաց ուրեք գնացեալ էր ի ժամանակին թագաւորն, զի մեծաւ գթովք ի նմանէն ընկալցի, զդուստր մի նորա մանուկ յափշտակէր, եւ նովաւ հանդերձ ի մեհեան անդր՝ որ մեծաւ պաշտամամբ պաշտէր, անկանէր. եւ չելանէր անտի մինչ չեւ էր երդմամբ հաստատեալ թագաւորին, տալով զձեռն հաւանութեան, եւ պահեաց իսկ հաստատուն զդաշինան։ Զի յոր-

ժամ աթենացիք եւ ղակեդմոնացիք միաբան խնդրէին, զայրն՝ որ ի նա ապաւինեալ էր, չետ ի ձեռս, եւ յիշեցուցանէր եւս նմա անձինն ըզգուշ լինել: Զի դժուարին է, ասէ, քեզ յայսպիսի մօտաւոր վայրի անկասկած շրջել. վասն այնորիկ հըրաման տայր տանել զնա ի Պիւդնա, եւ որ ինչ պէտք վասն պահպանութեանն էին, տայր: Զայն լուեալ նորա եւ ի նաւ անդր առանց ուրուք գիտելոյ[4], որ իբրեւ ի մրրկէ վարեալ ի Նաքսոս հասանէր, ուր էին իսկ յայնժամ աթենացւոց զօրն, ի միտ առ Թեմիստոկղէս, եթէ անդր հասանիցէ, սատակելոց է: Եւ յայնմ հարկէ տագնապեալ, նաւապետին թէ ո՛ ոք իցէ, ի վեր եհան, եւ բազում ինչ խոստանայր տալ նմա, թէ միայն զանձն պահիցէ: Եւ նորա դըթացեալ յառնն վերայ, զտիւ եւ զգիշեր հեռի ի կղզւոյն անդէն խարիսխ արկեալ ի համատարած ծավուն զնաւն ունէր, եւ չառնոյր յանձն եթէ ի նաւէն ոք ելանիցէ: Անտի գայր հասանէր յԵփեսոս, անդ թափէր զԹեմիստոկղէս, եւ արար նա նմա հատուցումն ըստ արժանեացն:

Թ. ԳԻՏԵՍ զի բազումք այնպէս իմն գրեն, եթէ Թեմիստոկղէս ի Քսերքսի թագաւորել յասիացւոց աշխարհն անդ։ Բայց ես առաւել Թուկիդիդեայ հաւանիմ. զի եւ տիոք իսկ մօտ էր քան զնոսա՝ որ զայնց ժամանակաց պատմութիւն հարին ի մատեանս, եւ նմին քաղաքի քաղաքացի։ Եւ սոյն այր ճառէ զնմանէ առ Արտաշէս եկեալ, եւ գիր առաքեալ զայս ձեւ օրինակի բանից. Ես Թեմիստոկղէս եկի առ քեզ, որ բազում չարիս առաւել քան զամենայն Յոյնս ընդ ազգատոհմն քո անցուցի, իբրեւ հարկ լինէր ինձ ելանել տալ մարտ պատերազմի ընդ հօրն քում, եւ իմում գաւառին պաշտպանել։ Ես դարձեալ բազում ինչ բարիս արարի, մինչդեռ ես յամրի էի եւ նա սկսաւ կալ ի տագնապի։ Զի յորժամ չկամէրն այսրէն յասիացւոց աշխարհն դառնալ, յետ նաւամարտին կռուոյն ի Սաղամինն լինելոյ, գրրովք զնա տեղեակ արարի, եթէ կամուրջն՝ զոր Ելլեսպոնտոսն գործեալ էր, քակելոց է, եւ ի թշնամեացն շուրջ պաշարելոց. եւ նովին բանիւքն ապրեցաւ նա ի տա-

զնայպէն։ Եւ արդ այժմիկ հասեալ անկայ առ քեզ, յամենայն Յունաց աշխարհէս հալածական լեալ, եւ խնդրեմ զքո բարեկամութիւն, որում եթէ հասանիցեմ, այնու հետեւ բարեկամ հաւատարիմ ունիցիս զիս, որչափ ինչ յառաջն սաստիկ թշնամի էի։ Զայս ինչ աղաչեմ զի տացես ինձ դու տարեւոր ժամանակ վասն իրացն՝ զոր ընդ քեզ իցեմ խօսելոց, եւ ի կատարել ժամանակին յանձն առցես զալ ինձ առ քեզ։

Ժ. ԽՍՍ թագաւորին զարմացեալ ընդ նորա մեծութիւն ոգւոյն, եւ ցանկացեալ ընդ իւր միաբանել զայր մի զայնպիսի, թողութիւն ետ։ Նա զայն ամենայն ժամանակն յուսումն դպրութեան Պարսից բարբառոյն ծախէր. եւ այնպէս այնմ հմուտ լինէր, մինչեւ ասեն իմն թէ ազնուագոյնս քան զնոսա՝ որ անդստին ի Պարսից աշխարհին ծնեալ էին, առաջի թագաւորին ճառ արկեալ խօսեցաւ։ Սա իբրեւ բազում ինչ արքայի խոստանայր, եւ որ կարի հաճոյ էր, զի թէ իւրոց խրատուց զհետ երթալ կամիցի, մարտիւ պատերազմաւ զՅունաց աշխարհն նը-

ւածիցէ, բազում պարգեւս առեալ ի
Թագաւորէն յԱսիա երԹայր, եւ
իւր տեղի բնակուԹեան ի Մագնե-
սիա հաստատէր: Զայն քաղաք շը-
նորհեաց նմա Թագաւորն այսպիսի
բանիւք, Նա, առէ, տայէ քեզ հաց.
եւ յայնժամ աշխարհէ զայր նմա տայր ա-
մի հինգարեւր քանքար: Նա նմա եւ
զԼամպսակոն, ուստի զգինին առ-
նուցու, եւ զՄիունտես ուստի զխոր-
տիկսն ունիցի: Սորա երկու ինչ յի-
շատակարանք մինչեւ ցմեր ամս կա-
ցին. չիրիմն՝ որ մօտ յաԹենացւոց
քաղաքն կայ, յորում եւ Թաղե-
ցաւն իսկ, եւ անդրի պատկերք ի
հրապարակին մագնեսացւոց: Զսորա
մահուանէն բազումք բազում օրի-
նակաւ գրեցին, այլ մեք առաւել
զնոյն Թուկիդիդէս հաւատարիմ
համարիմք, որ պատմէ զնմանէ ի
Մագնեսիա ախտիւ Ջերեալ վախճա-
նել: Նա պատմէ եւս համբաւ լեալ
զնմանէ եԹէ իւրովի դեղովք անձին
արար, իբրեւ ետես եԹէ չէ կարող
ի գլուխ հանել զոր խոստացաւն
Պարսից արքային, նուաճել զաշխար-
հին Յունաց: Դարձեալ նոյն այր
պատմէ զնմանէ զայս ձեւ օրինակի,

եթէ Զոսկերս նորա գաղտ տարեալ բարեկամացն թաղէին յատտիկեցւոց աշխարհին, զի ըստ օրինացն չէր արժան, այնու զի մատնութեան պատժապարտ էր։

# ՑԱՆԴԻՄԱՆՈՒԹԻՒՆ

Ա. ԱՐԻՍՏԻԴԷՍ արդար վասն առաքինութեանն պատժեալ վտարանդի երթայ։ Բ. Միւսանգամ կոչեցեալ Արիստիդես, հազարապետ կայ. զիշխանութիւն ծովուն ըստանայ աթենացւոցն։ Գ. Արիստիդէս կայ ի վերայ գանձուն. յաղքատութեան մեռանի։

# ԵՐՐՈՐԴ

# ԱՐԻՍՏԻԴԷՍ

## ԱԹԵՆԱՑԻ

Ա. ԱՐԻՍՏԻԴԷՍ Լիւսիմաքեայ՝ Թեմիստոկլի զուգակամ գտանէր, որով եւ ընդ նմա իսկ վասն իշխանութեանն վիճէր, եւ չարախօս իսկ զմիմեանց կային։ Ինոյա իրացն յայտ լինէր եթէ որչափ քան զանմեղութիւն վերադոյն իցէ խօսողութիւնն։ Զի թէպէտ եւ այնպէս անցոյց զանցոյց Արիստիդէս զամենաքումբք ժուժկալութեամբ, զի նորա միայն անուն յորջորջանայ Արդար կոչեցաւ, որ չէ ուրեք յականջալուրս եկեալ. բայց սակայն ի Թեմիստոկլեայ հարստահարեալ, զխեցեկոյտ վճիռ առեալ տարագիր լինէր յաշխարհէն զտասն ամ։ Իբրեւ ի միտ առեալ եթէ չէ մարթ զյուզեալ ամբոխն խաղաղել, ելեալ երթայր ի քաղաքէն. եւ ասի թէ իբրեւ զնայրն,

ետես զոմն՝ որ գրէր զի մերժեսցի յաշխարհէն. եւ խնդրեաց, ասեն, եթէ ընդէ՞ր զայն առնիցէ, եւ կամ զի՞նչ ինչ վնաս Արիստիդեայ գործեալ իցէ, վասն որոյ այնչափ պատժոյ պատուհասից արժանի համարեսցի։ Նա տայր պատասխանի, թէ Ես զԱրիստիդէս ոչ գիտեմ, այլ ինձ չէ հաճոյ զի ցանկասցի արդար քան զայլսն կոչել[5]։ Սա զտասն ամաց զպատուհաս օրինացն ոչ կրեաց. քանզի յետ Քսերքսեայ ի Յունաց աշխարհն իջանելոյ, ի վեցերորդում ամի ասարագիրն լինելոյ նորա, հաւանութեամբ ռամկին դարձաւ յաշխարհն։

Բ. Այր նա եւ ի նաւամարտին կռուին առ Սաղամինաւ, որ եղեւ իսկ մինչ չեւ ի պատժոցն զերծեալ էր։ Նոյն դարձեալ իշխան հրամանատար էր աթենացւոց առ Պղատեաւ, ի կռուին յորում Մարդոնիոսն անկանէր, եւ բարբարոսացն զունդքն սատակէր։ Եւ չէք իսկ նորա այլ ինչ երեւելի ի գործ պատերազմի, բայց միայն այնր իշխանութեանն յիշատակ. իսկ արդարութեանն եւ ստուգութեան եւ անմեղութեան

բաղդում ինչ։ Մանաւանդ զի նորա արդարութեամբն լինէր զի իբրեւ ի Յունաց նաւատորմին էր ընդ Պաւսանեայ, յորայ զօրաւարութեանն փախստական լեալ էր Մարդոնիոս, աթենացիք ծովակալէին փոխանակ ղակեդմոնացւոց։ Զի յառաջ քան զայն ժամանակս եւ ի ծովու եւ ի ցամաքի գլխաւորք ղակեդմոնացիք էին, իսկ յայնժամ եւ անխառնութեամբ Պաւսանեայ եւ արդարութեամբ Արիստիդեայ, ամենայն քաղաքք Յունաց աշխարհին ընդ աթենացւոց բարեկամեալ միաբանէին, եւ ընդդէմ հինին զնոսա ընտրէին իւրեանց առաջնորդս, զի դիւրաւ վանեսցեն զթշնամիսն, եթէ միւսանգամ ի պատերազմ գրգռիցին։

Գ.. Արիստիդէս ընտրէր կարգել, եթէ որչափ ինչ առ ի տորմիղ նաւամարտիկ նաւաց կազմելոյ եւ զօրս բովանդակելոյ, իւրաքանչիւր ի քաղաքաց տայցէ։ Եւ նորա կարգելովն չորեքհարեւր վաթսուն քանքար ամի ամի ի Դեղոն գումարէր. զի կամեցան եթէ անդ հասարակաց գանձք կայցեն։ Եւ այն ամենայն արծաթ յետոյ յԱթէնս փոխեցաւ։ Թէ որ-

պիսի անարծաթասէր բարք էին առնն, յայտ անտի է, զի իբրեւ զայն-չափ իրաց զգլխաւորութիւն ունէր, յայնպիսի աղքատութեան ի կենաց վճարէր, մինչեւ հազիւ թողուլ ինչ այնչափ որով թաղեցի։ Եւ այնպէս լինէր դստերաց նորա ի հասարակաց համարուէ սնանել, եւ աւժտիւք՝ որ ի հասարակաց գանձուց շնորհեցաւ, լինել առն։ Եւ մեռաւ նա յետ չո-րից ամաց տարագիրն լինելոյ Թե-միստոկղի յաթենացւոց քաղաքէ։

# ՑԱՆԴԻՄԱՆՈՒԹԻՒՆ

Ա. ՊԱՒՍԱՆԻԱՍ Մարգոնեայ յաղթեալ ի ժպրհութիւն հատանի: Բ. Զբիւզանդացւոց քաղաքն առնու. զգերին արքունի արձակէ: Գ. Պաւսանեայ ի պանդխտութեան բարք եւ բանքն. զհեղոտացիս գրգռեր: Դ. Ի Տենարիս ի Նեպտունեայ մեհենի թագուցեալ ինքն զիւր անձն յայտնէ: Ե. Ի Քաղկիէկոս մեհենին արգելեալ եւ անդէն սատակի:

## ՉՈՐՐՈՐԴ

# Պ Ա Ւ Ս Ա Ն Ի Ա Ս

## ՂԱԿԵԴՄՈՆԱՑԻ

Ա. ՊԱՒՍԱՆԻԱՍ ղակեդեմոնացի աւագ այր, այլ այլ եւ այլ ոճս յամենայն կեանս էր։ Քանզի զոր օրինակ քաջութեամբքն պայծառանայր, նոյնգունակ եւ չարեօքն վատանուն լինէր։ Սորա է հռչակեալ եւ երեւելի առ Պղատեաւ ճակատն զի ի նորա զօրաւարութեանն Մարդոնիոս շահապ նախարարապետ արքունի, մար յազգէ, փեսայ թագաւորին, երեւելի ի մէջ Պարսից, զօրաւոր զօրութեամբ եւ հանճարեղ խորհրդով, երկերիւր հազար հետեւակ զօրօք՝ զորս ըստ արանցն ընտրեալ էր, եւ քսան հազար հեծելովք, ի Յունաց աշխարհէն փախստեայ եղանէր, ոչ յայնպիսի ի մեծ բանակէ, եւ ի նմին ճակատու ինքն զօրավարն անկանէր։ Ընդ այն յաղթութիւն ամբարհա-

ւածեալ ի բազում ինչ իրս միջամուխ լինէր, եւ մեծամեծաց իմն ակն դնէր։ Բայց նախ այնու իմն կշտամբեալ յանդիմանեցաւ, զի յաւարէ անտի երեքոտանի ոսկի ի Դեղփիս դնէր, գրեալ ի նմա գիր՝ յորում դրոշմեալ էր պէս զայս օրինակ, եթէ Իւրով զօրաւարութեամբն զխուժդուժն առ Պղատեաւ ցրուեալ ի փախուստ դարձուցեալ իցէ, եւ այնր յաղթութեանն աղագաւ Ապողոնեայ նուէրս մատուցեալ։ Զայս գիր ղակեդմոնացիք ի բաց ջնջեցին, եւ ոչ այլ ինչ գրեցին բայց միայն զանուանս քաղաքացն, որոց օգնականութեամբն Պարսիկքն յաղթեցան։

Բ. Յետ այնր պատերազմի զնոյն Պաւսանիաս հասարակաց նաւատորմիղ նաւօք ի Կիպրոս եւ Հելլեսպոնդոս առաքէին, զի ի գաւառաց անտի զբարբարոսաց պահապանսն ի բաց մերժեսցէ։ Իբրեւ ըստ առաջին աջողութեան այնպէս աջողեցաւ նմա, առաւել եւս ամբարտաւանութեամբ սկսաւ գնալ, եւ մեծամեծ իրաց ցանկանայր։ Զի իբրեւ ի բիւզանդացւոց քաղաքին վկանդել, արս բազումս երեւելիս ի Պարսից

ձերբակալ առնէր, եւ ընդ նոսա զո-
մանս մերձաւորս թագաւորին, զաղո
արձակէր զնոսա առ Քսերքսէս,
կեղծաւորեալ թէ ի հասարակաց
բանտից փախեան: Ընդ նոսա եւ ըզ-
Գոնգիւլոս Երետրիացի առաքէր, զի
տայցէ զգիրն ցԹագաւորն, յորում
գրեալ կայր ասէ Թուկիդիդէս զայն
զայս ձեւ օրինակի բանից. Պաւսա-
նիաս սպարտացւոց զօրավար, զորս ի
բիւզանդացւոց քաղաքին կալայ,
իբրեւ ի վերայ եհաս եթէ քո մեր-
ձաւորք էին, քեզ պարգեւս առա-
քեաց, եւ ցանկայ խնամութիւն
առնել ընդ քեզ. վասն որոյ եթէ
հաճոյ թուեսցի յաչս քո, տայցես
նմա զդուստր քո կնութեան: Զայդ
եթէ արասցես, եւ զՍպարտա եւ
զհամօրէն իսկ Յունաց աշխարհ նո-
րա օգնականութեամբն ընդ ձեռամբ
նուաճեսցես: Եւ եթէ կամ իցէ քեզ
թէ այսպիսի ինչ լինիցի, զայցին
իրաց առաքիցես առ նա այր մի հա-
ւատարիմ ընդ որում խօսիցի: Զը-
ւարճացեալ լինէր յանձն իւր Թա-
գաւորն ընդ այնչափ արանց ապրել,
որ եւ իւր իսկ մերձաւորք էին, վաղ-
վաղակի զԱրտաւազ հանդերձ հրո-

նակին բաղմախորտիկ սեղան ուտէր, որպէս զի որ մօտն կային չկարէին տանել: Որոց խնդրէինն մտանել առ նա, չանսայր, որպէս պարտ էր, ամբարտաւանութեամբ ամենեցուն պատասխանի տանէր, եւ անագորոյն մօք հրաման տայր, դառնալ անդրէն ի Սպարտիա չառնոյր յանձն, եւ ի Գողոնեա՝ որ փայլք ինչ են ի տրովացւոց աշխարհին, երթայր բընակել. եւ անդրէն բաղում ինչ եւ անձին եւ աշխարհին հակառակ խորհուրդս խորհէր: Այսմ ամենայնի իբրեւ ստուգութեամբ ի վերայ հասանէին ղակեդմոնացիք, հրեշտակս առ նա առաքէին ցպոյն զոր Սկիւտաղէ իմն[6] անուանեալ կոչեն, յորում բան սովորութեան նոցա գըրեալ էր, Եթէ ոչ անդրէն յաշխարհըն դարձցի, մահու պարտ առնելոց են զնա: Զայս իբրեւ լուէր, անկալեալ եթէ կարասուով եւ զօրութեամբ յեկեալ հասեալ վտանդէ մարթիցի ապրել, եկեալ երթայր անդրէն ի քաղաքն: Անդ իբրեւ հասանէր, պարէտքն զնա ի կապանս արկանէին, քանզի յօրինաց անտի իշխան է առ նոսա պարէտ զդոյն

առնել եւ արքայի ։ Նաեւ եւս թա-
փեացնա զանձն, այլ ոչ եթէ վասն
այնորիկ ի կասկածանացն ապրեցաւ
ինչ, զի յայսկոյս յայնկոյս շրջշրջէին
կարծիք 'զնմանէն ի բազմաց, եթէ
միաբան ընդ Պարսից թագաւորին
իցէ ։ Եւ էին մարդիկ՝ որ անուա-
նեալ կոչէին Հեղուտացիք, որք զան-
դատատանս ղակեդմնացոցն գործէին
եւ զայլն ամենայն զծառայից սպաս
հարկանէին . արդ համարէր իմն այն-
պէս, եթէ ազատութեան յուսով
եւ զնոսա յապստամբութիւն եւ ի
խակագործ ստահակութիւն գրգռ-
ւիցէ ։ Այլ քանզի չէր ինչ յայտնի
նշանակ ի միջի, որով մարթիցի ի վե-
րայ կալ իրացն հաստատութեան,
չհամարէին ի դէպ զայնպիսի եւ զայն
չափ հոյակապ առնէ կարծեօք եւ-
եթ առնել․ դատաստան, եւ սպա-
սէին մինչեւ իրքն իւրովի յայտ գայ-
ցեն ։

Դ․ ՊՈՒՏ եղեւ զի Արգիղիոս ոմն
պատանի՝ յոր անարժան սիրովն հա-
րեալ էր Պաւսանիաս, առ թուղթ ի
նմանէ առ Արտաւազ, եւ բախեցաւ
նորա կասկած մտացն, թէ գրեալ
ինչ ի նմին իցէ վասն իւրոյ անձինն .

քանզի ոչ ուրուք ի նոցանէ յետս դարձեալ էր, որ նովին պատճառանօք անդր առաքէին: Կան որոց ըղկնիք նամակին քակէր, եւ զգրոշմն բացեալ, գիտաց՝ եթէ տարցի, մեռանելոց է: Եւ էին գրեալ ի նամակի անդ իրք միաբանութեան ընդ մէջ Թագաւորին եւ Պաւսանեայ: Զայն թուղթ տանէր առ պարետան: Չէ պարտ թողուլ յայսմ վայրի զիմաստութիւն եւ զմեղմական բարս ղակեդմոնացւոցն, քանզի եւ ոչ նովին նշանակօք յօժարեցին զի զՊաւսանիաս ըմբռնիցեն, եւ ոչ ինչ պատշաճ համարէին բուռն լինել նմա, մինչ չեւ նա անձամբ անձին մատն լեալ էր, եւ հրաման տային դուշակին առնել զոր ինչ կամէին: Արեհեան մի է Նեպտունեայ ի Տենարիս քաղաքի, ուրում բուռն լինել անօրէնութիւն համարին Յոյնք, անդր փախուցեալ ապրէր դուշակն, եւ ի բազնին դեգերեալ նստէր: Առ յայն վայրուն արարին գետնափորս, ուստի մարթ էր լսել, եթէ ոք ինչ միանգամ ընդ Արգիղեայ խօսիցի, եւ պարէտք ոմանք անդր իջանէին: Պաւսանիաս իբրեւ լուաւ զԱրգիղայ

փախստեայ ի բագինն անկանել, խըռովեցաւ, եւ ելեալ երթայր անդէն առ նա։ Եւ իբրեւ տեսանէր զնա այնպէս առ սեղանոյն նստեալ, մատուցեալ հարցանէր եթէ զինչ պատճառք իցեն, վասն որոյ յայնպիսի յանկարծադէպ խորհուրդս մտաբերեալ իցէ։ Նա նմա զամենայն՝ զոր միանգամ ի թղթոյն իմացեալ էր, պատմէր։ Եւս առաւել ի վարանս մըտանէր Պաւսանիաս, եւ սկսաւ աղաչել մի ինչ ի վեր զերան հանել, եւ մի մատն երախտաւորին լինել։ Զայս եթէ արասցէ, եւ յայսպիսի անհնարին տագնապէ զնա ապրեցուցանիցէ, մեծաց վարձուց արժանի լինիցի։

Ե. ԶՈՐՍ ամենայն իբրեւ լուան պարետքն, լաւ համարեցան եթէ ի քաղաքամիջի անդ ըմբռնիցեն։ Եւ իբրեւ մեկնեալ գնային անտի, եւ Պաւսանիաս ցածուցեալ որպէս կարծէրն զԱրգիղիաս, յուղի անկեալ երթայր դառնալ անդրէն ի Ղակեդմոնիա, ի ճանապարհին մինչ դեռ յայն էին զի ձեռն ի նա արկանիցեն, յերեսաց անտի պարետի ուրումն՝ որ կամէր զգուշացուցանել զնա, ի վե-

րայ հպատանէր Պաւսանիաս եթէ դարան գործեալ է նմա ։ Վասն որոյ սակաւիկ մի յառաջագոյն քան զորս զհետան մտեալ էին, փախուցեալ անկանէր ի մեհեան անդր Աթենայ դիցըն, որ անուանեալ կոչի Քաղկիեկոս, որ է հայերէն պղնձի ։ Զի մի անտի ի դուրս ելանել կարիցէ, վաղվաղակի պարետքն զդրունս մեհենին առականէին, եւ զյարկն քակէին, զի դիւրաւ ընդ օդովն սատակիցի ։ Ասի եթէ ի ժամանակին յայնմիկ դեռ եւս կենդանի էր մայր Պաւսանեայ, եւ պառաւեալ անցեալ զաւուրբք իւրովք, իբրեւ լուաւ, ասեն, զոճիր որդւոյն, յառաջեալ եբեր վէմ ի մուտս անդ մեհենին, զի զորդին անդէն ի ներքս փակիցեն ։ Այսպէս Պաւսանիաս զմեծամեծ փառըս պատերազմացն ամօթալից մահուամբն արատեաց ։ Եւ իբրեւ կիսամահ ի տաճարէն հանէին, անդէն փչէր զոգին ։ Ասէին ոմանք, եթէ յայնմ տեղւոջ պարտ եւ պատշաճ իցէ զնորա դիակնն թաղել, յորում զայլ եւս չարագործսն՝ որ ի տանջանսըն մեռանէին, այլ ոչ բարւոք թըւեցաւ բանն առաջի բազմաց. վասն

որոյ առեալ թաղէին զնա հեռի ի տեղւոջէն յորում մեռաւ։ Եւ ապա անտառի եւս հանեալ հրամանաւ Դեղփեան գլխոյն, բերեալ թաղէին ի տեղւոջն յորում յառնելէն անկանէր։

# ՅԱՆԴԻՄԱՆՈՒԹԻՒՆ

Ա. ԿԻՄՈՆ ի Հայրենի կապանացն կենն ազատէ, զամուսնութիւնն փոխել: Բ. Զոր ինչ արար առ Ստրիմոնաւ, եւ Ամփիպողեաւ, եւ Եւրիմեդոնաւ եւ առ կղզեօքն ապստամբելովք: Գ. Խեցեկայր վըճառով մերժի, այլ միւսանգամ դարձեալ եւ ընդ սպարտացւոց խաղաղութիւն արարեալ, ի կիպրացւոց պատերազմին մեռանի: Դ. Կիմոնի առատութիւնն:

ՀԻՆԳԵՐՈՐԴ

# Կ Ի Մ Ո Վ Ն.

## Ա Թ Ե Ն Ա Ց Ի

Ա. ԿԻՄՈՎՆ ուստր Միղտիադեայ աթենացի ի մանկութեան ժամանակի ի վիշտս նեղութեան կայր։ Զի Միղտիադէս հայր նորա, քանզի ըզծախսն՝ յոր դատապարտեցաւն ի ժողովրդենէ տուժել, ոչ կարէր, անդէն ի կապանս վախճանէր. եւ Կիմովն ի նմին դիպահուոջ կայր, եւ չէր իսկ մարթ ըստ աթենացւոց օրինացն արձակել, մինչ չեւ էր զարծաթն հատուցեալ, յոր դատապարտեցաւն հայր նորա։ Եւ ունէր ի կնութեան զիւր քոյր հարազատ՝ որ անուանեալ կոչէր Եղպինիկէ. բայց ոչ եթէ ի կամացն յօժարութենէ, այլ առաւել ի սովորութենէ հայրենի աշխարհին յայն եկն. քանզի օրէն իսկ է աթենացւոց զմիոյ հօր դստերս կին առնել։ Զնա առնել ցանկայր

Կաղղիաս ոմն՝ որ չէր կարի ազնուական, այլ ընչաւէտ յոյժ, որ եւ յաճախ ինչս մԹերեալ ունէր ի քրէական մետաղացն. վասն որոյ մատուցեալ առ Կիմոն, խնդրէր զի զնա նմա տացէ կնուԹեան, զոր Թէ առնուցու, ինքն փոխանակ նորա տուժիցէ: Նա իբրեւ խոստեաց զբանն, Եղպինիկէ չառ յանձն զի զաւակ տանն Միղտիադեայ ի կապանս կորիցէ. եւ զի խափանել մարԹիցի, կամէր ընդ Կաղղիայ ամուսնանալ, եԹէ նա զոր խոստացաւն ի գլուխ հանիցէ:

Բ. ԱՅՍՊԷՍ Կիմոն զերծեալ ի բանդէ անտի, վաղվաղակի յաւագ իշխանուԹիւն հասանէր: Զի խօսօղ իսկ էր, եւ առատամիտ, եւ խելամուտ քաղաքային կարգաց եւ իրաց զինուորուԹեան, զի ընդ հօրն իսկ ի մանկուԹենէ ի զօրուն շրջէր: Վասն այնորիկ իսկ եւ զժողովուրդ քաղաքին ընդ իւրով իշխանուԹեամբ ունէր, եւ առաջի զօրացն եւս առաւել զօրացաւ ճոխուԹեամբ: Զառաջինն սպարապետ լեալ առ Ստրիմոնա գետով, զյաճախագունդ զօրս Թրակացւոց փախստեայ հանէր.

զԱմփիպողիս քաղաք շինէր, եւ անդ-
բեւր մի յաթենացւոց քաղաքէ վա-
րատականս արձակէր ։ Նոյն այր դար-
ձեալ առ Մ՝իւկաղեաւ զկիւպրացւոց
եւ զփիւնիկեցւոց զտորմիղ երկերիւր
նաւաց յաղթեալ առնոյր ։ Ի նմին
իսկ աւուր նոյնգունակ յաջողու-
թեան եւ ի ցամաքի պատահէր .
զի յետ զթշնամեաց նաւսն առնլոյ,
փաղփաղակի զիւր զօրսն ի նաւացն ի
դուրս հանէր, եւ ի միում յարձա-
կմանն մեծ բազմութիւն ի բարբարո-
սաց անտի տապաստ արկանէր ։ Այ-
նու յաղթութեամբ առ եւ աւար
մեծ ստացեալ, իբրեւ այսրէն յաշ-
խարհն դառնայր, քանզի բազումք
ի կղզեացն վասն սաստկութեան իշ-
խանութեանն յետս կացեալ էին,
որք զբարուք միտսն ունէին, զնոսա
հաստատեաց, եւ զօտարացեալսն ի
պատշաճն ստիպէր դառնալ ։ Իսկ
զՍկիւրոս՝ յորում տողոպացիքն բը-
նակէին ի ժամանակին յայնմիկ,
քանզի կարի խստագոյնս գնացեալ
էր, թափուր առնէր, զհէն ստացիչ-
սրն ի քաղաքէ անտի եւ ի կղզւոյն
հանէր, եւ զագարակն քաղաքա-
ցեաց բաժանէր ։ Զթասիացիս յըն-

չաւէտութիւն պատուաստեալն ի բա-
րով դաւանութեամբն ընկալնէր։ Այս ա-
մենայն աւարաւ ամուրն աթենացւոց
յայնժամ կուռէ՝ յորմէ առ հարաւա-
կողմն կարկառեալ կայ, զարդարե-
ցաւ։

Գ. ԻՍՐՍԻ նոքիմքը քան զամե-
նեսեան՝ որ ի քաղաքին էին, պայ-
ծառուանայր, խանդակին ընդ նմա, որ-
պէս եւ ընդ հայրն եւ ընդ այլ եւս
իշխանս աթենացւոց։ Վասն որոյ եւ
խեցեկեայ վճռովք, զոր նոքա Ոս-
տրակիսմոն անուանեալ կոչեցեն,
դատապարտէր յաքսորս զտասն ամ։
Ընդ որ վաղագոյն քան զնա աթե-
նացիք սարջացան։ Քանզի իբրեւ նա
արութեամբ միոջ անձայր ապախ-
տաւոր քաղաքացեացն նախանձու,
եւ ղակեդեմոնացիք ընդ աթենացիս
ի մարտ պատերազմի գրգռէին, վաղ-
վաղակի հասանէր ցանկալ նորա
ծանօթականն քաջութեանն։ Նմին ի-
րի իբրեւ հինգ ամք ի վերայ անցա-
նէին մերժելոյ նորա ի քաղաքէն,
անդրէն դարձուցանէին զնա։ Նա
քանզի տասնքականութեամբ ի ղա-
կեդեմոնացւոց մեծարեալ էր, լաւ
համարեալ եթէ նոքա ընդ իւրոց

տոհմային քաղաքացւոց միականք համամիտք ընդ միմեանս իցեն, քան զինուք կռուիցին, ինքնակամ չոքաւ ի քաղաքն ղակեդմոնացւոց, եւ արար խաղաղութիւն ի մէջ երկուց մեծազօր քաղաքաց: Յետ ոչ բազում ինչ ժամանակի երկերիւր նաւօք առաքէր նա զօրաւար ի Կիւպրոս, եւ իբրեւ զմեծ մասն կղզւոյն պարտէր, յախտ հիւանդութեան անկեալ ի կիտիացւոց քաղաքի մեռանէր:

Դ. Ասր. աթենացիք ոչ միայն ի մարտս պատերազմաց այլ եւ ի հաշտութեանն ժամանակի ցանկային: Այնպիսի էր նորա առատութիւն, զի թէպէտ եւ ի բազում տեղիս կալուածք եւ դրախտք էին նորա, պահապանս երբէք ի նոսա չդնէր, առ ի զարդիւնս պտղոցն պահելոյ, զի մի ոք իցէ որ խափանիցի առ ի չըվայելելոյ յիրս նորա յորոց կամիցի: Հանապազ սպասաւորք ոսկւով եւ արծաթով զհետ նորա երթային, զի եթէ ոք նորա ընչիւքն կարօտանայցէ, ունիցի զինչ վաղվաղակի տայցէ, զի մի յապաղելովն թուիցի եթէ չկամիցի ինչ: Բազում անգամ իբրեւ տեսանէր զոք ի տա-

ստապանս հասեալ, զգեցեալ զծու-ծրս, հանեալ տայր նմա զիւր ամ-ղանն: Զօրհանապազ ընթրիք այն-պէս յօրինէին նմա, զի զորս միան-գամ չհրաւիրեալս ի հրապարակի տեսանիցէ, զամենեսին կոչիցէ, եւ չեթող ինչ օր յորում զայն չառնէր: Ոչ զոք զրկեաց, անտես զոք ոչ ա-րար, ումեք կահ եւ կազմած տան նորա ոչ նուազեցաւ: Զբազումս ըն-չաւէտս արար. աղքատս բազումս՝ որոց ի մահուն իւրեանց չէր թո-ղեալ ինչ որով թաղեսցին, իւրով ծախուք յուղարկէր: Արդ յետ այ-սորիկ ամենայնի չէն ինչ զարմանք թէ յապահովս էին կեանք նորա, եւ մահ նորա դառն ամենեցուն:

## ՎԵՑԵՐՈՐԴ

# ՂԻՒՍԱՆԴՐՈՍ

## ՂԱԿԵԴՄՈՆԱՑԻ

Ա· ՂԻՒՍԱՆԴՐՈՍ ղակեդեմոնացի մեծ համբաւ քաջութեան թողըր յաղթութեամբն առաւել քան առաքինութեամբն։ Զանզի յայտ իսկ է եթէ նա կարծեալ դադարեցոյց զաթենացիսն, որք ի քաջն եւ ի վեց ամանց ընդ պելոպոննեսացւոց զառայքն. իսկ թէ զիարդ արդեւք այնմ եհաս այն չէ յայտ, զի ոչ եթէ քաջութեամբ ինչ իւրոց զօրացն, այլ անհանճարութեամբ դիմակաց հակառակորդացն եղեւ, որք քանզի ունկնդիրք հրամանաց իւրեանց զօրավարացն չէին, մեկնեալ թողուին զնաւսն, եւ ցանեալ ցրուեալ յերեսս դաշտացն ի ձեռս թշնամեացն անկանէին, որով եւ աթենացիք տային ձեռս ի ղակեդմոնացիս։ Ընդ այն յաղթութիւն հպարտացեալ Ղիւ-

սանդրի, զոր օրինակ նախ քան զայն ժամանակս խառնմարար եւ յանդուգն լեալ էր, եւ յայնժամ այնչափ ինչ ժտէր յանդգնէր, զի վասն նորա ատելի եւ գարշելի ամենայն Յունաց ղակեդմոնացիք լինէին: Քանզի իբրեւ զայն իմն պատճառս եւ բարուրս ղակեդմոնացիք գնէին պատերազմին, թէ զաթենացւոց զանհընարին տէրութիւնն կարճիցեն, ապա յետ առ Եգոս գետով Ղիւսանդրի նաւաստորմիղ նաւաց թշնամեացն տիրելոյ, ոչ այլ ինչ ածէր զմտաւ, այլ զի զամենայն քաղաքս ընդ իւրեւ նուաճեալ ունիցի, ի խելս կերպարանեալս որպէս թէ վասն ղակեդմոնացւոց զայն առնիցէ: Քանզի յամենայն կողմանց զորս աթենացւոց իւրացն յանձանձիչքն էին ի բաց յիշխանութենէ ընկեցեալ, ընտրէր տասն տասն այր յիւրաքանչիւր քաղաքս, որոց զգլխաւոր իշխանութիւն եւ զհամօրէն տէրութիւն ամենայն իրաց առնէր յանձն: Չմտանէր ոք ի նոցա համար, բայց միայն որք նորա ասպնջականութեանն արժանի լեալ էին, եւ որք նորա լինել հաւատարմութեամբ հաստատէին:

Բ. Բայց այսմ օրինակի զտասն արանց իշխանութիւն ի քաղաքս քաղաքս կացուցեալ, ամենայն ինչ նորին ակնարկելով լինէր: Զսորա անագորոնութենէ եւ զնենգութենէ շատ եւ բաւական իցէ զմի ինչ իրս եւ եթ առակ օրինակի ի մէջ բերել, զի մի իբրեւ բազում ինչ զնմանէ մի բառ միօջէ ի համար արկանիցեմք, աշխատ զընթերցանելիսն առնիցեմք: Արդ իբրեւ մեծաւ յաղթութեամբ յասիացւոց աշխարհէ անտի դառնայր, եւ գայր հասանէր ի Թասոս, քանզի այն քաղաք առաւել հաւատարիմ լեալ էր աթենացւոց, իբրեւ այն թէ նոքա սովոր իցեն լինել բարեկամ հաստատուն, որք միանգամ սաստիկ թշնամի լեալ իցեն, ցանկացաւ զքաղաքն խորտակեցուցանել: Եւ իբրեւ ի միտ առ եթէ ոչ զկամս իւր թագուցանիցէ, նոքա պրծանիցին եւ զգուշանայցեն իրայն իւրեանց[7]:

Գ. Վասն այնորիկ զեւրեանց բդտասն արանց իշխանութիւնն՝ զոր նորա հաստատեալ էր, ի միջոյ բառնայր: Ընդ որ ի խոր խոցեալ խորհուրդ ի միտ արկանէր բառնալ բդ-

զլակեդեմոնացւոց թագաւորսն, այլ զմտաւ ածէր եթէ զայդ առանց դիցըն օգնականութեան չմարթի կատարել, քանզի լակեդեմոնացիք զամենայն ինչ ի դիցն հրամանս սովորեն հանել: Վասն այնորիկ իսկ զառաջինն զԴեղփիս կաշառել ջանայր: Իբրեւ զայդ ի գլուխ հանել չկարէր, ձեռն արկանէր ի Դոդոնա: Ընդ եւս մերժեալ, ածէր եթէ ուխտս առ Արամազդ Ամոն ուխտեալ իցէ, քանզի կարծէր այնպէս ի միտս իւր եթէ դիւրաւ եւս զլիբէացիսն կաշառակուրծս կաշառաբերս առնիցէ: Յուսոյն ակնկալութեամբ իբրեւ ի լիբէացւոց կողմանս անդր գայր, մեծապէս զնա քուրմքն վրիպեալ կացուցանէին: Քանզի ոչ միայն զկաշառսն չառնոյին, այլ եւ պատգամաւորս եւս ի լակեդեմոնացւոց աշխարհն առաքէին, ամբաստան լինել զԼիւսանդրէ եթէ զքուրմս մեհենին կամիցի կաշառել: Որոյ վասն սորին յանցանաց ամբաստանեալ, ապրէր նա ի վճռոյ դատաւորաց. եւ առաքեալ յօգնականութիւն որքոմենացւոց, անդէն ի թեբայեցւոց առաջնորդաւ սպանանէր: Ու թէ ար-

չափ ճշմարտիւ զնմանէ դատաստան
լեալ էր, յայտ բանն արար, որ յետ
մահուն վախճանի ի տան նորա գտաւ,
յորում ածէ ի հաւան զլակեդմո-
նացիս զի զարքական իշխանութիւն
քակեալ, յամենեցունց ընտրեսցի
զօրաւար առ ի զպատերազմունսն մը-
ղելոյ. այդ այնպէս իմն գրեալ էր
բանն, որպէս թէ թուիցի միաբան
մտաց դիցն՝ զորս եւ կարծէր ընչիւք
գողանալ: Ո՛չ թէ զայն նմա Կղէոն
աղիկառնացի գրեաց:

Գ. ՌՈՍՍ յայսմ վայրի չէ պարտ
թողուլ զգործ փառնաբազայ նա-
խարարի արքունի: Քանզի Լիւսան-
դրոս իբրեւ ստիկան կացեալ նա-
ւատորմին, ի մարտին ժամանակի
բազում ինչ իրս անարդարութեամբ
եւ ագահութեամբ գործեաց, կա-
կածէր ի միտս իւր թէ գուցէ հաս-
նիցեն իրքն ի քաղաքացիս անդր,
մատուցեալ խնդրէր ի փառնաբա-
զայ զի զնմանէ վկայութիւն առ պա-
րետսն տայցէ, եթէ որպէս սուրբ
մտօք զպատերազմն վճարեաց, եւ
սիրով ընդ բարեկամսն գնաց, եւ զի
զայցին իւրոց ճշդիւ դատակաւ գրիցէ,
քանզի գիտէր իսկ եթէ որչափ ինչ

հաստատութիւն է այն։ Զայդ նմա մտադիւր խոստանայր այրն, եւ գըրէր իսկ մատեան մեծ մեծամիտ երկայնատարած բանիւք, յորում բազում յարգանս մատուցեալ գովէր զնա։ Զոր ընթերցեալ Դիւսանդրի հաճոյ թուէր նմա, եւ մինչ զկնիքն կամէր դնել, մեւս եւս գիրս նմին նման ամենեւին մեծութեամբ, որպէս զի չկարիցէ ընտրել, եդ առաջի ի կնքել, յորում հաւաստեաւ եւ ճշդրիտ զագահութենէ նորա եւ ըղնենգութենէ ամբաստան լեալ էր։ Արդ Դիւսանդրոս յորժամ անտի դառնայր յաշխարհն, իբրեւ զիւրոց իրայն գործելոց առաջի իշխանացն որպէս ինչ կամէրն խօսէր, անդէն վըկայ վաւերական ճշմարտութեան բանիցն ասացելոց զմատեանն՝ զոր Փառնաբազայ տուեալ էր, տայր նոցա։ Իսկ իբրեւ պարէտքն յետ ի բաց գնալոյ Դիւսանդրի հասանէին յիրայն հաստատութեան վերայ, նմա իսկ գլխովէն տային ընթեռնուլ։ Այսպէս նա իւրով անիմաստութեամբն ինքն անձամբ զանձնէ լինէր ամբաստան։

# ՅԱՆԴԻՄԱՆՈՒԹԻՒՆ

Ա. ԱԼԿԻԲԻԱԴԷՍ եւ չարեօք եւ առաքինութեամբք երեւելի էր։ Բ. Զօրաւոր լեեալ ընդ սիրակուսացիս պատերազմին, կասկած լինի վասն նորա։ Գ. Կոչեցեալ յաշխարհն նզով լինի, եւ վասն այնորիկ իսկ օգնական լինի սպարտացւոցն։ Դ. Զսպարտացւոց կարծիս առեալ գայ առ Տիսափեռնէս, եւ հաշտ լինի ընդ զօրացն աթենացւոց։ Ե. Ընդունելի լեալ սրբի ի նզովիցն։ Զ. Սակայն ինչ ժամանակ ի հանդստեան վայելեալ, ապա միւսանգամ նախանձ ընդ նմա բերեն քաղաքացիքն։ Է. Որչափ ինչ ձեռնհաս իցէ, խնամակալ քաղաքացեացն լինի։ Ը. Անկեալ ի յուսոյ հայրենի գաւառին ի Փառնաբազոս դիմէ։ Թ. Առ Փառնաբազայ դարանակալութեամբ ի կենաց վճարի։ Ժ. Ալկիբիադէս վատանուն եւ դրուատեալ։

# ԵՒԹՆԵՐՈՐԴ

# ԱՂԿԻԲԻԱԴԷՍ

## ԱԹԵՆԱՑԻ

Ա. ԱՂԿԻԲԻԱԴԷՍ Կղինեայ որդի էր աթենացի: Թուի թէ ի սմա բղչափ առ բնութիւնն թէ որչափ ինչ ձեռնհաս իցէ վճարել: Եւ յայտ ի նոցանէ է որ զնմանէն գրեցին յիշատակս, թէ չիք ոք քան զնա առաւելեալ եւ ի չարիս եւ յառաքինութիւնըս: Յազնուագոյն քաղաքի ծնեալ ի գլխաւոր ազգէ, քան զամենեսին՝ որ ի նորա աւուրս էին, բազմապատիկ գեղեցիկ, առ ամենայն իրս աջողակ, եւ լի խորհրդովք. զի եւ իշխան իսկ գլխաւոր էր ի ծովու եւ ի ցամաքի: Խօսօղ, որպէս զի կարի իսկ կորովի էր բանիւք, եւ այնչափ երեւացն եւ բանից վայելչութիւն էր, զի ոչ ոք նմա դիմակալ մարթէր լինել: Մեծատուն. իսկ իբրեւ ժամանակն պահանջէր, աշխատասէր, համբերօղ,

առատ, վայելուչ ի վարս գնացից
իւրոց եւ ի կեանս, հեզ, քաղցր, եւ
խորագիտութեամբ ժամանակացն
ծառայէր։ Նոյն դարձեալ վաղվա-
ղակի իբրեւ ի հանդիստն փոփոխէր,
եւ չէին ինչ պատճառք ի մէջի վա-
րըն որոյ հոգ յանձն առնուցու, շը-
ւայտեալ, ընդարձակեալ, պադշո-
տեալ, անժուժկալ գտանէր. որ-
պէս զի ամենեցուն իսկ զարմանալ ի
միում մարդ ընդ այնչափ աննմանա-
կան կերպարանս, եւ ընդ այնպիսի
ազգի ազգի բնութիւնս։ Վարժե-
ցաւ նա ի տան Պերիկլեայ, քան-
զի ուրջու իսկ առեն նորա լինել.
ուսաւ եւս ի Սոկրատայ։ Նա եւ էր նո-
րա աներ Հիպպոնիկոս, քան զամե-
նեսեան ճարտարաբան յոյն լեզուի
խօսողութեամբ, որպէս զի թէ ին-
քըն իսկ կամէր մտօք նկարել, ոչ ա-
ռաւել ազնուագոյն ինչ զմտաւ ածել
եւ ոչ մեծամեծաց ինչ մարթէր հա-
սանել, քան զայն՝ զոր բախտին կամ
բնութեանն նմա տուեալ էր։

Ի. Ի ՊԵՂՈՊՈՆՆԵՍԵԱՆ պատերազ-
մին նորա խրատու եւ իշխանու-
թեամբ աթենացիք ի մարտ պատե-
րազմի ընդ սիրակուսացիս գրգռէին,

եւ ինքն իսկ ընտրէր զօրաւոր վասն զպատերազմն մղելոյ, երկու այլ նիզակակցօք, որոց միումն անուն կոչէր Նիկիաս եւ միւսումն Լամաքոս: Իբրեւ կազմէր, մինչ չեւ էր տորմիղ նաւացն ելեալ, դէպք եւ պատահարք այլին միանգամայն ի միում գիշերի ամենայն Հերմայն որ ի քաղաքի անդ աթենացւոց էին, կործանել, բայց ի միոջէ՝ որ առաջի դըրանց Անդոկիդեայ, որ եւ վասն այսորիկ Անդոկիդեայ Հերմէսն կոչեցաւ: Իբրեւ թուէր իմն եթէ ոչ առանց բազմաց միաբանելոյ այն եղեալ իցէ, քանզի ոչ եթէ առ առանձինն ինչ իրս հայէր, այլ առ հասարակաց ամենեցուն, ահ մեծ ի վերայ բազմութեանն անկանէր, մի գուցէ յանկարծադէպ ինչ բռնութիւն ի քաղաքին լինիցի, որ զաղգին ազատութիւն հարստահարիցէ: Այն իմն առաւել յԱլկիբիադէս ի դէպ եկեալ թուէր, զի եւ հարըստագոյն եւ մեծ համարէր եւ ոչ դոյզն ոք: Զի զբաղումն առատութեամբ զեւրեւ ածէր. զբաղումն եւս, օգնական լինեալ ի հրապարակս ատենակալաց, իւր ստանայր: Վասն ո-

րոյ լինէր ինձ այնպէս զի զամենե֊
ցունց իսկ զաչս, քանզի ցանգամ
թէ ի Հրապարակ ելանէր, յինքն
դարձուցանէր, եւ ոչ նմին զուգա֊
կան որք ի քաղաքի համարէր։ Վասն
այնորիկ իսկ ոչ միայն ակնկալու֊
թիւն մեծ ի նմանէ ունէին, այլ եւ
երկեւղ եւս, զի եւ փաստել իսկ բա֊
ղում եւ օգտել մարթէր։ Եւ համ֊
բաւ եւս չար տարածանէր զնմանէ.
զի ի տան իւրում խորհուրդս, ասէին,
կատարէ. որ չէր արժան ըստ աթե֊
նացւոց բարոյից, եւ ոչ առ կրօնից
ինչ այլ առ ստահակութեան եւ հա֊
տուածութեան իրքն համարէին։

Գ. ՊՐՈԲԻՆ յանցանօք եկակոչ
դատապարտեալ ի թշնամեաց անտի ձրգ֊
ձգէր։ Բայց ի կուիւ ուրեմն երթալոյ
ժամանակ մօտ հասեալ կայր. նա ի֊
բրեւ ընդ այն հայէր, եւ ոչ անդէտ
ինչ իւրոց քաղաքացեացն սովորու֊
թեան էր, խնդրէր զի թէ կամիցին
խօսել ինչ զնմանէ, առաւել զմօտա֊
ւորէն առնիցի խոյզ եւ խնդիր, քան
մինչ դեռ հեռի իսկ իցէ, եւ նախան֊
ձու յանցանօք ամբաստանիցի։ Իսկ
թշնամիքն նորա ի մտի դնէին առ ժա֊
մանակն հանդարտել, զի գիտէին ե֊

թէ նմա սահմանել ինչ աչ կարեն, եւ խորհէին սպասել ժամանակին՝ յորում գնալոց էր, զի մինչ դեռ հեռին իցէ ի վերայ յարձակիցին: Նուարարքն իսկ այնպէս. քանզի իբրեւ ի Ալկիդէս զնա հասեալ համարէին, զհեռաւորն որպէս թէ զմեհենական ինչ իրս պղծիցէ, պատժապարտ առնէին: Վասն նորին իրաց իբրեւ հրեշտակ առ նա յիշխանաց անտի ի Ալկիդիս առաքէր, զի այսրէն յաշխարհն վասն պատասխանի տալոյ դառնայցէ, եւ մինչ ինքըն փութայր զի բարուոք խնամ տանիցի նահանգացն, անսաստել ինչ չկամեցաւ, եւ ել ի նաւ անդր՝ որ առաքեալն էր ածել զնա: Իբրեւ ի Թուրիս քաղաք խաղացուց. աշխարհին հասանէր, խորհէր նա յանձըն իւր վասն անկարգ համարձակութեան քաղաքացւոցն, եւ անագորովութեան առ ազնուականս, եւ օգուտ համարեալ ի կարեձմեռն ձմերայնւոյ անտի՝ որ մօտ առ կուրծս հասեալ կայր, ապրել, գաղտ զանձըն ի պահապանացն թափէր. եւ անտի նախ յԱղիդէս քաղաք, եւ ապա ի Թեբացւոց աշխարհն եկեալ

րոյ լինէր ինձ այնպէս զի զամենե-
ցունց իսկ զաչս, քանզի անգամ
թէ ի Հրապարակ ելանէր, յինքն
դարձուցանէր, եւ ոչ նոքին զուգա-
կան որք ի քաղաքի համարէր։ Վասն
այնորիկ իսկ ոչ միայն ակնկալու-
թիւն մեծ ի նմանէ ունէին, այլ եւ
երկեւղ եւս, զի եւ մինասել իսկ բա-
զում եւ օգտել մարթէր։ Եւ համ-
բաւ եւս չար տարածանէր զնմանէ.
զի ի սան իւրում խորհուրդս, սաէին,
կատարէ. որ չէր արժան ըստ աթե-
նայեաց բարոյից, եւ ոչ առ կրօնից
ինչ այլ առ ստահակութեան եւ հա-
ստուածութեան իրքն համարէին։

Գ. ԳՈՐԾՔ յանցանողք եկակոչ
դատափետ ի թշնամեաց անտի ձրգ-
ձգէր։ Բայց ի կուիւ ուրեմն երթալոյ
ժամանակ մօտ հասեալ կայր. նա ի-
բրեւ ընդ այն հայէր, եւ ոչ անգէտ
ինչ իւրոց քաղաքացեացն սովորու-
թեան էր, խնդրէր զի թէ կամիցին
խօսել ինչ զնմանէ, առաւել զմօտա-
ւորէն առնիցի խօյզ եւ խնդիր, քան
մինչ դեռ հեռի իսկ իցէ, եւ նախան-
ձու յանցանողք ամբաստանիցի։ Իսկ
թշնամիքն նորա ի մտի դնէին առ ժա-
մանակն հանդարտել, զի գիտէին ե-

Ապա զոր ժողովէր գունդ կազմէր, ինքն զառաջինն ի Յունաց անտի յաշխարհն Թրակացւոց մխէր, եւս փառաւորագոյն համարեալ յառէ եւ յաւարէ խժիցն մեծանալ, քան ի Յունաց: Որով եւ համբաւն եւ ընչիւքն աճէր, եւ բազում բարեկամութիւն ընդ ոմանց ոմանց Թրակացւոց Թագաւորաց խառնէր:

Է. ԲԱՅՑ սակայն եւ ոչ յայնժամ ի սիրոյ հայրենի գաւառին ինչ կարաց զանձն մերժել: Զի իբրեւ առ Եգոս գետով Փիլոկղէս հազարապետ աթենացւոց զիւր տորմիղ նաւացն կորգէր, եւ ոչ կարի ինչ հեռի էր Լիւսանդրոս հազարապետ ղակեդմոնացւոց, որ այնմ եւեթ ուշ ունէր զի երկայնագոյն զպատերազմն ձգիցէ. զի նոցա ինչքն ի Թագաւորէ անտի գային, իսկ աթենացւոց նեղելոց քան զզէնս եւ զնաւս աւելի ինչ չգոյր. եկն Ալկիբիադէս ի բանակ անդր աթենացւոց, եւ անդէն առաջի խառնազանձ ամբոխին խօսել սկսանէր, ասէ Եթէ կամիք տխպեցից տագնապեցից զԼիւսանդրոս զի յանձն առնուցու կամ անդէն վաղվաղակի պատերազմել, եւ

կամ խօսել ի հաշտութիւն խաղաղութեան ։ Զի վասն այնորիկ, ասէ, չկամին զլակեդեմոնացիք նաւամարտիկ նաւուք ընդ աթենացւոց ընդխառնել, զի հետեւակ զօրու առաւել հզօրք են քան նաւուք. արդ ինձ, ասէ, դիւրին է զՍեւթէս զարքայ թրակացւոց ածել ի հաւան, զի ըզնոսա ի ցամաքի վարիցէ. որ իբրեւ լինիցի ; ի հարկէ այնու հետեւ կամ նաւուք կռուիցին եւ կամ խօսեսցին ի խաղաղութիւն ։ Զայս ամենայն թէպէտ եւ ճշմարտիւ ասացեալ համարէր Փիղոկղէս, սակայն զոր ինչ խնդրէրն Ալկիբիադէս զայն չկամէր առնել. զի ած զմտաւ եթէ զԱլկիբիադէս ընդունիցի, ինքն այնու հետեւ արհամարհ լինիցի առաջի զօրացն ։ Դարձեալ գիտէր զի եթէ աջողութեան ինչ գործք յետ այնորիկ ի գլուխ ելանիցեն, չլինիցի նորա յայնմ մասն. եւ նմին հակառակ եթէ ձախողանք ինչ պատահիցին, ինքն միայն առանձինն պարտ այնմ յանցանաց լինիցի ։ Իբրեւ մեկնեալ երթայր ի նմանէ Ալկիբիադէս, Արովհետեւ, ասէ, աշխարհին յաղթութեան հակառակ կաս, զայդ

յուշ արկեալ խրատեմ զի դէմ յանդիման Թշնամեաց զնաւականն զօրսն ունիցիս: Վասնզի վտանգ է զի մի յանկարծուԹենէ մերոյ զօրացն մուտ լինիցի Դիւսանդրի հարկանել սատակել զմեր զունդն: Եւ իւրքն՝ յուրոց Աղկիբիադէսն զանգիտէր, ի դըլուխ ելեալ կատարեցան: Զի Դիւսանդրոս իբրեւ ի ձեռն լրտեսաց ի վերայ հասանէր եԹէ խառնիճաղանճն աԹենացւոց եւ ի ցամաք աւար հարկանել, զնաւսն դրեԹէ Թափուր լքեալ, չեԹող զժամն զերսրն վճարելոյ, եւ անդէն ի վերայ դիմէր եւ զողջոյն իսկ զպատերազմն բնաջինջ բառնայր ի միջոյ:

Ը. Ա01. Աղկիբիադէս յետ աԹենացւոց ի պարտուԹիւն մատնելոյ, չհամարեալ ամուր անձին զվայրսն, ի ներքս ի Թրակացւոց աշխարհն երԹայր անդր իսկ ի վերոյ քան զՊրոպոնտիս, կարծեալ եԹէ անդէն դիւրաւ մարԹիցի իւրում բախտին ծածկել: Զուր եւ վրիպական միտք. զի իբրեւ զգաստ եղեն Թրակացիքն եԹէ բազում կարասւով եկեալ հասեալ է, նենգ գործեցին նմա, եւ զայն ինչ՝ զոր եբեր, հանին ի նմա-

նէ, այլ զնա ինքն ոչ կարացին ի բու-
ռըն արկանել։ Նա իբրեւ ետես եթէ
չէք իւր տեղի ամուր ի Յունաց աշ-
խարհին վասն ղակեդմոնացւոց իշ-
խանութեան, անց գնաց առ փառ-
նաբազ ի կողմանս ասիացւոց։ Զնա
եւս այնչափ մարդասիրութեամբ ած
զիւրեւ, զի ոչ ոք զնովաւ ի բարե-
կամութեան ելեւել առնէր։ Քանզի
եւ տայր իսկ նմա զԳրունիոս աւան
ի փռիւգացւոց աշխարհին, ուստի
յիսուն քանքար հաս առնոյր։ Նա
Աղկիբիադէս չհամարէր շատ զայն
բախտն, եւ չկարէր ժուժալ տեսա-
նել զԱթէնս զի ի պարտութիւն մա-
տնեալ ղակեդմոնացւոցն ի ծառայ-
ութեան կային։ Վասն այնորիկ ի
բազում հնարս մտանէր, ջանացեալ
զաշխարհն յազատութիւն հանել։
Բայց տեսանէր եթէ առանց Պարսից
արքային այնմ չէ հնար լինել, վասն
այնորիկ իսկ զնա իւր բարեկամ առ-
նել ցանկայր։ Եւ չերկմտէր իսկ դիւ-
րաւ այնմ հասանել, թէ միայն առ-
ցէ աւճան խօսելոյ ընդ թագաւորին.
զի գիտէր եթէ Կիւրոս եղբայր թա-
գաւորին գաղտ ի ճակատս կազմի ի
վերայ նորա, զղակեդմոնացիս թի-

կանոն օգնականութեան տիրարեալ։ Զմտաւ ածէր Անգղիբիադէս զի եթէ զայդ նմա ի վեր հանցէ, մեծամեծ շնորհս գտցէ ի նմանէ։

Ժ․ ԻՍՐՍԻ նա յայնժամ մտացխորհրդի էր, եւ խնդրէր ի փառնաբազայ զի առ Թագաւորն առաքեսցի, յայնժամ ժամանակի Կրիտիաս եւ այլ եւս աթենացւոց բռնաւորք, արըս հաւատարիմս առ Լիւսանդրոս յԱսիա յղէին, տալ նմա զրոյց եթէ ոչ զԱղկիբիադէս ի միջոյ բառնայցէ, ոչ մի ինչ յայնց իրաց՝ զոր ինքն յԱթէնս կարգեաց, հաստատուն կայցէ․ վասն որոյ եթէ ընդ իւրոց ինչ իրաց վճարելոց հաստատութիւն կամիցի, զնորա զհետ պնդեսցի։ Եւ այսպիսի իրօք յուզեալ եդ ի մտի Լակոնն հաստատութեամբ խօսել ընդ փառնաբազայ։ Արդ սմա պատգամ առաքէր, թէ Չէ մարթ բարեկամութեանն՝ որ է Թագաւորին ընդ ղակեդմոնացւոց, հաստատուն կալ, եւ ուխտքն իսկ անօգուտ իցեն[9], թէ ոչ զԱղկիբիադէս կենդանւոյն կամ մեռեալ ի ձեռս տայցեն։ Զայս իբրեւ լուաւ նախարարն, լաւ համարեցաւ մոռանալ զգութն, քան

թագաւորին զօրութեան նուաճել. վասն որոյ զԱսուածամիհր եւ զՆագէոս առաքէր սպանանել զՄղկիբիադէս, մինչդեռ էր նա ի փոխուգաստանի, եւ կազմ եւ պատրաստ լինէր երթալ առ թագաւորն։ Եւ որ առաքեցանն, գաղտ դրացի աշխարհին բնակչաց, յորում Մղկիբիադէսն էր յայնժամ, յանձն առնէին զիրսն զի զնա սպանցեն։ Նորա քանզի սրով չիշխէին յարձակել ի վերայ, գիշերայն ածին կուտեցին փայտս շուրջ զապարանօքն՝ յորում ննջէր, եւ հուր հարին զատանէն, զի որում չէին վստահ եթէ զօրութեամբ կարիցեն յաղթել, հրով սպանանիցեն։ Նա ի բոցոյն շառաչելոյ զարթեաւ,՝ եւ քանզի սուսերն հանեալ էր ի նմանէ, յափշտակեաց զսուր ընտանւոյ իւրոյ, զի էր ոմն ընդ նմա հեւր արկադացի, որ չառ յանձն ի բաց գնալ։ Սմա հրաման տայր գալ զկնի իւր, եւ զծործանն՝ որ անդէն էին, առ, եւ ընկեցեալ զնոսա ի հրատն, անց ընդ բոցն յորդեալ։ Իբրեւ տեսին զնա խուժդուժքն, թէ ի հրդեհէն ապրեցաւ, արձակեալ նետս ի հեռաստանէ, սպանին, եւ զգլուխն

նորա տարան առ փառնաբագ։ Նմ
կինն՝ որ ընդ նմա խսկսովոր էր կեալ, իւր կանայի ձորձովն ծածկեալ, ըզջին այրեր տան Հրով՝ որ պատրաստեալն էր այրել կենդանւոյն։ Զայս ձեւ օրինակի Նշկիբիադէս ամաց իբրեւ քառասնից ի կենաց վճարէր։

Ժ.. Օյս։ որ ի բազմաց անտի վատանուն բամբասեալս է, երեք քաջ պատմագիրք բազում գովութեամբ բարձրացուցանեն. Թուկիդիդէս՝ որ ի նոյն տիս եկաց, Թէոպոմպոս՝ որ յետ սակաւ ինչ ժամանակի ծնանէր, եւ Տիմէոս. եւ երկոքեան՝ որ սաստիկ չարախօսք են, չգիտեմ զիարդ կամ որով օրինակաւ յայնմ եւեթ միաբանեցին։ Զի զայն ինչ՝ զոր վերագոյն ասացաք, յարգեն եւ պատմեն զնմանէ, եւ զայս եւս ինձ աւելի, թէ իբրեւ յԱթէնս ի փառաւոր եւ ի հոյակապ քաղաքի ծնեալ էր, ամենեցուն պայծառութեամբ եւ պատուով յաղթէր։ Յետ այնորիկ իբրեւ անտի մերժեալ ի Թեբաս եկն, այնպէս ինչ ընդ նոցա հրահանգըս վարժեալ ընդելանէր, որպէս զի ոչ ումեք համեմատ երեւել նմա մարմնոյ վաստակովք եւ ուժով պնդու-

թեան. զի ամենայն բէովտիացիք առաւել պնդութեան մարմնոյ քան թէ մտաց եւ հանճարոյ պատկառ-կան: Նոյն դարձեալ այլ առ ղակեդ-մոնացւոց ըստ որոց բարուց սովորու-թեան, գլխաւորական առաքինու-թիւն ի համբերութեան կարծէր, այնպէս խստամբերութեան տայր զանձն, որպէս զի խնայութեամբ կերակրոց եւ սպասուցն հանդերձա-նաց ղակեդմոնացւոցն յաղթէր: Նա-ղեւ առ թրակացւոց, որ արբեցողք եւ անառակք են, եւ անցոյց զանցոյց զնոքօք: Արթեալ եւ առ Պարսիկս՝ առ որս գլխաւոր գովութիւնէր քա-ջութեամբ որս առնել եւ շուայտել, եւ այնպէս նոցա սովորութեան նը-մանօղ լինէր, զի եւ նոքին իսկ ընդ-նա վասն այնպիսի ինչ իրաց յաճա-խագոյն զարմանային: Որովք այն-պէս իմն լինէր, զի առ որոց եւ դը-տանէր, իշխան կարգէր եւ սիրելի համարէր: Այլ վասն սորա բաւա-կան է, յայլմն եկեսցուք:

թէ նմա առնանել ինչ ոչ կարեն, եւ խորհէին սպանել ժամանակին՝ յարումն զնալոյն էր, զի մինչ դեռ հեռին իցէ ի վերայ յարձակիցին: Եւ արարին իսկ այնպէս. քանզի իբրեւ ի Սիկիլիա զնա հասեալ համարէին, զհեռաւորն որպէս թէ զմեհենական ինչ իրս պղծիցէ, պատժապարտ առնէին: Վասն նորին իրաց իբրեւ հրեշտակ առ նա յիշխանաց անտի ի Սիկիլիա առաքէր, զի այսրէն յաշխարհն վասն պատախանի տալոյ դառնայցէ, եւ մինչ ինքըն փութայր զի բարուք խնամ տանիցի նահանգացն, անսաստել ինչ չկամէցաւ, եւ ել ի նաւ անդր՝ որ առաքեալն էր ածել զնա: Իբրեւ ի Թուրիս քաղաք իտալացուոց աշխարհին հասանէր, խորհէր նա յանձըն իւր վասն անկարգ համարձակութեան քաղաքացուոցն, եւ անագորունութեան առ ազնուականս, եւ օգուտ համարեալ ի կարեձմեռն ձմերայնւոյ անտի՝ որ մօտ առ կուրծս հասեալ կայր, ապրել, գաղտ զանձըն ի պահապանացն թափէր. եւ անտի նախ յԵղիդէս քաղաք, եւ ապա ի Թեբայեցւոց աշխարհն եկեալ

հասանէր: Յետ այնորիկ իբրեւ լուաւ, եթէ գլխով պարտաւորեցաւ, եւ ինչքն հասարակաց եղեն, եւ թէ որպէս սովորութիւն էր եւմողպիդացւոց քրմացն ստիպեալ ի ժողովրդենէ անտի, նզովիւք նզովեալ էր զնա եւ զի այնր նզովիցն վաւերական եւս յիշատակն լինիցի, զպատճէնն ի քարեղէն սեան փորեալ դնէին ի հրապարակի, այնու հետեւ անց գնաց ի ղակեդմոնացւոց աշխարհն: Անդ որպէս ինքն սովոր էր ասել, ոչ ընդ հայրենի գաւառին ինչ, այլ ընդ իւր թշնամիսն եւս ճակատս. քանզի նոքին իսկ թշնամի էին քաղաքին, այնու զի իբրեւ ի վերայ հասանէին եթէ մարթի նմա բազում օգուտ աշխարհին գործել, մերժէին զնա անտի; եւ առաւել բարկութեան իւրեանց քան թէ հասարակաց պիտոյից անսային: Արդ նորա խրատու ղակեդմոնացիք ընդ Պարսից արքային բարեկամութիւն արարին. ապա զԴեկեղիա Ատտիկէաստանի պընդեցին, եւ անդէն հանապազորդ պահ եդեալ զԱթէնս ի պաշարման կալան: Նորին վաստակովք զՅոնիա ի բարեկամութենէ աթենացւոց ի

բաց դարձուցանէին. ուստի կարի իսկ սկսան գլել ի պատերազմ։

Դ. Այլ. Նովին իրօք ոչ եթէ այնչափ բարեկամք Ալկիբիադեայ ղակեդմոնացիք լինէին, որչափ առ աՀին վտանգի օտարանային ի Նմանէ։ Զի որովՀետեւ զառաւելութիւն իմաստութեան առնն յամենայն իրս գիտէին, կասկածէին մի գուցէ գութ արկեալ Հայրենի գաւառին, երբեք ուրեք ի Նոցանէ մեկնիցի եւ ընդ իւրոյն միաբանիցի։ Արդ Հաստատեցին եդին ի մտի խընդրել ժամանակ պարապոյ սպանանել զՆա։ Բայց այնմ չեղեւ ինչ մարթ յԱլկիբիադեայ ընդերկար թաքչել. զի այնպէս իմաստուն էր Նա մտօք, զի չէր մարթ խաբել, մանաւանդ յորժամ ուշ ունէր առ զգուշանալ։ Վասն այնորիկ առ Տիսափեռնէս կուռակալ Դարեհի արքայի անկանէր։ Իբրեւ Նորա բարեկամութեանն Հասանէր, եւ տեսանէր զի յետ ձախողելոյ աթենացւոց ի Սիկիղիա, վատթարեալ անկանէր զօրութիւն Նոցա, եւ Նորին Հակառակ ղակեդմոնացւոցն աճէր. իսկզբանն ընդ Պիսանդրի Հաղա-

բապետի՝ որ առ Սամեաւ ունէր զօրս, ի ձեռն պատգամաւորաց խօսէր, եւ վասն իւրոյ դարձին յիշատակէր: Զի ի նոյն միում՝ յորում Ալկիբիադէսն էր, էր եւ նա, ժողովրդեան իշխանութեանն Թշնամի, եւ աւագաց օգնական: Ի նմանէ մերժեալ, նախ ի ձեռն Թրասիբուլեայ որդւոյ Ղիւկայ ընդունէր ի զօրաց եւ կայր զօրավար առ Սամեաւ: Յետ այնորիկ յետ Թերամենեայ վճիռն տալոյ, ժողովրդեան հրամանաւ միաւանգամ դառնայր, եւ մինչ դեռ հեռին իսկ էր, կայր ի վերայ զօրուն ի միասին խառն ընդ Թրասիբուլեայ եւ Թերամենեայ, հաւասար իշխանութեամբ: Ի սոցա իշխանութեանն այնչափ ինչ փոփոխումն իրացն լինէր, զի ղակեդմոնացիք՝ որ սակաւ ինչ յառաջագոյն յաղթութեամբ պայծառանային, զահի հարեալ խաղաղութիւն խնդրէին: Քանզի ի պարտութիւն առաջին աթենացւոց գնդին մատնէին ի հինգ ցամաքական կռուս եւ յերիս նաւամարտիկ պատերազմունս, յորս երկերիւր նաւս կորուսանէին, որ ի բուռն անկեալ ընդ Թշնամեաց ձեռամբ նուաճէին:

Աղկիբիադէս նիզակակից ընկերօքն առնոյր զՅոնիա, զՀելլեսպոնտոս, եւ զայլ եւս յունական քաղաքս՝ որ ի կողմն առիացւոց աշխարհին կան. յորոց զբազումս վկանդէին, ի մէջ նոցա եւ բիւզանդացւոց քաղաքն էր, եւ զբազումս խրատու եւ թելադրութեամբ ի բարեկամութիւն անդր խառնէին, զի բազում մարդասիրութիւն արարեալ էր նոցա ընդ այնոսիկ զորս ընդ ձեռամբ նըւաճեալ էին: Այսպէս լցեալ աւարաւ, ստուարացեալ մեծացեալ գրնդաւ, մեծամեծ իւրս քաջութեան վճարեալ յԱթէնս եկեալ հասանէին:

Ե. ՍՈՑԱ ընդ առաջ իբրեւ ամենայն համօրէն քաղաքն ի Պիրէւմն իջանէր, այնչափ ինչ ամենեցուն ակնկալութիւն էր զԱղկիբիադէս տեսանելոյ, զի ի նաւ անդր նորա դէմ եդեալ խուռն ընթանայր խառնաղանճն, իբր այն թէ նա միայն առանձինն եկեալ իցէ: Զի այնպէս իմն ի մտի եդեալ էր ժողովրդեան, զի եւ առաջին ձախողանք եւ մօտաւոր յաջողութեան իրք ի նորա ձեռն ի գլուխ ելեալ իցեն: Վասն որոյ եւ

զԱքիլլեայ կորուստն եւ զլակեդմո-
նացւոց յաղթութիւնս իւրեանց
յանցանաց գրէին, այնու զի զայն-
պիսի այր ի քաղաքէն ի բաց մերժե-
ցին։ Եւ թուէր թէ ոչ առանց պատ-
ճառանաց ինչ զայնպիսի կարծիս
զնմանէ կարծեցին։ Քանզի իբրեւ
սկսանէր նա կալ իշխան զօրաւար ի
վերայ զօրուն, ոչ ի ծովու եւ ոչ ի
ցամաքի կարային ինչ թշնամիքն
հաւասար գտանել։ Իբրեւ եւ նա ի
նաւէ անտի, թէպէտ եւ Թերամե-
նէս եւ Թրասիբուղոս ի նմին իրաց
վերայ կային, եւ գային ի միասին ի
Պիրեւսն, բայց սակայն զնորա մի-
այնոյ ամենեքեան զհետ երթային.
դարձեալ եւ ոսկի եւ պղնձի պատ-
կօք պատկեր. որ ոչ ումեք յառաջ
քան զնա շնորհեալ էր, բայց միայն
որոց ըմբշամարտ մրցութեանցն յաղ-
թեալ էին։ Նա արտասուալից զայն-
պիսի խնամս իւրոյ քաղաքացեայն
ընդունէր, զմտաւ ածեալ զառա-
ջին ժամանակին զդժնդակութիւնն։
Յետ այնորիկ իբրեւ եկն եմուտ ի
քաղաք անդր, յետ ժողովլ լինելոյ,
ճառ արկեալ խօսէր առաջի ամենե-
ցուն այնպէս, զի չէր ոք այնչափ

տղամանամիտ եւ վայրենագոյն, որ ընդ նորա դէպսն արտասուէր, եւ շնամի հակառակորդ զանձն երեւեցուցանէր նոցա, յորոց ձեռն մերժեալ էր նա յաշխարհէն։ Որպէս Դէ այլ ժողովուրդ էր, որ զնա իբրեւ Ռեհենակապուտ տաճարակողոպուտ պարտաւոր արար, եւ ոչ նոյն ինքն գլխովին, որ յայնժամ զլալ հարկանէր։ Նոյն այնու հետեւ դարձան առ նա վերստին ինչքն ի հասարակաց համարուէ, եւ նոքին իսկ Եւմողպիդայ քուրմքն որոց զնա նզովեալն էր, ստիպէին միւսանգամ զնա օրհնել, եւ սիւնքն՝ յորս նզովքն գրեալ էին, ի ծով անդր հոսեցան։

Զ. Այս խնդութիւն Աղկիբիադեայ չեղեւ ինչ երկարագոյն. զի իբրեւ տուան նմա ամենայն պատիւք, եւ իրք հասարակաց առատնին եւ ի պատերազմի ի նա յանձն էին, որպէս զի միոյն կամօք ամենայն ինչ լինիցի, եւ ինքն խնդրէր զի տացին իւր երկու ընկերք Թրասիբուղոս եւ Ադիմանտոս, եւ այնմ եւս անսային, եւ այնու հետեւ երթեալ յԱսիա, իբրեւ ոչ ինչ ըստ կարծեաց մտաց նոցա առ Կիւմենեաւ իրս վա-

ճարեաց, նախանձ ընդ նա բերէին։ Զի համարէին եթէ չիք ինչ ամենեւին՝ զոր նա չիցէ բաւական ի գլուխ հանել, եւ այնպէս զամենայն՝ որ ինչ ձախողէրն, նորա յանցանաց դրէին, եւ ասէին եթէ հեղգութեամբ կամ նենգելով արար. որպէս եւ յայնժամ իսկ դիպեցաւ։ Քանզի կշտամբեալ յանդիմանէին զնա եթէ կաշառեալ ի թագաւորէն, զՄիւմէն չյօժարեաց առնուլ։ Վասն այնորիկ իսկ համարիմք եթէ առաւել պատճառք չարեաց լեալ իցէ նմա մեծ համբաւ իմաստութեան եւ քաջութեան։ Քանզի որչափ ինչ սիրէին զնա, դոյնչափ եւ կասկածէին, մի դուցէ յաջողութեամբն եւ մեծամեծ զօրութեամբք վերացեալ բարձրացեալ բռնութեան ցանկանայցէ։ Արդ վասն սոյին իրաց մինչ դեռ հեռին իսկ էր, յիշխանութենէ հանեալ մերժէին զնա եւ զայլ ոմն ի նորին տեղւոջ կացուցանէին։ Զայն իբրեւ լուէր նա, չկամէր անդրէն յաշխարհն դառնալ, եւ վարեաց չոգաւ ի Պերինթոս[8] քաղաք. եւ անդրէն երիս աւանս ամրացուցանէր, զՆոռնոս, զՆիւզիպ, եւ զԱակրոնտիքոս։

# ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆՔ

# ՀՌՈՄԱՅԵՑՒՈՑ

## ՄԱՏԵՆԱԳՐԱՑ

## Ա

## ԿՈՌՆ. ՆԵՊՈՏ

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

ԶԿՈՌՆԵՂԵԱՑ Նեպոտայ բազում բանք գովութեան կան. եւ եթէ զառ ի բազմաց վասն նորա ասացեալսն լոկ գումարիցէ ոք, քան զմատեանն եւս յաճախագոյն գովութիւնք մատենին տողիցին։ Բայց մեք սակաւ ինչ ի բազմաց անտի յանձին կալցուք յիշատակել։ Որդ ի տիս Օգոստեայ էր մատենագիրն, եւ կարեւոր բարեկամ գլխաւորաց գրագիտաց նորա ժամանակին, որպիսի ինչ Ատտիկոսն է եւ Որտենսիոս եւ Կիկերոն։ Եւ մատեանն որ կայ ի նորա անուն կոչի, մի է յայնցանէ, վասն որոց ասեն իմաստունք եթէ նշանաւոր զՕգոստեայ յիշատակն գործեն քան զամենայն գործս քա-

ջութեան նորա. այնու զի իւր բա-
նիւքն եւ պարգեւօք ած զիւրոյ ժա-
մանակին իմաստունս գիրս դնել ։

Եւ արդ եթէ ամենայն մատեանք
որ յՕգոստեայ ժամանակսն գրե-
ցան, այնպէս սքանչելի եւ ազնը-
ւականք իցեն, զի՞նչ ոք զմատենէս
ասիցէ, յորում զարանց գլխաւո-
րաց զգործս եւ զարութիւնս մի
ըստ միոջէ դրոշմեալ տեսանիցէ ։
Որով անդստին ի նոցա տիս ելեալ,
խօսս ընդ նոսա արկանիցէ, եւ ի
վերայ կայցէ մտաց նոցա, նախանձ
ընդ նոցա քաջութեան գործս դնի-
ցէ. եւ յօժարիցի այնու հետեւ
քաջանալ, եւ յօգուտ հայրենի
աշխարհին եւ իւրոց տոհմային քա-
ղաքացւոց վաստակել ։ Զի չիք ինչ
որ այնպէս զմիտսն յորդորիցէ ըզ-
հետ երթալ առաքինութեանց, որ-
պէս ընդ առաջնոց կեանս անցա-
նել ։ Որպէս եւ Սաղուստիոսն ա-
սէ, եթէ Բազում անգամ լուայ
ես զՔ. Մաքսումոս, եւ զՊ. Սկի-

պիոն, եւ զայլ եւս երեւելի որեար քաղաքիս մերոյ, որ սովոր էին ասել այսպէս, եթէ յորժամ ըզ-նախնեացն պատկերս նշմարիցեն, միտք իւրեանց յառաքինութիւնս բորբոքիցին: Եւ ապա զնովիմբ ա-ծեալ, Ոչ եթէ, ասէ, կերպա-րանք նոցա զայնպիսի զօրութիւն ունիցին, այլ յիշատակաւ գոր-ծոցն զոր գործեցին, այնպիսի բոց ի միտսն տոչորիցի. եւ մինչ չեւ առաքինութիւնն՝ համբաւոյ նոցա եւ փառացն հաւասար լեալ իցէ, ոչ հանդարտիցէ:

Եւ թէպէտ եւ սակաւուց ոմանց վարք գրեալ կան ի մատենիս, եւ մատենագիրն ոչ յաճախագոյնս ի-բրեւ զՊղուտարքոսն ճառէ. բայց սակայն մարթ եւ պատշաճ է ասել զնոցանէ, զոր ինչ Վիրգիղիոս զՀո-մերի եւ զիւրոց երգոցն ասաց. Ընդ մեծատարած դաշտսն նորա, ասէ, զարմացեալ կայ Յունաց աշխարհ. այլ մեր անդն փոքր է, բայց ծաղ-

կալից եւ ամենաշատ։ Եւ արդարեւ ծաղկալից իմն յօրինէ մատենագիրըն զպատմութիւնն, բայց ոչ վայրապար ինչ յաճախէ զզարդն, ըղկարի լոկն բան բազում վայելչութեամբ կարգէ։ Ամենայն ինչ ի գիրս յայս պայծառագոյն եւ յըստակագոյն է։ Չեն ի նմա բազում խորհուրդք. այլ որ ենն, լուսաւորագոյնք եւ ազնուագոյնք են եւ յառաքինութիւնս զնոսա՝ որ ընթեռնուցուն, յօժարեցուցանեն։

Արդ եւ մեր սոյնպիսի ազնուական պտղոյ առաքինութեանց փափաքեալ, փոյթ յանձին կալաք զայս ցանկալի մատեան հանել ի մեր լեզուս. որում եթէ հասանիցեմք, համարիցիմք բազմապատիկ. գըտեալ զտոհմականս արդեանց դոյզըն վաստակոց մերոց։ Որով յաճախեսցին փառք անկարօտական մեծութեանն Աստուծոյ։

# ՑԱՆԴԻՄԱՆՈՒԹԻՒՆ

Ա. ԹՐԱՍԻԲՈՒՂՈՍ առաքինութեան կարգօքն լուսաւոր, յերեսուն բռնաւորաց զաշխարհն ազատէ: Բ. Ի Փիղէ փախստեայ ամրանայ. զՄունիքիա ի բուռն առնու. եւ քաղաքացեացն խնայէ: Գ. Թրասիբուղոս յետ խաղաղութեան վերջնոյ մոռացութեան օրէնս ընծայեցուցանէ: Դ. Զիթենւոյ պսակաւն շատանայ, զոր օրինակ Պիսիստրատեան առկաւ անդով: Սպանանի:

## ՈՒԹԵՐՈՐԴ

# ԹՐԱՍԻԲՈՒԼՈՍ

## ԱԹԵՆԱՑԻ

Ա. ԹՐԱՍԻԲՈՒԼՈՍ Լիւկեայ որդի. Աթենացի։ Եթէ զքաջութիւն առանց յաջողութեան բախտին պարտ եւ պատշաճ իցէ կշռել, ի վարան մտանեմ, թէ արդեւք առաջին ամենեցուն զսա դնիցեմ։ Եւ արդարեւ իսկ ոչ զոք նախամեծար քան զնա համարիմ հաւատարմութեամբ, եւ պնդութեամբ, եւ մեծանձնութեամբ, եւ սիրով հայրենի գաւառին։ Քանզի զոր բազումքն կամեցան, սակաւք կարացին ի միոջէ բռնաւորէ զաշխարհն յազատութիւն հանել, սմա դէպք ետուն զիւր գաւառն որ յերեսուն բռնաւորաց նեղեալ հարստահարէր, ի ծառայութենէ յազատութիւն հասուցանել։ Այլ չգիտեմ եթէ զիարդ եւ որգունակ յորժամ չանցուցանէր ոք ըրգ-

նուաւ այնպիսի առաքինութեամբք. շատք ազնուականութեամբք ելեալ առնէին: Զառաջինն ի պեղոպոնեսականն կռուին սա բազում ինչ գործս քաջութեան առանց Աղկիբիադեայ վճարէր, այլ նա ոչինչ իբրս առանց սորա. եւ զայն ամենայն նա ի բուստ բարուց ծննդեան շահէր: Բայց սակայն ամենայն ինչ հասարակաց են եւ իշխանացն եւ զօրականաց եւ յաջողութեան բախտին. քանզի ի խառնուրդս ճակատուց ի խորհրդոց անտի յուժգնութիւն եւ ի զօրութիւն պատերազմականացն անցանեն իրքն: Ապա իրաւացիկ մոգք զբազում ինչ զօրականքն ի զօրաւարէ, եւ զձոմագոյնս եւս բախտն իւր գրէ. եւ ճշմարտութեամբ իսկ մարթի աշխարհագոյժ առնել եթէ ինքն առաւել քան զապարապետոյն իմաստութիւն քաջացաւ: Նմին իրի այն գործ մեծ եւ սքանչելի առանձինն իմն է Թրասիբուղայ, զի իբրեւ երեսուն բռնաւորքն՝ զոր Ղակեդմոնացիք եդին, ի ծառայութեան նեղէին զԱթէնս, զբազումս ի քաղաքացւոց՝ որոց ի պատերազմի խնայեալ էր

բախտին, եւ զոր յաշխարհէն մերժէին, եւ զոր սպանանէին, եւ զբազմաց եւս զկեանս յիւրեանս բաժանէին, սա ոչ միայն իշխան լինէր պատերազմին, այլ եւ ինքնին իսկ միայն ի սկզբանն ի մարտ պատերազմի ընդ նոսա գրգռէր:

Բ. ՊՌԱՆՋԻ սա իբրեւ փախուցեալ ապրէր ի Փիւղէն՝ որ աւան ինչ է ամուր յատտիկեցւոց աշխարհին, ոչ ինչ աւելի քան զերեսուն այր ունէր ընդ իւր յիւրոց անտի: Այս ըսկիզբն եղեւ փրկութեան ատտիկեցւոց, եւ սոյն ոյժ եւ զօրութիւն ազատութեան մեծապայծառ քաղաքին: Զառաջինն նա եւ սակաւութիւն նորա արհամարհ թուէր բըռնաւորացն[10]. եւ այն՝ վնաս նոցին արհամարհելեացն լինէր, եւ սմա՝ որ անարգեցաւս, փրկութիւն: Զի այս ամենայն դանդաղագոյնս զնոսա գործէր զհետ պնդել սոցա, եւ զսոսա հզօրագոյնս եւս կազմէր, տըւեալ ժամ առ ի կազմ եւ պատրաստ լինելոյ: Վասն որոյ պարտ եւ պատշաճ է ամենեցուն ստէպ զմըտաւ ածել զպատուէր հրամանին այնորիկ, եթէ Ոչինչ ի մարտս պա-

տերագմաց օրէն եւ ի դէպ է յըն-
չաց քերեալ արհամարհել. եւ դար-
ձեալ ի միտ առնուլ եթէ ոչ ընդ-
վայր է ասացեալ, թէ Երկչոտին մայր
չէ սովոր գլալ հարկանել: Սակայն
ոչ ըստ կարծեացն Թրասիբուղայ
նոյնպէս եւ զօրութիւնն անձանց եւ
զարգացաւ. քանզի յայնմ ժամա-
նակի առաքինիքն հզօրագոյնս վասն
ազատութեան ճառ արկեալ խօսէ-
ին, եւ ոչ եթէ ի վերայ ազատու-
թեանն կռուէին: Ընտրի անց գնաց
նա ի Պիրեւս եւ զՄունիքիա ամրա-
ցուցանէր: Երկիցս իսկ յարեան ի
վերայ քաղաքին բռնաւորքն կռուել,
եւ անարի ամօթալից խայտառակեալ
ի բաց մերժէին, եւ անդէն վաղվա-
ղակի զզէնս եւ զամենայն խոչ եւ
խութ ի բաց թողեալ մազապուր
փախստական ի քաղաքն անկանէին:
Ոչ սակաւ քան զքաջութիւն իմաս-
տութիւն ի կիր արկանէր Թրասի-
բուղոս. քանզի պատուէր ետ մի ինչ
վնաս առնել որոց տեղի տային, զի
ի դէպ համարէր քաղաքացեաց ի քա-
ղաքակիցս զընդդալ եւ խնայել. եւ
ոչ իսկ ոք ի նոցանէ վէրս յանձն առ,
բայց միայն որ նախն յօժարեաց ընդ-

դէմ ոգորել ։ Ոչ զուրուք անկելոյ զերծ հան զձորձն. եւ ոչ յուրուք ինչ հուպ լինէր, բայց միայն ի զէնսն՝ որովք կարօտանայր, եւ կամ որ կերակուր ինչ էր ։ Յերկրորդում մարտին անկանէր Կրիտիաս առաջնորդ բռնաւորաց, յորժամ ընդ Թրասիբուլեայ սաստիկ մարտ եղեալ կռուէր ։

Գ. Յետ նորին անկանելոյ, Պաւսանիաս ղակեդեմոնացւոց թագաւոր հասանէր ի թիկունս օգնականութեան ատտիկեցւոց ։ Նա ի մէջ Թրասիբուլեայ եւ որոց զքաղաքն ունէին, ի հաշտութիւն խաղաղութեան խօսէր. դաշինս կուէին ուխտս հաստատէին զի մի ոք մերժեսցի յաշխարհէն, բայց միայն յերեսուն բռնաւորաց, եւ ի տասանցն՝ որք լատ նոցա կարգեալ հազարապետքն կացին, զառաջին անագորոյնութեան բարս ի կիր արկեալ. եւ ոչ իսկ ուրուք ինչք հասարակաց լինիցին, եւ քաղաքին խնամքն անդրէն առ ռամիկն դարձցին ։ Եւ այս իսկ մեծ եւ երեւելի է Թրասիբուլեայ, զի յետ խաղաղութեան ի մէջ հաստատելոյ, իբրեւ բազում իմիք ձեռնհաս էր ի

քաղաքին, օրէնս դնէր, եթէ Մի ոք վասն յառաջնագոյն գործելոց իրաց բամբասեալ դատապարտեալ ինչ լինիցի, եւ մի տուժեսցի. զայդ Օրէնս Մոռացութեան կամ Թողութեան անուանեալ կոչեցին: Եւ ոչ եթէ զայնմանէ եւեթ փոյթ յանձին կալաւ, թէ զայնպիսի օրէնսդրութիւն ընծայեցուցանիցէ, այլ զի եւ ամենեքին այնմ պատկառ կայցեն: Զի իբրեւ ամենք ի Նոցանէ՝ որք ընդ Նմա իսկ յաքսորս լեալ էին, կամէին սատակել զայնոսիկ՝ ընդ որս ի հաշտութիւն խօսեցեալ էր, յայս յանդիման արգել, եւ զոր խոստացեալն էր, զայն կատարեաց:

Դ. Ընդ այնչափ արժանաւորութեան մեծարանաց, տուաւ պատիւ ի ժողովրդենէ երկու ոստովք ձիթենեաց՝ որ մեծաշուք փառաւորութիւն իսկ եղեւ Նմա, զի քաղաքացեաց ջուլթն եա, եւ ոչ իւր բռնութիւն հան զայն ի Նոցանէ: Նոյա ուրեմն բարուոք իսկ ասաց Պիտտակոս, այն՝ որ յեւթն իմաստնոցն համարի էր, իբրեւ միտիղենացիք բեւր արտավար գետին տային Նմա պարգեւս. Մի, ասէ, աղաչեմ, մի տայք ինձ

զայն ինչ՝ ընդ որ բազումք նախանձ բերիցեն, եւ բազմագոյնք եւս ցանկանայցեն: Վասն որոյ ոչ աւելի քան զհարեւր արտավար կամիմ առնուլ ի սոցանէ, որ եւ զիմոց մտացս սըր-բութիւն եւ զձերդ յօժարութիւն յայտ առնիցեն. զի սովորութիւն իմն եղեւ փոքր պարգեւացն տեւականս լինել, եւ մեծամեծացն չլինել տեւապահականս: Արդ այնու պատկան շատացեալ Թրասիբուղեայ, ոչ ինչ աւելի քան զայն խնդրեաց, եւ այնպէս իսկ համարէր ի միտս իւր, եթէ ոչ ոք ի պատիւ շքեղութեան զնովաւ անցանիցէ: Նա, իբրեւ ժամանակք ինչ ի վերայ անցանէին, հազարապետ կացեալ նաւատորմիղ նաւուք եկեալ հասանէր ի Կիլիկիա. անդ-քանզի ոչ ինչ կարի զգուշութեամբ ուշ ունէին պահանորդքն բանակին պահպանութեան, բարբարոսաց գիշերի ի քաղաքէ անտի խուժն ի վերայ յարձակեալ, անդէն ի վրանին սպանանէ:

# ՑԱՆԴԻՄԱՆՈՒԹԻՒՆ

Ա. ԿՈՆՈՆ ի պեղոպոննեսական մարտին գոռ եւ անհնարին պատերազմօղ։ Բ. Յորժամ ի նեղութեան էր աշխարհն, ձեռնտու եղեւ Փառնաբազայ ընդդէմ սպարտացւոցն։ Գ. Կամեցեալ ամբաստան լինել զՏիսափեռնեայ դրժել խօսի ընդ Արտաշիսի։ Դ. Սպարտացիք Կոնոնեայ զօրաւարութեամբ առ Կնիդեաւ ի պարտութիւն մատնին. յաղթութիւն հասանէ աշխարհին Յունաց, եւ պարիսպք Աթենացւոց քաղաքին նորոգին։ Ե. Յորժամ կամէրն զՅոնիա եւ զԵւողիա դարձուցանել Աթենացւոց, ի Տերիբազայ արկանի ի կապանս։

## ԻՆՆԵՐՈՐԴ

# ԿՈՆՈՎՆ

## ԱԹԵՆԱՑԻ

Ա. ԿՈՆՈՆ *աթենացի ի պեղոպոնեսական կռուին ի գործակալութիւն քաղաքին մխեր, եւ մեծ իմն համարեր ձեռն օգնականութեան նորա ի պատերազմի. զի հազարապետ իսկ էր հետեւակ զօրաց, եւ ոստիկան կացեալ նաւամարտիկ նաւաց, մեծամեծ իրս ի ծովու վճարեր: Վասն որոյ եւ մեծապատիւ մեծարեր, զի միայն ամենայն կղզեացն ոստիկան էր, եւ ի նմին իշխանութեան զփերաս առ զգաղթականս ղակեդմոնացւոցն: Դարձեալ եւ ի վերջնում պեղոպոնեսական պատերազմին հազարապետ եկաց, ի ժամանակի իբրեւ առ Եգոս գետով աթենացւոց զօրքն ի Լիւսանդրեայ ի պարտութիւն մատնեցան: Այլ յայնժամ չէր անդ, եւ վասն այնորիկ իսկ*

եւս առաւել վատթարէին իւրքն․ զի տեղեակ եւ խելամուտ էր, զինուորութեան արուեստին եւ զօրաւոր փոյթ։ Վասն որոյ ամենեքեան ի նմին ժամանակի հաստատեալ գիտէին, զի եթէ նա մօտ էր լեալ, այն վիշտք ընդ աթենացիս ոչ անցանէին։

Ը. ԽՈՐՍԻ այնպէս իւրքն ձախողէին, եւ լսէր եւս եթէ պատեալ պաշարեալ է աշխարհն, ոչ զայն խնդրեաց եթէ ուր ինքն յանդորրու կեցցէ, այլ թէ ուստի արդեւք թիկունք ինչ օգնականութեան իւրոց քաղաքացեայն լինիցի։ Վասն որոյ առ փառնաբազ, յոնիացւոց եւ ղիդացւոց կուսակալ երթայր, որ եւ փեսայ իսկ էր թագաւորին եւ մերձաւոր․ եւ մեծաւ աշխատութեամբ եւ բազում վշտօք եգիտ շնորհս առաջի նորա։ Զի իբրեւ ղակեդմոնացիք, յետ աթենացւոց ի պարտութիւն մատնելոյ, չկային ի բարեկամութեան՝ զոր ընդ Արտաշիսի արարեալ էին, եւ զԱգեսիղաւոս յԱսիա առաքէին տալ մարտ պատերազմի, առաւել ի Տիսափեռնեայ դրդեալ, որ կարեւոր բարեկամն էր երբեմն արքայի, եւ ապա ի բարեկամութենէ

յետս եկաց, եւ դաշինս ընդ ղակեդմոնացւոց կռէր. ընդդէմ նորա առաքէր փառնաբազ սպարապետ զօրաւոր զօրաց, այլ արդեամբք Կոնոնին զօրաւարէր զօրաց, եւ նորա կամօք ամենայն ինչ վճարէր: Այս յոյժ խոչ եւ խութ Աղեսիղայ սպարապետի լինէր, եւ բազում անգամ նորա խորհրդոց ընդդէմ դառնայր: Նա եւ այն եւս ել ի վեր եթէ Աղեսիղայոս զասիացւոց աշխարհն մինչեւ ցՏաւրոս հանելոց էր ի թագաւորէ անտի, եթէ սորա չէր լեալ ի մէջ: Եւ յետ կոչելոյ յիւրոց քաղաքացւոցն յաշխարհն, վասն զի բէովտիացիք եւ աթենացիք ի մարտ պատերազմի ընդ ղակեդմոնացիս գրգռէին, Կոնոնին ընտանեբար ընդ սատրկանս թագաւորին գնայր, եւ ամենեցուն նոցա պիտանի էր:

Գ. ՏԻՍԱՓԵՌՆԷՍ կապարճս դարձոյց յետս եկաց յապստամբութիւն. այլ այնմ եւ Արտաշէս եւ ամենեքեան անգէտք էին: Զի վասն մեծաց երախտեացն հաճոյ թուէր յաչըս թագաւորին եւ յայնժամ, յորժամ չկայրն իսկ ի պատշաճ չափուն: Եւ չէն իսկ զարմանք, զի չառնայր

յանձն դիւրաւ հաւատալ բանիցն . քանզի յիշէր եթէ նորա օգնականութեամբն Կիւրոսի եղբօր իւրում գեր ի վերոյ եղեւ ։ Արդ վասն ամբաստանութիւնս զնմանէ մատնուցանելոյ, առաքէր Կոնոււն ի փառնաբազայ առ Թագաւոր անդր . իսկ իբրեւ եկն , զառաջինն ըստ սովորութեան Պարսից աշխարհին մատեաւ առ Տիթրաւստէս հազարապետ, որ զերկրորդական աստիճան իշխանութեան ունէր, եւ յայտ առնէր նմա եթէ բանք ինչ են իմ ընդ արքայի . զի ոչ ումեք առանց այսր համարձակ է առ Թագաւորն մտանել ։ Նա ասէ ցնա, Ոչինչ խափան է քեզ առ ի չմտանելոյ առ արքայ . այլ դու խելամուտ լեր յանձն քո, խորհեաց եթէ բերան ի բերան արդեւք խօսել ընդ նմա կամիցիս, թէ գրով զիրսն կատարել, զոր ի մտի ունիսդ, զի հարկ իսկ է, եթէ յանդիման լինիցիս, մեծարել զԹագաւորն, զոր նոքա Պրոսկինէին կոչեցեն ։ Արդ եթէ ծանր թուիցի քեզ, ինեւ ոչինչ պակաս ի գլուխ հանիցես զայն ինչ՝ որում փութաս, որւեալ հրովարտակս ։ Յայնժամ Կո-

նովին ինձ, ասէ, չէ ինչ ծանր զինչ-
եւպէտ մեծարանս գտնել Թագաւո-
րին. այլ կասկածեմ թէ մի գուցէ
թշնամանք ինչ իմոյ քաղաքիս լի-
նիցին, յորժամ ես՝ որ ի քաղաքէ
անտի եկեալս իցեմ, որ սովոր իցէ
այլոց ազգաց իշխել, առաւել ըստ
բարբարոսաց սովորութեան գնայ-
ցեմ, եւ ոչ ըստ բարուց այնր քա-
ղաքի: Վասն որոյ զոր միանգամ կա-
մէրն, ի գրի հարեալ տայր նմա:

Գ. Ըստ ամենայնի իբրեւ ի վե-
րայ հասանէր Թագաւորն, այնչափ
յանձն առնոյր հաւատալ նմա, մինչ
զի այնու հետեւ զՏիսափեռնէս Թը-
շնամի համարեցաւ, եւ հրաման տայր
մարտիւ պատերազմաւ զհետ մտեալ
հալածել զղակեդմոնացիս. եւ ի նա
ապաստան առնէր, թէ զո՛ կամիցի
ընտրեսցէ ի մատակարարել զար-
ծաթն: Զայդ դատաստան չառնոյր
յանձն Կոնոն, Զի ոչ ինձ անգ է,
ասէ, այլ այնմ՝ որ առաւել իւրոցն
տեղեակ եւ ծանօթ իցէ. նա եւ
խրատ իսկ տամ զի Փառնաբազայ
զայդ գործ յանձն առնիցես: Ուստի
մեծապատիւ մեծապարգեւ մեծա-
րեալ, ի ծովակողմն անդր առաքէր,

զի կիւպրացւոց եւ փիւնիկեցւոց եւ բնակչաց այլն եւս քաղաքաց՝ որ առ ափն ծովու բնակեալ նստէին, հրամանս տայցէ պատերազմիկ նաւս տալ, եւ հանդերձեսցէ տորմիղ նաւաց, եւ պատրաստ լինիցի ի հասանել ամարայնւոյն տալ պատերազմ։ Եւ տայր նմա թիկունս օգնականութեան զփառնաբազ, որպէս եւ ինքն խնդրեաց։ Երբեւ լուր եղեւ այդ առ ղակեդմոնացիս, ոչ յուղղութեամբ ինչ փոյթ յանձին ունէին վասն իրացըն, զի գիտէին եթէ առաւել մեծ պատերազմ ի վերայ կայ նոցա, քան եթէ ընդ խուժդուժն միայն մարտընչէին։ Զի տեսանէին եթէ այր զօրաւոր զօրութեամբ եւ իմաստուն խորհրդով, հրամանատար զօրութեանց թագաւորին կացեալ, ընդ նոսա ճակատս տայցէ, որում ոչ խորհրրդով եւ ոչ զօրօք յաղթել մարթէին։ Այսպիսի մտօք գումարէին տորմիղ նաւաց բազմաց, եւ ի չու անկեալ երթային Պիսանդրի զօրաւարութեամբն։ Նոցա ի դիմի հարկանէր Կոնոն առ Կնիդեաւ մեծաւ պատերազմաւ, եւ փախստեայ հանէր, բազումս նաւս ի նաւացն առնոյր, եւ

զեւս բազումս ընկղմէր։ Սովին յաղ-
թութեամբ ոչ միայն աթենացւոց
քաղաքն, այլ եւ համօրէն իսկ ա-
մենայն Յունաց աշխարհ՝ որ ընդ ղա-
կեդեմոնացւոց իշխանութեամբ լեալ
էր, ազատէր։ Կոնոնի զմտան մինա-
ւացն առեալ անդրէն յիւր գաւառն
դառնայր, զպարիսպն զեղծեալս եւ
զկործանեալս ի Լիւսանդրեայ, եւ
զՊիրեայ նաւահանգստին եւ զաթե-
նացւոց քաղաքին, փոյթ յանձին
ունէր նորոգել. եւ զյիսուն տաղան-
դըս արծաթոյ՝ զոր ի փառնաբազայ
առ, իւրոց քաղաքացեացն տայր։

Ե. Արդ եկն դիպեցաւ եւ սմա այն
որ այլոց եւս մահացուաց դէպ լինի,
զի առաւել ի յաջողութիւնս քան ի
չաջողութիւնս զեղծաւ։ Զի յետ
պեղոպոնեսացւոց նաւամարտին նա-
ւաց ի պարտութիւն մատնելոյ, ի-
բրեւ այնպէս համարէր եթէ զվրէժ
քինուն հայրենի աշխարհին խըն-
դրեալ իցէ, բազմաց իմն ակն ե-
դեալ ցանկայր, քան զոր ի գլուխ
հանել մարթէր։ Սակայն եւ այն չէր
յոռութեան գործ, քանզի առաւել
ընդ բարգաւաճանս իւրոց քաղա-
քացեացն կամէր, քան ընդ աճել

թագաւորին զօրութեան: «Քանզի իբրեւ բազում ճոխութեան նաւամարտիկ կռուովն՝ զոր առ Կնիդեաւն պատերազմեալ էր, հասանէր, ոչ միայն ի մէջ բարբարոսացն, այլ եւ յամենայն քաղաքս Յունաց աշխարհին, գաղտ ձեռնամուխ լինէր, զի զՅոնիա եւ զԷոլիա անդէն առ աթենացիս դարձուցանիցէ: Արդ քանզի ոչ ինչ կարի զգուշութեամբ թաքչէին իրքն, Տիրիբազ՝ որ սարդացւոցն ոստիկան էր, զԿոնոն կոչէր, հերպարանօք որպէս թէ առ թագաւորն յղիցէ զնա վասն մեծ ինչ իրաց: Նորա վաղվաղակի հրեշտակին հնազանդեալ, իբրեւ դայր հասանէր անդրէն, ի կապանս արկանէր, ուր եւ մնայր իսկ ժամանակս ինչ: Ոմանք առ թագաւորն իսկ երթեալ, ասեն զնմանէ, եւ անդէն սատակեալ: Այլ նմին հակառակ Դինոն պատմագիր՝ որում մեք առաւել հաւանիմք ի Պարսից իրս, գրէ թէ փախեաւ, այլ ընդ այն յերկուանայ, թէ Տիրիբազայ իսկ գիտելով արդեւք, եթէ առանց նորա գիտութեան եղեւ:

# ՑԱՆԴԻՄԱՆՈՒԹԻՒՆ

Ա. ԴԻՈՆ խնամի Դիոնիսիոսացն, բարեկամ եւ հրեշտակ։ Բ. Աղաչէ եւ հաւանեցուցանէ զի եկեսցէ Պղատոն. ակն ունի թէ բաժանեսցի թագաւորութիւնն։ Գ. Թշնամանայ ընդ կրտսերոյն Դիոնիսեայ. խնդրէ զդարձն Պղատոնի. եւ Փիղիստոս հակառակ կայ Պղատոնեայ։ Դ. Դիոն ի Կորընթոս ածի, եւ կինն այլում աւանդի, իսկ որդին զեղծ լինի բարուք։ Ե. Դիոն սիրակուսացւոց քաղաքին տիրեալ՝ յայն վայր հասուցանէ զբռնաւորն զի դաշինս կամէր կռել։ Զ. Տրտմի ընդ մահ որդւոյն. զՀերակղիտես սպանեալ՝ ժողովրդեան յաչաց ելանէ։ Է. Պարգեւօք հաճէ զմիտս զօրականին, պատուաւորքն ի բաց գնան ի նմանէ, եւ բռնաւոր անուանի։ Ը. Կաղիկրատեայ դաւոյն պատրի։ Թ. Ի տան իւրում սատակի յաւուր տօնին։ Ժ. Խռովութիւն եւ կոտորած առնի. յետ մահուն դէպ լինի ցանկալ Դիոնի։

# ՏԱՍՆԵՐՈՐԴ

# Դ Ի Ո Վ Ն

## ՍԻՐԱԿՈՒՍԱՑԻ

Ա. ԴԻՈՎՆ Հիպարինեայ ուստր սիրակուսացի, յազնուական ազգէ ծնեալ, ի ժամանակս բռնակալութեան Դիոնիսեայ եւ մեւս Դիոնիսեայ։ Զի Դիոնիսոս երէցն զԱրիստոմաքէ զքոյր Դիոնի ունէր ի կնութեան, յորմէ ծնան ուստերք երկու, որոց միումն անուն Հիպարինոս ճանաչէր, եւ երկրորդին Նիւսեւս, նոյնպէս եւ դստերս նոյնչափ զՍոփրոսինէ եւ զԱրետէ։ Զերէցն ի նոցանէ Դիոնիսի որդւոյն, այնմ որում եւ զարքայութիւնն եթող, տայր կնութեան, եւ զմեւսն եւս, զԱրետէ, Դիոնի։ Իսկ Դիոն բաց յազնուական իմաստութենէ անտի եւ յառաքինի համբաւէ նախնեաց, այլ եւս բազում բարութիւնս ի բնութենէ ունէր. Հանդերձ այլովքն եւ մի-

տըս հանդարտս եւ մեղմս, պատշաճս առ գեղեցիկ գեղեցիկ ճարտարացն արուեստս, յաղթանդամ, մարմնագեղ, զի եւ այս չէ սակաւ գովութեան։ Յայսր ամենայնի վերայ եւ յաճախ մեծութիւնք էին նորա, զոր հօրն թողեալ էր նմա, եւ նա թագաւորին պարգեւօք ստուարացուցանէր։ Էր նա կարեւոր բարեկամ Դիոնիսի երիցու, ոչ միայն վասըն խնամութեանն, այլ եւ վասն բարուցն. զի թէպէտ եւ Դիոնիսի անագորունութիւնն չթուէր նմա հաճոյ, բայց սակայն զնորա կենդանութենէն փոյթ յանձին ունէր, վասըն կարեւոր բարեկամութեանն եւ մանաւանդ վասն իւրոցն։ Յիրս մեծամեծս մօտ էր. եւ նորին խրատու գնայր թագաւորն, եթէ ոչ նորա ագահութիւնն ի ներքս անկանէր։ Ամենայն հրեշտակութիւնք՝ որք երեւելիքն էին, ի ձեռն Դիոնի կատարէին. եւ նա մեծաւ փութովն եւ հաւատարմութեամբ այնպէս զիրսն ի գլուխ հանէր, զի զբռնաւորին զանագորոյն անունն իւրով մարդասէր մտօք ծածկէր։ Դէպ եղեւ երբեմն զի Դիոնիսոս գնա ի կարքեդոնացւոց

քաղաքն առաքէր, եւ այնչափ զարմանային զնմանէ, որչափ ընդ յայն այլ երբեք այնպէս չէր զարմացեալ նոցա:

Բ. ԶՈՐՍՈՒՄ ամենայնէ ոչ եթէ տղէտ ինչ ոք էր Դիոնիսոս. զի գիտէր իսկ քաջ թէ որչափ ինչ նմա զարդ վայելչութեան է Դիոն, որով եւ նմա միայն անսայր, եւ ոչ ինչ ընդհատ յորդւոյ սիրէր զնա: Իբրեւ համբաւ ի Սիկիլիա հասանէր, եթէ Պղատոն ի տարենացւոց քաղաքն եհաս, Դիոնիսոս չկարէր արգելուլ պատանւոյն առաքել կոչել զնա անդրէն. զի Դիոն վառէր բորբոքէր ցանկութեամբ լսելոյ բանից առնն: Ուրդթողութիւն արար նմա բռնաւորն, եւ մեծաշուք փառաւորութեամբ եբեր ի քաղաք անդր սիրակուսացւոց: Զորմէ այնչափ զարմանայր Դիոն եւ կաթոգին լինէր, զի ամենեւին իսկ զանձն նմա տայր: Եւ ոչ եթէ սակաւ զուարճանայր Պղատոն ընդ Դիոն, զի թէպէտ եւ ի Դիոնիսեայ բռնաւորէ անագորոյն մտօք նեղէր, քանզի հրաման տուեալ էր վաճառականաց առնել զնա, սակայն միւսանգամ ի նոյն տեղի դարձաւ, ինտ-

րեն Դիոնի աղաչանաց։ Ի ժամանակակին յայնմիկ յախտ անկեալ դնէր Դիոնիսոս, եւ իբրեւ տագնապէր ի ջերմանէն, հարցանէր Դիոն զբժիշկսն եթէ զիարդ իցէ խաւթութիւն նորա, եւ զայն եւս խնդրէր ի նոցանէ, զի եթէ յանկարծ առաւել վըտանգ իցէ մահու., ազդ արասցեն իւր. զի կամի ինքնին խօսել ինչ ընդ նմա վասն զարքայութեան իշխանութիւն բաժանելոյ, քանզի պարտ եւ պատշաճ համարէր թէ եւ որդիքն քեռն իւրոյ, զոր ծնաւ նա Դիոնիսիսի, մասն եւ բաժին արքայութեան ունիցին։ Զայդ բժիշկքն ոչ ինչ լուեալ թագուցանէին, եւ առ. Դիոնիսոս նորին որդի զբանն ի վեր հանէին. եւ նորա ի նոցին բանիցն դրդեալ, զի մի լինիցի հնար Դիոնի ընդ նմա խօսելոյ, զբժիշկսն ստիպեաց տալ հօրըն թմբիր, զոր իբրեւ առ հիւանդն, թմբրեալ յարեւէն անկանէր։

Գ. ԱՅՍՊԷՍ սկիզբըն լինէր Դիոնի եւ Դիոնիսոսի գժտութեանն, եւ բազում իսկ իրգք աճէր եւ զօրանայր. բայց սակայն իսկզբանն ժամանակս ինչ կերպարանեալ բարեկամութիւն կայմնաց ի նոսա։ Եւ իբրեւ կարի շատ

աղաչեաց զԴիոնիսոս Դիոն, զի առաքեալ կոչեսցէ զՊղատոն յաթենացւոց քաղաքէ, եւ նորա խրատուն վարիցի, նա քանզի յիրս իրս զհետ հայրենի օրինակացն երթալ կամէր, լուաւ աղաչանաց նորա։ Ի նմին ժամանակի զՓիղիստոս պատմագիր ի սիրակուսացւոց քաղաք անդր կոչէր, որ բարեկամն էր բռնակալութեան առաւել քան բռնաւորին։ Այլ զայս ամենայնէ ի գիրս ինչ իմ՝ որ զմատենագրաց Յունաց աշխարհին գրեալ է, բազում ինչ կայ պատմեալ։ Արդ Պղատոն այնչափ զօրանայր ճոխութեամբ եւ ճարտարաբանն խօսողութեամբ առաջի Դիոնիսեայ, զի հաւանեցուցանէր իսկ զնա վրաւ առնել բռնակալութեանն, եւ զազատութիւն դարձուցանել սիրակուսացւոց։ Այլ Փիղիստեայ խրատուն միւսանգամ զառածանէր, եւ անագորոյնագոյն եւս սկսաւ լինել։

Դ. ԻԲՐԵՒ ետես եթէ գլէ զնա Դիոն իմաստութեամբ եւ ժողովրդեան գթով, զանգիտեալ թէ մի գուցէ, եթէ զնա առ իւր ունիցի, պատճառս ինչ տայցէ իւրոյ անձինն

ի նեղութիւն հասանելոյ, եւ նմա նաւ, զի ի Կորընթոս գնայցէ, յայս տրամեալ զի զայդ վասն երկոցունց եւս առնիցէ, զի մի այր զընկեր յաղթահարիցէ, որովհետեւ կասկածէին ի միմեանց: Եւ իբրեւ բազումք զայրացեալ դժկամակ լինէին ընդ իրան, եւ մեծաւ ատելութեամբ զբանաւորըն ատէին, Դիոնիսոս զամենայն աղխն Դիոնի ի նաւ աղխաղխեալ առաքէր առ նա. յայտ առնել կամեցեալ եթէ զայդ ոչ առ ատելոյ ինչ զԴիոն արար, այլ իւրոց կենաց վասըն: Ապա իբրեւ լու լինէր նմա եթէ ի Պեղոպոնեսոս զօր ժողովէ գունդ կազմէ, ի մտի եդեալ տալ ընդ նմա մարտ պատերազմի, զԱրետէ զամուսին Դիոնի այլում տայր կնութեան, եւ զուստր նորա այնպէս հրաման տայր վարժել, որպէս զի ներելովն եւ շնորհելով, աղտեղի ցանկութեամբք զգածիցի: Զի մինչ դեռ տղայն իսկ էր, բազմութիւն չար եւ անօրէն մարդկան շուրջ զնովաւ բընակեալ նստէին, արբեցութեամբ եւ շուայտութեամբ զեղխէր, եւ չկայր երբեք զգաստութեամբ: Արդ այնչափ ինչ ընդ փոփոխել այսպիսի կե-

նաց չկարէր տանել, իբրեւ հայրն անդրէն յաշխարհն դառնայր, քանզի կարգէր տայր նմա պահապանս եւ ուսուցիչս եւ դաստիարակս, զի յառաջին անառակութեան գնացիցն յետս զնա դարձուցանիցեն, մինչ զի ի տանեաց անտի զանձն ի վայր արկանէր, եւ այնպէս սատակէր: Այլ միւսանգամ ի նոյնս դարձցուք:

Ժ. ԽՈՐՇԻ գայր հասանէր Դիոնն ի Կորընթոս քաղաք, եւ անդր հատուածեալ էկն Հերակղիդէս՝ որ ի նմին իսկ ի Դիոնիսեայ մերժեցաւ, որ սատիկան լեալ էր հեծելոցն, ամենեւին փութով եւ յօժարութեամբ սկսան զպատերազմն կազմել: Այլ ոչ ինչ կարի իրք նոցա յառաջադէմ աջողէին, զի ամենեքին բազում զօրութիւն համարէին բռնութեանն՝ որ յայնչափ ամաց հետէ հաստացեալ ունէր զաշխարհն. վասն որոյ եւ սակաւաւորք իսկ ի բարեկամութիւն վշտաց վտանգին գային խառնէին: Բայց Դիոն ոչ ի զօրութիւն ինչ իւր, այլ յատելութիւնն՝ որով ամենեքին զբռնաւորն ատէին, յուսացեալ, մեծաւ արութեամբ երկուք բեռնաբարձ նաւուք, գայր յարձակել ի դի-

մի հարկանել իշխանութեան ի յի-
սուն ամաց հաստատեալ, որոյ հին-
գարեւր պատերազմիկ նաւաց էին, եւ
տասն հազար հեծելոց եւ հարեւր
հազար հետեւակաց, որ զարմանալի
իսկ ամենայն ազգաց թուեցաւ. եւ
այնպէս իսկ դիւրաւ եհար զբռնա-
ւորն, զի յետ երեք աւուր ի Սիկիլիա
հասանելոյ, մտանէր ի քաղաք անդր
սիրակուսացւոց: Եւ արդ մերձ է
քեզ աստուածն ի միտ առնուլ թէ չիք
իշխանութիւն ամուր եթէ ոչ գթով
եւ սիրով քաղաքացեաց ամրացեալ
իցէ: Ի ժամանակին յայնմիկ չէր
անդ Դիոնիսոս, եւ յիտաղացւոց
կողմանս մնայր նաւամարտիկ նաւա-
ցըն, զի համարէր եթէ ոչ ոք ի թը-
շնամեաց իշխեսցէ գալ առ նա ա-
ռանց բազմամբոխ բանակաց: Այլ ոչ
որպէս կարծէրն իւրքն վճարեցան. զի
Դիոն նոքիմբք իսկ՝ որ ընդ հակա-
ռակորդին իշխանութեամբ էին,
զհպարտութիւն ամբարտաւանու-
թեան արքունի ճոխութեանն կար-
ճէր, եւ թափէր յինքն զհամօրէն
զայն կողմն սիկիլիացւոց աշխարհին,
որ ընդ Դիոնիսի իշխանութեամբն
լեալ էր: Նոյնպէս եւ զսիրակուսա-

ցւոց քաղաքն առնոյր, բայց միայն ի դղեկէն եւ ի կղզւոյն՝ որ առընթեր կայր քաղաքին։ Եւ ցայն վայր զիրսըն հասուցանէր, զի Դիոնիսոս յանձըն առ դաշինս կռել ուխտս ի միջի հաստատել օրինակաւս այսուիկ, եթէ Զսիկկիղացւոց աշխարհն Դիոնի ունիցի, զԻտաղիա Դիոնիսոս, եւ զքաղաքն Սիրակուսացւոց Իպողոկրատէս, այն՝ յոր միայն հաւատացեալն էր Դիոնիսոս։

Զ. Զկնի այսպիսի եւ այսչափ յանկարծադէպ իրաց աջողութեան յանկարծակի վաղվաղակի փոփոխումն հասանէր. զի զոր սակաւ ինչ յառաջ վերացուցեալ եւ բարձրացուցեալ էր բախտին իւրով շարժունն փոփոխմամբ, զայն կամէր կործանել։ Եւ նախ իսկ քան զամենայն յորդւի անդրնորա՝ զորմէ վերագոյնն ճառեցաք, զիւր զօրութիւն անցոյց ի հանդիսի. զի իբրեւ առ իւր դարձուցանէր զկինն՝ որ այլում լիեալ էր առն եւ զուստրն եւս անդրէն յառաքինութիւն կամէր ածել ի զեղծ գնացիցն, կարեւոր վէրս յանձըն առնոյր որդւոյն մահուամբ։ Դարձեալ յետ այնորիկ եղեւ գրժ-

տութիւն նորա ընդ Հերակղիդեա, որ քանզի չկամէր Դիոնի թողուլ զիշխանութիւնն, ած կուտեաց խաղմարար մարդիկ: Եւ ոչ եթէ դոյզն ինչ ճոխութիւն էր առնն առաջին պատուատուորացն. զի նոյա հաւատութեամբ իշխան հրամանատար լեալ էր նաւատորմիղ նաւաց, ուր Դիոն զօրաւար էր հետեւակ զօրուն: Չկարէր հանդարտել տանել այդմ Դիոն, եւ զայն բան Հոմերեայ առէր յերկրորդ վիպասանութեանէն, յորում գրեալ կայ այսպիսի ինչ խրատ, թէ Չէ մարթ բազմաց իշխանութեամբ բարւոք վարել քաղաքին: Զայսցին բանից զհետ անհնարին ատելութիւն յաճախեաց. զի այսպիսի ինչ թուէր եթէ յայտնեաց նա զանձնէ, թէ ամենայն իմիք ընդ իւրով իշխանութեամբ լինել կամիցի: Այլ Դիոն փութայր ոչ հպատակ մնաք զատելութիւնն մեղմագոյն առնել, եւ զՀերակղիդէս տայր ապանանել յորժամ եկն նա ի Սիրակուսա:

Է. ԱՌՍՏԻԿ ահ արկանէր զամենեքումբք գործն, զի ոչ ոք յետ նորա մեռանելոյ յամրի զիւր կեանս համարէր: Իսկ նա, իբրեւ մերժեցաւ հա-

կառաւորդն, համարձակագոյնս այնու հետեւ զարարս այնոցիկ՝ զորոց դիտէր թէ ընդ հակառակս ինչ ելեալ ինքեան խեռին, զինուորաց բաշխէր: Զայս ամենայն իբրեւ բաժանէր տայր, քանզի օր ըստ օրէ բազում ինչ ծախք առնէին, մրգաց որպէս սկսաւ նուազել արծաթն, եւ չգոյր ձեռն ուրեք կարկառել, եթէ ոչ ի բարեկամացըն ստացուածս: Բայց եւ այս իսկ թէպէտ եւ զզօրականաց միտս հաճէր, այլ զպատուաւորսն ի բաց քակէր: Այսպիսի իրաց հոգովք խուճապէր, եւ զի չէր սովոր չարաչար բանս թշնամանիկս լսել, չժուժայր իբրեւ տեսանէր զի որ փոքր մի յառաջ յարգեալ գովեալ մեծարոյ երեւէր, այժմիկ չարիս զնմանէ խօսիցին: Եւ խառնամուժ ամբոխն, քանզի դժկամակ լեալ էր ընդ նա զօրն, համարձակ խօսէր, եւ անուանեալ կոչէր Անհնարին բանաւոր:

**Ի ԶՕՐՍ** ամենայն տեսեալ նորա, յորժամ չգիտէրն թէ զիարդ արդեւք ցածուցանիցէ, եւ զինչ զրաւ իւրացն լինիցի, գայր մտանէր առ նա Պաղիկրատէս ոմն անուն, աթենացւոց քաղաքի քաղաքացի, որ ընդ Դիոնի

իսկ ի պեղոպոնեսացւոց աշխարհէ ի Սիկիլիա եկեալ էր եւ էր այրն խորագէտ եւ նենգաւոր, անօրէն անկրօն եւ ամենայն հաւատարմութեան. եւ առնէր ցնա եթէ Յոյժ ի վտանգի կայ վասն ժողովրդեանն ապստամբութեան եւ ատելութեան զօրականացն: Եւ չիք իսկ այլ հնար յայնմանէ ապրելոյ, բայց եթէ զի գործ ի ձեռն առացէ միում յիւրոց անտի նմա թշնամի կերպարանել զանձն, զոր եթէ գրացես ուրեք, առէ յաջողակ, հաւատեաւ ի վերայ կայցես մտաց ամենեցուն, եւ զթշնամիսն հակառակորդս՝ որ չարութիւն զքէն խորհեսցին, ի բաց ի միջոյ բառնայցես. զի որք միանգամ հակառակութեամբ ընդ քեզն իցեն, յայտ արարեալ ցուցանիցեն զմիտս իւրեանց: Իբրեւ այս խորհուրդ հաճոյ թուեցաւ, ապա նա ինքն Կաղիկրատէս յինքն առնոյր ի գլուխ հանել զիրս խորհրդեանն. եւ նորա անմտութեամբքն իբրեւ զինու վառէր այնու հետեւ Կաղիկրատէսն անօրէն, եւ ընկերակիցս միաբանէր սպանանել զԴիոն, ի մի վայր ժողովէր զամենայն թշնամիս նորա, եւ հաստատէր պնդէր զկողմն ապստամ-

բայցն: Եւ իրքն որ գործէին ի խաղ-մաց անտի՝ որ իրագէտքն էին, Ա-րիստոմաքէ հասանէին, ի քոյր Դի-ոնի, եւ ի կին նորա Արետէ: Նո-քա յահէն պախեալք գային առ Դի-ոն, վասն որոյ երկնչէին իսկ: Նա պատասխանի տայր նոցա, թէ ոչ մի ինչ դարան գործի նմա ի Կաղիկրա-տեայ, այլ թէ ամենայն ինչ որ գոր-ծիցի, նորա հրամանաւ առնիցի: Բայց սակայն կանայքն զԿաղիկրա-տէս ի մեհեան անդր Պրոսերպինայ դիցն ածէին, եւ տագնապէին երդ-նուլ, թէ չլինիցին ինչ չարիք ի նմա-նէ Դիոնի: Նա ոչ եթէ նովին եր-դմամբքն ի բաց կայր յայնմանէ՝ զորմէ բուռն հարեալն էր, այլ յորդորէր վաղվաղել, առ կասկած թէ մի գուցէ մինչ չեւ ի գլուխ ելեալ իցեն հայթայթանքն, յայտ գայցէ խոր-հուրդ մտաց նորա:

Ժ. ՍՈՎԻՆ մտօք ի մօտաւոր տօ-նական աւուր, իբրեւ Դիոն հեռի ի ժողովոյ ժողովրդեանն ի տան կայր եւ ի վերնատան ի կողմն եղեալ ի վերայ մահճացն ննջէր, Կաղիկրա-տէս զամուր ամուր տեղիսն այնոցիկ՝ որ իրագէտքն էին իրացն, տայր ի

ձեռս, զապարանս շուրջ փակէր պա-
հապանօք, եւ կարգէր այր հաւա-
տարիմս, զի մի արտաքս բաց դրան-
ոքն ելանիցէ: Նա եւ նաւ մի պատե-
րազմիկ կազմէր պատրաստէր արամբք
վառեալք, եւ ի ձեռն տայր Փիղո-
կղետեայ եղբօր իւրում, եւ հրաման
տայր անդէն ի նաւահանգստի ծփել,
որպէս թէ հանդէս առնել կամիցի
նաւավարացն. զի խորհէր ի միտս իւր,
եթէ չյաջողեսցի նմա ի գլուխ հա-
նել զիրսն, յոյս ինչ ապրելոյ ուրեք
լինիցի: Եւ յիւրոց անտի ընտրէր իւր
զակիւնթիացի պատանեակս, արս
քաջս եւ համարձակս եւ զօրաւորս
զօրութեամբ. նոցա հրաման տայր
մերկ եւ անզէն երթալ առ Դիոն, որ-
պէս թէ առ խօսելոյ ինչ ընդ նմա
երթիցեն: Նոքա քանզի ծանօթք
էին առնն, դիւրաւ իսկ մտանէին.
այլ իբրեւ միջամուխ եղեն սեմոցն,
եւ զդրունսն ախեցին, յարուցեալ
անկան ի վերայ նորա, մինչ դեռ
յանկողնի իսկ էր, եւ կապեցին, եւ
եղեւ ստնաձայն մինչեւ լսելի իսկ լի-
նել արտաքոյ: Արդ որպէս յառա-
ջագոյն իսկ բազում անգամ ասա-
ցաւ, եթէ միոյ միայն իշխանու-

թիւն առնելի ամենեցուն է, եւ եղկելի եւ ողորմելի կեանք են այնր՝ որ ահագին ոք կամիցի լինել եւ ոչ սիրելի, այն ումպէտ դիւրին առ իմանալ է։ Քանզի նոքին իսկ պահապանքն, եթէ միամտեալ եւ հաճեալ էին ընդ նա, խորամանկեալ զդրուժման կարօղ էին պահել զնա, զի նոքա առանց զինուց կենդանւոյն ունէին զնա եւ սուսեր արտաքուստ խնդրէին։ Եւ իբրեւ չէր ոք՝ որ ի թիկունս հասանէր, Լիւկոն ոմըն սիրակուսացի, ընդ պատուհանն տայր նոցա ձեռն ի ձեռն սուսեր մի՝ որով սպանաւ Դիոն։

Ժ. Յետ սպանութեանն կատարելոյ, իբրեւ ամենայն բազմութիւնն ժառանէր ի ներքս՝ տեսանել, բազումք որ անտեղեակք իսկ էին իրացն գործելոց, փոխանակ ընդ վնասակարացն անկանէին։ Զի իսկ եւ իսկ իբրեւ շուինդն ընդ ամենայն կողմանս քաղաքին յածախէր, բազումք համագունդ խուժնընթաց առհասարակ դուռս տուեալ ի վերայ դիմէին, որոց ոչ ինչ հաճոյ գործն թուէր։ Սոքա վրիպական կարծիս ի մտի եդեալ, զանպարտս զանզէնս իբրեւ զչարա-

գործս կատարէին։ Իբրեւ մահ առնն ի վեր եղանէր, սքանչելապէս շրջեցան միտք խառնաղանձ ամբոխին։ Զի որք առ կենդանութեամբն նորա բռնաւոր զնա կարդային, նոքին ազատիչ աշխարհին եւ մերժիչ բռնաւորաց քարոզէին։ Այսպէս յանկարծակի փաղփաղակի զուարթն զատելութիւն փոխանակեաց, որպէս զի իւրեանց իսկ արեամբն, եթէ հնար ինչ էր, ցանկային թափել զնա յԱքերոնտայ[11]։ Այնու հետեւ մեծաշուք փառաւորութեամբ առեալ թաղէին զնա ի քաղաքի անդ, յերեւելի ի նշանաւոր տեղւոջ, եւ դիւական տապանս ուղղեալ կանգնէին ի վերայ նորայ։ Եւ մեռաւ նա ի յիսներորդի եւ ի հինգերորդի ամի կենաց իւրոց, յետ չորից ամաց ի վերայ անցանելոյ գալստեան նորա ի Պելոպոնեսեայ ի Սիկիլիա։

# ՑԱՆԴԻՄԱՆՈՒԹԻՒՆ

Ա. ԻՓԻԿՐԱՏԵԱՆ երեւելի եղեւ զինուորական խորատու։ Բ. Եւս պատերազմ Թրակացւովք հանդերձ, զլակեդեմոնացիս ի փախուստ դարձոյց. եկաց ի վերայ վարձկան գնդին Պարսից. զԵգիպտամինոնդրա յաղթեցոյց։ Գ. Իփիկրատեայ բարք, եւ որդւոյն նախատել զնա վասն խուժ կնոջն։

## ՄԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ

# Ի Փ Ի Կ Ր Ա Տ Է Ս

## Ա Թ Ե Ն Ա Ց Ի

Ա. ԻՓԻԿՐԱՏԷՍ աթենացի ոչ եթէ յաճախութեամբ իրացն գործելոց, այլ զինուորութեան խրատու հռչակաւոր լինէր։ Նա էր այնպիսի ոք զօրաւար, զի ոչ միայն ընդ առաջինսն որ ի նորա տիս էին, համեմատութեամբ կշռէր, այլ եւ ոչ յերիցագունացն իսկ ոք քան զնա նախամեծար համարէր։ Ժամանակ ի պատերազմունս շրջէր, բազում անգամ ի վերայ զօրացն կայր, ոչ ինչ իւրովք յանցանօքն ձախողեցաւ նմա երբեք, ցանգ իսկ եւ միշտ խորհրդով յաղթեաց. եւ այնպէս իսկ առաւելեալ էր խորհրդով եւ իմաստութեամբ, որպէս զի ի զինուորութեան արուեստին զկէսս մուծանէր նորամուտս, եւ զկէսս ազնուագոյնս կատարէր։ Զի նա զզէնս հետեւակացն փոփոխեաց,

զի մինչ չեւ սպարապետ լեալ էր նորա, յաղթ վահանս, եւ կարճ նիզակս, եւ փոքր սուսերս ի կիր արկանէին, նա նոյին հակառակ ասպարս ընդ մեծամեծ վահանացն գործեաց, ուստի յետոյ ասպարաւոր հետեւակքն կոչէին. որպէս զի թեթեւագոյնք ի շարժել եւ ի գնալ լինիցին։ Զչափ նիզակին կրկին արար, զսուսերսն երկայնագոյնս գործեաց։ Նոյն եւ զզրահիցն կերպարանըս փոփոխէր, եւ փոխանակ երկաթագործ եւ պղնձագործ պատենիցն, կտաւեղէնս յօրինէր։ Ուստի եւ երագագոյնս զզօրսն արար, զի զմեծաբեռն ծանրութիւն ի բաց թօթափեալ, փոյթ յանձին ունէր զի եւ մարմինք անդամոց նոցա պահպանեսցին, եւ թեթեւք եւս իցեն։

Բ. Սա ի մարտ պատերազմի ընդ սկիւթացիս մարտնէր. զՍեւթէս զնիզակակից բարեկամ աթենացւոց ի թագաւորութեանն հաստատէր։ Նա Կորընթեաւ այնչափ սաստիկ ոստիկան էր զօրացն, զի ոչ այնպիսի վարժ պատերազմի եւ ոչ այնչափ հլու ունկընդիր հրամանաց զօրաւարացն եղեւ երբեք գունդ ի Յունաց աշխար-

հին։ Եւ յայնչափ կրթութիւն ած զնոսա սովորութեամբ, զի իբրեւ զօրաւարն զնշան բախելոյ մարտին տայր, այնպէս իւրաքանչիւր կարգեալ յօրինեալ ի պատերազմ ճակատէին, որպէս թէ զմի մի ի նոցանէ քաջ զօրաւարի կարգեալ իցէ։ Արդ այսպիսի զօրու զղակեդմոնացւոց գունդն հարկանէր, որ առաւել երեւելի է յամենայն Յունաց աշխարհին։ Դարձեալ ի նմին պատերազմի զհամօրէն զօրս նոցա ի փախուստ դարձուցանէր. եւ մեծաշուք փառաւորութեան հասանէր։ Եւ իբրեւ Արտաշէս ի մարտ պատերազմի ընդ եգիպտացւոց թագաւորին գրգռէր, զԻփիկրատէս խնդրէր յաթենացւոց անտի, կարգել զնա զօրավար մարզիկ զօրայ՝ որոց թիւ համարոյ էր երկոտասան հազար։ Զայն գունդ այնպէս իմն խրատու զինուորութեան ածէր ի կրթութիւն, որպէս զի զոր օրինակ երբեմն փաբիացի հռոմայեցւոց զօրականն կոչեցաւ, ըստ նմին օրինակի եւ իփիկրատեանքն առ Յոյնըս մեծաւ գովութեամբ դրուատեին։ Նոյն դարձեալ այր յօգնականութիւն ղակեդմոնացւոյն երթեալ,

զԱպամեմնոնդեայ զյանդգնութիւնն կարծէր. քանզի եթէ ոչ նորա զալուստն մերձենայր, չմեկնէին թեբացիք իսպարտացւոց աշխարհէն, մինչ չեւ առեալ էր նոցա եւ այրեացաւեր արարեալ ։

Դ. Մնա էր այրն եւ օգնով եւ մարմնոյ անդամօք, սքանչելի շքեղ կերպարանօք, որպէս զի տեսլեամբն իսկ զամենեսեան զարմացուցանէր. այդ յաշխատութիւնս դանդաղագոյն յոյժ եւ ոչ տեւական, որպէս Թ՛էոպոմպոսն յիշատակէ. բայց էր նա առաքինի քաղաքացի եւ հաւատարիմ։ Ացոյց զհաւատարիմ բարսն ի բազում ինչ իրս, եւ առաւել եւս յայտ առնէր յորժամ ուստերաց Ամիւնտեայ մակեդոնացւոյ պատսպարան լինէր։ Քանզի Եւրիդիկէ, մայր Պերտիկայ եւ Փիղիպեայ, երկու որդւովքն յետ Ամիւնտեայ մեռանելոյ, առ Իփիկրատէս անկանէր, եւ նորա օգնականութեամբ պատսպարէր։ Նոկաց ցծերութիւն պարարտութեան, եւ խաղաղութեամբ մեռօք էին ընդ նմին քաղաքացիքն։ Մի անդամ խօսեցաւ վասն անձինն. զի գլխով պատժապարտ լինեալ էր, ի ժամանակի

մինչ դեռ բարեկամաց պատերազմին ի վերայ կայր, ի միասին ընդ Տիմոթեայ, եւ արձակեցաւ ի դատաստանէ անտի։ Թ՝ողոյր Նա որդի մի Մ՝ենեսթէս անուն, որ ի Թ՝րեսեայ ծնաւ, ի դստերէ Կոտեայ արքայի։ Սա յորժամ հարցաւն, եթէ զհա՞յրն արդեւք մեծարոյ, թէ զմայրն համարիցի, զմայրն, ասէ։ Իսկ եւ ամենեցուն զարմանալի թուէր բանն, Նա Յիրաւի եւ յարժանի, ասէ, զայդ առնեմ, զի հայր իմ, որչափ ինչ ի Նա պատատան էր, Թրակացի ծնաւ զիս, եւ Նմին հակառակ մայրն՝ աթենացի։

# ՑԱՆԴԻՄԱՆՈՒԹԻՒՆ

Ա. ՔԱԲՐԻԱՍ նոր ինչ օրինակ պատերազմի գտեալ, փառաւոր եղեւ։ Բ. Իրքն Քաբրիայ Նեկտանեբայ եգիպտացւոյ եւ Եւագորայ կիւպրացւոյ եւ այլովք հանդերձ։ Գ. Հրաման առնու յԵգիպտոսէ գնալ յաշխարհն. վասն նախանձուն ի բաց երթայ։ Կորեաւ ի պատերազմի Թողեալ լը-քեալ յիւրոցն։

### ԵՐԿՈՏԱՍԱՆԵՐՈՐԴ

# ԽԱԲՐԻԱՍ

## ԱԹԵՆԱՑԻ

Ա. ԽԱԲՐԻԱՍ Աթենացի։ Նա ևս ի մեծամեծ զօրաւարս համարեալ է, և բազում ինչ իրս արժանի յիշատակաց գործեաց. այլ ի նոսա երեւելի է հնարագէտ ճարտարութիւն նորա ի կռուսն՝ զոր առ Թեբայեցւոց քաղաքաւ կռուեցաւ, ի ժամանակի իբրև բէովտիացւոց ի Թիկունս օգնականութեան եկեալ էր։ Զի ի պատերազմին յայնմիկ, իբրև վստահ էին ի յաղթութիւնն էր Ագեսիղաւոս զօրաւար մեծ, յետ փախստեայ հանելոյ ի նմանէ զմարզիկ գունդսն, զմնացեալ գունդն արգել մեկնել, և յեցեալ պնդեալ ծնգով ի վահան անդր, զգեղարդունս յառաջ ձգեալ, ուսոյց դիմակալ լինել Թշնամեացն յարձակման։ Իբրև ընդ այն նորանշան անտի հայեր Ագեսիղաւոս, չիշ-

խեր յորում խաղալ, եւ զիւրսն՝ որ արշաւեալ յարձակեալ էին, ի ձայն փողոյ միաւանգամ պարէն յետս կոչէր։ Այս այնչափ իմն ի Յունաց աշխարհին համբաւաւ երեւելի լինէր, զի նովին գրիւ Քաբրիաս կամեցաւ զիւր անդրի պատկեր կանգնեցի, որ ի հասարակաց համարուէ յաթենացւոց կանգնեցաւ ի Հրապարակի։ Այլ յետ այնորիկ ըմբիշքն նահատակք եւ այլ եւս ճարտարապետքն, նովին գրիւք վարէին ի պատկերսն կանգնել, յորս զյաղթութիւնն ստացեալ իցեն։

Բ. Իսկ Քաբրիաս բազում ճակատս անդէն յԵւրոպն մղէր, իբրեւ զօրավար էր նա աթենացւոց, եւ բազում ճակատս յԵգիպտոս ինքնակամ տայր; զի Նեկտանեբայ յօգնականութիւն երթեալ զթագաւորութիւնն նմա հաստատէր։ Զնոյն եւ ի Կիպրոս արար, բայց զայն ի հասարակաց հաւանութենէ աթենացւոց, Եւագորայ օգնական տրուեալ, եւ չեկաց իսկ ի բաց մինչչեւ էր ամենայն կղզւոյն մարտիւ պատերազմաւ յաղթեալ. որով մեծ իմն փառաւորութեան աթենացիք հա-

տանէին: Յետ այնորիկ պատերազմ ընդ եգիպտացիս եւ ընդ Պարսիկս յառնէր. աթենացիք ընդ Արտաշիսի բարեկամեալ էին, եւ ղակեդմոնացիք ընդ եգիպտացիս, յորոց մեծամեծ աւարս Ագեսիղաւոս առնոյր ղակեդմոնացւոց արքայ: Ընդ այն հայեցեալ Քաբրեայ, քանզի ոչ միով իւիք իրօք նուազ քան զԱգեսիղաւոս գտանէր, ինքնակամ ի նոցա օգնականութիւն երթեալ, նա կայր ի վերայ եգիպտական նաւատորմղին, եւ հետեւակ զօրուն Ագեսիղաւոս:

Գ. ՅԱՅՆՄ ժամանակի կուսակալք թագաւորին Պարսից հրեշտակս յաթէնս առաքէին զրոյց տալ քանքատելով, թէ որպէս Քաբրիաս ճակատ տայ ընդ թագաւորին խառն ընդ եգիպտացիս: Աթենացիք ժամ տային Քաբրեայ, որ հաստատէին, եւ թէ ոչ յառաջ քան զայն օր դառնայցէ, ասէին, գլխով պատիժ առնեմք: Նա իբրեւ զայն պատգամ առնոյր, դառնայր դայր յԱթէնս, եւ չկայր անդ երկարագոյնս քան որչափ ինչ հարկն էր. քանզի ընդ ակամբ հայէին քաղաքացիքն, զի շքեղով կեայր եւ առատանայր համ-

արձակադոյնս, մինչեւ ի խառնաղանձ ռամկին նախանձու է ոչ ապրել ։ Զի այն իսկ հասարակաց չարիք են ի մեծամեծ եւ յաղատ քաղաքս, զի նախանձաւորութիւն ընկերակից իցէ փառաց, եւ համարձակ զայնց չարախօս լինիցին, զորս վերացեալս բարձրացեալս քան զայլսն տեսանիցեն. եւ ոչ դարձեալ ուրախութեամբ անանկք ընդ ընչաւետաց բախտաւորութիւն հային ։ Վասն որոյ Բաբիլոն, որչափ համարձակութիւն էր նմա, ի բաց երթայր ։ Եւ ոչ եթէ նա միայն կայր մեկուսի յաթենացւոց քաղաքէն ինքնակամ, այլ դրեթէ ամենայն իսկ իշխանք զնոյն գործէին, զի այնչափ հեռացեալս ի խանտաւորութենէ զանձինս համարէին, որչափ ինչ յաչաց իբեանց քաղաքացեացն մեկուսի էին ։ Վասն այնորիկ իսկ եւ Կոնոն բազում ժամանակս ի Կիւպրոս եկեաց, Իփիկրատէս ի Թրակիա, Տիմոթէոս ի Լեսբոս, Քարէս ի Սիգէոս. զի թէպէտ եւ չէր իսկ նման նոցա Քարէս եւ արդեամբք եւ բարուք, բայց սակայն յԱթէնս եւ պատուեալ էր եւ կարօղ ։

Դ. Երբ Քաբրիաս մեռանէր ի բարեկամաց կուսէն այսպիսի ինչ օրինակաւ: Մարտ եղեալ կուսէին աթենացիք ընդ Քիոն, եւ էր Քաբրիաս ի նաւատորմղին առանձին առանց իշխանութեան, այլ զամենեքումբք իսկ՝ որ ի գործ վերակացութեանն էին, անցանէր ճոխութեամբ եւ իշխանութեամբ, եւ ընդ նա առաւել քան ընդ զօրաւարսն զօրքն հայէին. եւ այն իրք զմահ իսկ ածին հասուցին նմա: Զի մինչ դեռ փութայրն նախ ի նաւահանգիստն մտանել, եւ նաւավարին հրաման տայր անդր զնաւն ուղղել, անձամբ անձին վնաս գործէր. քանզի իբրեւ ինքըն միջամուխ անդր լինէր, այլք չգային զհետ, եւ այնպէս շուրջ հեղեալ զեղեալ թշնամեացն խուռնընթաց առհասարակ ի վերայ դիմելոց, իբրեւ հզօրագոյնս կռուէր, նաւըն յառաջոյ կողմանէ խորտակեալ ընկղմել սկսանէր: Նմա թէպէտ եւ կարօղ իսկ էր ապրել թէ ի ծով զինքըն ընկենոյր, քանզի հուպ իսկ էր աթենացւոց տորմիղ նաւաց, եւ զայնոսիկ որ ի լուղն գային, ընդունէր, բայց սակայն կործանել լաւ համարե-

ցաւ, քան զզէնսն ի բաց ընկեցեալ զնաւն՝ յորոյ վերայ եկեալն էր, Թողուլ: Զնոյն այլք չյօժարէին առնել, եւ ի լուղ անկեալ ի ծանծաղ ելանէին: Այլ նա նախամեծար ըզզգաստականն մահն քան զծանակութեան կեանսն համարեալ, եւ ի հեռաստանէ կռուեալ, ի թշնամեացն ներքոյ սատակէր:

## ՅԱՆԴԻՄԱՆՈՒԹԻՒՆ

Ա. ՏԻՄՈԹԵՈՍ. Նկարագիր. եւ գործք քաղցրութեան նորա: Բ. Յետ ղակմանց ի նմանէ ի պարտութիւն մատնելոյ, պատակեր կանգնի Տիմոթեայ: Գ. Ի ծերութեան տան զնա խորատոտու Մենեսթեայ, եւ ամբաստանելով դատապարտի: Դ. Սակայն Տիմոթեայ որդին զպարիսպն նորոգէր: Յասոնեայ հաւատարմութիւնն:

## ԵՐԵՔՏԱՍԱՆԵՐՈՐԴ

# Տ Ի Մ Ո Թ Է Ո Ս

## Ա Թ Ե Ն Ա Ց Ի

Ա. ՏԻՄՈԹԷՈՍ ուստր Կոնոնի Աթենացւոյ. սա զփառաւորութիւն՝ զոր ի հօրէն ընկալաւ, բազմապատիկ առաքինութեամբք աճեցոյց: Եւ էր նա ճարտարախօս բանիբուն, ժիր եւ աշխատասէր, տեղեակ ամենայն իրաց զինուորութեան, եւ վարչութեան քաղաքի հմուտ: Բազում կան նորա նշանաւոր իրք, այլ այսքան զայլսն ամենայն լուսաւորագոյնք: Զողինթացիս եւ զբիւզանդացիս մարտիւ պատերազմաւ նուաճէր. զՍամոս առնոյր, ընդ որում կռուեալ աթենացւոցն յառաջին պատերազմունսն, հազար եւ երկերիւր տաղանդս ծախեալ էին, արդ նա զայն քաղաք առանց իրիք ի հասարակաց գանձուէ ծախելոյ դարձոյց ժողովրդեանն: Մղէր նա մարտ պա-

անրադզմի ընդ կոտեայ, եւ ի նմանէ բերէր ի գանձ հասարակաց հազար երկերիւր տաղանդ աւար։ Զկիւղիկոն ի պաշարմանէ ապրեցուցանէր։ Եր-թայր ընդ Ագեսիղայ ի թիկունս օգնականութեան Արիոբարզանայ, եւ իբրեւ արծաթ եւ ոսկի ի նմանէ ընդունէր ղակոնացին, նա լաւ համա-րէր զիւր հայրենի գաւառն գեղիւք եւ քաղաքօք մեծացուցանել, քան այնպիսի ինչ ընդունել, յորմէ մասն ինչ եւ յիւր տուն մարթէր ածել։ Կատն որոյ զԿրիթոնէս[12] եւ զՍեստոս քաղաք ընդունէր։

Բ. ՆՈՅՆ այս ոստիկան լեալ նաւատորմղին, շուրջ եկեալ զՊե-ղոպոննեսաւ, աւար առնոյր զղա-կեդմոնացւոց աշխարհն եւ զտորմիղ նաւաց նոցա փախստեայ հանէր։ Զկորկիւրա ընդ աթենացւոց իշխա-նութեամբ արկանէր. նոյն դարձեալ զեպիրոտացիս, զաթամանացիս, եւ զքաւոնացիս, եւ զամենայն ազգան՝ որ առ այնր ծովու կան, նիզակակից բարեկամս առնէր։ Յետ այսր ամե-նայնի ի գլուխ ելանելոյ, ղակեդմո-նացիք կային ի բաց ի բազմաժամա-նակեայ հակառակութենէն, եւ ին-

քնակամ աթենացւոց թողուին զառաջին իշխանութիւն ծովու, եւ դաշինք խաղաղութեան. ի մէջի կրուէին զայս գունակ ձեւ օրինակի, եթէ Աթենացիք ծովակալ կայցեն: Վասն այսր յաղթութեան այնպիսի խնդութիւն ատտիկեցւոցն լինէր, զի յայնժամ զառաջինն բագինք դիցն խաղաղութեան հրապարակաւ կանգնէին եւ բարձ եւս դիցն եղ[illegible]ւ[13]: Նաեւ զի յիշատակ այսպիսի գեղեցիկ գործոց քաջութեան մնայցեն յառաջայ ժամանակս, անդրի պատկեր ի հրապարակի Տիմոթեայ կանգնէին: Այսպիսի ինչ պատիւ չէր ումեք յառաջ քան զայն շնորհեալ, զի որ հօրն պատկեր կանգնեաց ժողովուրդն, նոյն տացէ եւ որդւոյն: Որդ այսպէս պատկեր որդւոյն առ հօրն պատկերի եդեալ, զառաջին յիշատակն հօրն նորոգէր:

Գ. Այլ յորժամ ի ծերութիւն հասանէր եւ ոչ եւս այնու հետեւ վարէր զիշխանութիւնն, յամենայն կողմանց պատերազմ ի դիմի հարկանէր աթենացւոցն: Յետոյ կայր Սամոս կղզի, Եղեսպոնդոս չկայր ի հնազանդութեան, Փիղիպպոս Մակեդոնացի

զօրացեալ անդստին. բազում երաց ձեռնհասուն լինէր, եւ թէպէտ եւ կարգէին նմա ընդդէմ զՔարէս, այլ չլինէին ինչ կարի փութով յառնն քաջութիւն։ Մենեսթեւս հազարապետ եղեւ, որդի Իփիկրատեայ եւ փեսայ Տիմոթեայ. եւ վճիռ եւս լինէր երթալ նմա ի մարտ պատերազմի։ Տուան նմա խորհրդականք երկու փորձութեամբ եւ իմաստութեամբ երեւելիք, զի նոցա խրատուքըն վարեսցի, հայրն եւ աներն. քանզի այնչափ ինչ ճոխութիւն էր նոցա, զի յուսացեալ էին եթէ ի ձեռն նոցա կարիցեն զկորուսեալսն միւսանգամ առնուլ։ Աղքա. իբրեւ նաւարկեալ ի Սամոս երթային, եւ ի վերայ հասանէր անդրէն Քարէս. եթէ զանձնոքա, իւրովք զօրօքն չու առնէր խաղաղը զնայր եւ նա, զի մի մինչ դեռ ինքն ի բացեայ իցէ, գործել ինչ թըւեսցի։ Արդ՝ դէպ եղեւ զի իբրեւ հուպ եկեալ հասանէին ի կղզին. մրրիկ սաստիկ յառնէր, եւ համարէին այնպէս երկոքին զօրավարքն ծերք եթէ պարտ եւ պատշաճ իցէ սպասել, եւ մի ի վտանգն յանդգնել։ Կ՝ասն որդ եւ զատորմիզ նաւաց իւրեանց դադա-

ըեցուցին : Իսկ Պաւղոս խորհուրդ յանդուգն ի մտի արկեալ, չառնոյր յանձն անսալ բանից ծերոցն, եւ որպէս թէ յիւրում նաւի անդ խցէ բախտըն, անդէն յոր դէմ եդեալն էր, հասանէր : Վաղվաղակի հրեշտակս առ Տիմոթէոս եւ առ Եփիկրատէս առաքէր, թէ եւ ինքեանք զհետ նորա գնասցեն : Եւ իբրեւ ճախողեցաւ նովին, նաւս բազում տուժեալ, յայն վայր դառնայր, ուստի մեկնեալն էր, եւ թուղթ յԱթէնս հրապարակաւ յղէր զայս ձեւ օրինակի, եթէ Ինձ դիւրին էր զՍամոս կղզի առնուլ, եթէ ոչ Տիմոթեայ եւ Եփիկրատեայ թողեալ էր զիս : Վասն նորին իսկ իւրոց յանցաւորս համարէին. Ժողովուրդն քանզի սաստիկ էր եւ կասկածոտ եւ խռովայոյզ, եւ հակառակորդ, եւ նախանձոտ եւս իշխանութեան, կոչեաց զնոսա ի քաղաքն անդր, եւ ամբաստան եղեն զնոցանէ թէ մատնիչք են : Ընդ դատապարտանաւ պարտաւորէր Տիմոթէոս, եւ հատանէր ի վերայ նորա վճիռ տուժել նմա տոյժս հարեւր տաղանդ : Նա առ ատելութեան որով զքաղաքն ապախտաւոր ատեայր, երթայր բնակել ի Քաղկիդ :

Դ. ՅԵՏ նորա մեռանելոյ, յորժամ տարջացաւ ժողովուրդն ընդ իւր դատաստանն, ի բաց բառնային անդէն զինն մասն տուգանացն, եւ հրամանային Կոնոնեայ նորին որդւոյ տալ տասն քանքար առ ի զկողմն մի պարըսպացն նորոգելոյ: Որով յայտ այլ եւ այլ կերպարանք բախտին եղեն. քանզի զոր պարիսպս հաւ նորա Կոնոն ի թշնամեացն աւարէ կանգնէր աշխարհին, զնոյն նորին թոռն յայպըն կատականաց իւրոյ ազգատոհմին, յիւրոց առանձինն ընչից բռնադատէր նորոգել: Զտիմոթեայ զգաստական եւ զիմաստուն կենաց կարէաք բազմագոյն եւս վկայութիւնս ի մէջ բերել, այլ միով միայն շատասցուք, զի անտի մարթեմք դիւրաւ ի վերայ կալ, եթէ որպէս սիրելի իւրոցն էր: Իբրեւ ի մանկութեան ժամանակի յԱթէնս պատասխանի վասն անձինն ի դատաստանի առնէր, գային ժողովէին առ նա ոչ միայն բարեկամք եւ շինականք պանդուխտք ի նորա պատասխանատուութիւն, այլ եւ Յասոն բռնաւոր, որ յայնմ ժամանակի քան զամենեսին բռնագոյն եւ հարստագոյն էր:

Սա թէպէտ եւ յիւրում բնին առանց անձնապահաց չհամարձակէր շրջել, ելանէր գայր յԱթէնս առանց պահպանութեան, եւ այնչափ ինչ մեծարոյ զհերուն համարեցաւ, զի լաւ համարեցաւ զանձն ի վտանգի կացուցանել, քան թէ Տիմոթեայ որ ի վերայ բարուց անուան կոչուէր, չհասանիցէ ի թիկունս ։ Նոյն յետոյ Տիմոթէոս ռամկին հրամանաւ ընդ նմա ի մարտ պատերազմի դրդուէր, եդեալ այնպէս ի մտի, եթէ քան ըզհիւրի իրաւունս, իրաւունք հայրենի աշխարհին սրբագոյնք են ։ Նոյն իսկ է յետին ժամանակ զօրաւարացն աթենացւոց, Իփիկրատեայ, Քաբրիայ եւ Տիմոթեայ. զի եւ ոչ մի ոք զօրաւար յետ նոցա վախճանին, ի քաղաքին յայնմիկ արժանի յիշատակի եղեւ ։

# ՑԱՆԴԻՄԱՆՈՒԹԻՒՆ

Ա. ԴԱՏԱՄԷՍ քան զամենայն խուժան երեւելի, ի պատերազմել Արտաշիսի ընդ կադուսիացւոց, զհայրենի գաւառն զկողմն կիլիկեցւոց ժառանգէ: Բ. Զթիւսս կենդանւոյն ձերբակալ առնէ: Գ. Զթիւսս որ ըմբռնեցաւն, անհնարին զարդու զարդարեալ յանդիման կացուցանէ թագաւորին: Կայ ոստիկան ի վերայ զօրացն որ ի մարտ պատերազմի ընդ եգիպտացւոց երթային: Դ. Դատամէս այսրէն կոչեցեալ զԱսպիս զդամբր ըմբռնէ: Ե. Իմացեալ զնենգութիւն նախարարացն, զԳամիրս եւ զՊափղագոնիա բռնացեալ ունի: Զ. Դատամեայ որդին ի Պիսիդս մեռանի, որոց յաղթէ Դատամէս խնդրեալ զվրէժ հատուածելոյ աներոյ իւրոյ: Է. Յորդւոյ անտի իւրմէ մատնի: Ը. ԶԱւտոփրադատէս որ ի վերայ նորա առաքեցաւ, պարտէ: Թ. Հնարիւք ի դաւաճանութենէ թագաւորին ապրի: Ժ. Պատրի ի Միթրիդատայ նենգութենէ: ԺԱ. Ի խօսսն խաբանօք սպանանի:

## ՉՈՐԵՔՏԱՍԱՆԵՐՈՐԴ

# Դ Ա Տ Ա Մ Ի Ս

## Կ Ա Ր Ի Ա Ց Ի

Ա. Արդ եկից յայրն մեծահզօր որ քան զամենայն խուժդուժսն առ- աւել խորհրդական է, բայց միայն յերկուց կարքեդոնացւոց, յԱմիլկա- րայ եւ յԱննիբաղայ: Բազում ինչ զնմանէ ի մատենի առեալ պատմե- ցից, քանզի բազում գործք քաջու- թեան են առնն զեղչեալք եւ թա- քուցեալք, եւ որք յաջողութեամբ ինչ ի դէպ ելանէին, ոչ եթէ զօրաց ինչ յաճախութեամբ դիպէին, այլ խորհրդով եւ իմաստութեամբ, ու- րովք իբրեւ անցանէր իմն զամենե- քումբք: Որոց թէ ոչ կարգն մեկնիցի, չմարթի իրացն երեւել: Դատամէս ի Կամիսարայ՝ որ էր կարիացի յազգէ, եւ ի մօրէ սկիւթացւոյ ծնաւ: Զա- ռաջինն ի զօրականաց համարի էր առ Արտաշիսի, այնոցիկ՝ որ զարքունիսն

պահիցէն: Հայր նորա, քանզի հզօր էր զօրութեամբ, եւ քաջ անհնարին յիրս պատերազմի, եւ բազում անգամ հաւատարիմ գտեալ թագաւորին, ունէր զնահանգ կիլիկեցւոց աշխարհին դէմ յանդիման Գամրաց, յորում Պետկատորիքն բնակէին: Տրայանոս յորժամ ի գործ զինուորութեան մտանէր, զառաջինն թէ որպիսի ոք էր յայտ արար ի պատերազմին՝ զոր տայր արքայ ընդ կաղուսացւոց: Քանզի յայնմ վայրի, յետ բազում հազարաւորաց կոտորելոյ, բազում գործ վճարեաց. նմին իրի իբրեւ Կամիսարես ի ճակատուն անկանէր, հայրենի նահանգն նմա տուաւ:

Բ. ՕՆՈՐՅՆ քաջութիւն եւ յետ այնորիկ ցուցանէր, յորժամ Սեւտոփրադատէսն թագաւորին հրամանաւ տայր պատերազմ ընդ այնոսիկ՝ որ յետս կացեալ էին յապստամբութիւն: Քանզի Նովաւ իսկ թշնամիքըն, մինչ դեռ ի բանակ անդր եկեալ մտեալ էին, բեկան, եւ մնացեալ զօրքն թագաւորին եղեն. ուսուցանի եւ սկիզբն առնոյր կալոյ ի վերայ մեծամեծ եւս իրաց: Եւ ի ժամա-

նախկին յայնմիկ Թիւոս էր, հարուստ պափղագոնացւոց աշխարհին, ի հին ազգէ սերեալ ի Պիղեմենեայ, զորմէ Հոմերոս ասէ ի տրովացւոց պատերազմին ի Պատրոկղեայ[14] սպանեալ: Սա չէր հնազանդ հրամանաց Թագաւորին, նմին իրի եւ Թագաւորն եդ ի մտի տալ պատերազմ ընդ նմա. եւ նոյին կրաց յանձանձիչ ըզԴատամէս առնէր, զմերձաւոր Պափղագոնացւոյն, զի եղբօր եւ քեռորդիք էին: Վասն որոյ եւ Դատամէս զամենայն ջան յանձն առնոյր զի առանց զինուց զմերձաւորն ի պատշաճն ածիցէ: Նա իբրեւ գայր առ նա առանց պահպանութեան, քանզի ոչինչ դաւաճանութեան կարծիս ի բարեկամէն կարծէր, փոքր մնաց եւս եւ մեռանէր իսկ, զի գաղտ կամէր սպանանել զնա Թիոս: Էր մայրն ընդ Դատամեայ, հօրաքոյր պափղագոնացւոյն, նա ի վերայ հասանէր բանիցն որ լինէին, եւ որդւոյն պատմէր: Դատամէս փախուցեալ ապրէր ի վտանգէն, եւ ի մարտ պատերազմի հակառակ Թիոսի յառնէր: Երդ Թէպէտ եւ ի մարտին եԹող զնա Արիոբարզանէս, զլիւդացւոց եւ յոնիա-

ցուոց եւ համօրէն փոխուզացուոց կու-
սակալ, բայց եւ այնպէս նա տեւէր, եւ զԹիւոս կենդանւոյն ձերբակալ առնէր, հանդերձ կանամբն եւ որդւովք:

Գ. ՓՈՒԹԱՅՐ զի մի մինչ չեւ ինքն առ արքայ երԹեալ իցէ, հասանիցէ ի նա համբաւ իրացն: Վասն որոյ եւ գաղտ յամենեցունց, անդր ուր Թագաւորն էր, եկն. եւ յաւուրն երկրորդի զԹիւոս՝ որ հարուստն էր անդամովք, եւ մարմնադեղ, եւ կերպարանօք ահագին, քանզի եւ Թուխ խոկ էր, եւ գէսք երկայնեալք, եւ մօրուք արձակեալք, զգեցուցանէր գեղեցիկ ձորձով որպէս ինչ էին սովոր զգենուլ շահապքն արքունի, եւ զարդարէր եւս քառամանեկաւ, եւ դնէր ապարանջանս ոսկիս, եւ զայլըն ամենայն ըստ արքունական ըսպասու: Եւ ինքն շինականուԹեան Թամբառն զանձամբ արկեալ, եւ մաշկ պատմուճան ագանէր, եւ սաղաւարտ պատորդաց ի գլուխն դնէր. բիր յաջոյ ձեռին, եւ ի ձախուն ճոպան՝ որով կապեալ առաջի արկեալ տանէր զԹիւոս, որպէս Թէ գազան ի վայրէ ըմբռնեալ ածիցէ: Ընդ այն

իբրեւ բազումք հայէին, վասն նորանշան զարդուն եւ անծանօթ կերպարանացն, բազում ամբոխ դիմեալ ի տեղւոջն խռնէր, մի ոմն ի նոցանէ ճանաչէր զԹիւոս եւ զրոյց տայր Թագաւորին: Զառաջինն չառ յանձն հաւատալ Թագաւորն, եւ զՓառնաբազ յղեաց լրտեսել, իբրեւ լըսէր ի նմանէ զիրան եղեալս, վաղվաղակի ի ներքս մուծանել հրամայէր. զուարճացեալ լինէր յանձն իւր ընդ գործն եւ ընդ զարդն, մանաւանդ զի եւ այնպիսի անուանի Թագաւոր ի բուռն անկեալ էր, որում չունէր իսկ ակն: Վասն որոյ մեծապատիւ մեծապարգեւ զԴատամէս մեծարեալ անդէն ի զօրն առաքէր, որ գումարէր Փառնաբազայ եւ Տիթրաւստայ զօրաւարութեամբ ի մարտ պատերազմի եգիպտացւոց. եւ հրաման տայր եթէ եւ նա հաւասար իշխանութիւն իբրեւ զնոսա ունիցի: Յետ այնորիկ իբրեւ զՓառնաբազոս յետս կոչէր Թագաւորն, նա կայր սպարապետ ամենայն զօրացն:

Դ. Արդ մինչ դեռ նա մեծաւ փութով զօր ժողովէր գունդ կազմէր, չու առնել խաղալ գնալ յաշխարհն

եգիպտացւոց, փաղփաղակի հրովարտակ ի թագաւորէ անտի հասանէր, զի խաղայցէ ի վերայ Ասպեայ, որ զկատաւոնիացւոց կողմանս ունէր. այս ազգ կայ անդր քան զԿիլիկիա, սահմանորդ Գամրաց աշխարհին: Ապիս քանզի յանտառախիտ աշխարհի բնակէր, եւ յամրացեալ բերդիւք, ոչ միայն թագաւորին իշխանութեան չկայր ի հնազանդութեան այլ եւ զարուարձանեայ աշխարհան լլկէր, եւ զօրս առ թագաւորն տանէին, յափշտակէր: Դատամէս, թէպէտ եւ բազում անջրպետութեամբ վայրաց հեռի էր յայնց կողմանց, եւ ի մեծամեծ իրաց ի բաց կայր, այլ թագաւորին կամաց հնազանդել ի դէպ համարէր: Նմին իրի սակաւուք այլ արամբք զօրաւորօք ի նաւ ելանէր, համարեալ այնպէս, որպէս եւ իսկ ի գլուխ, թէ դիւրաւ զգեղծն զանպատրաստ սակաւաձեռն դնդաւ յաղթահարիցէ, քան թէ զպատրաստեալն յաճախագունդ զօրօք բազմատարած բանակօք: Անտի նաւարկեալ հասանէր ի Կիլիկիա, եւ անտի ելեալ ի նաւէն զցայգ եւ զցերեկ ճանապարհ առնէր, եւ զՏաւրոս [illegible]-

տեալ անցեալ, անդր յոր փութա-
ցեալն էր, հասանէր: Հարցանէր թէ
յոր տեղիս յինչ վայրս Ասպիսն իցէ,
եւ իմանայր եթէ չէ ինչ կարի հեռի,
եւ թէ յորս երթեալ իցէ: Եւ իբրեւ
նա զհետ մտեալ խնդրէր, իմանային
եթէ յինչ պատճառաց սակս եկն:
Յարդարէր պատրաստէր Ասպիս հան-
դերձ իւրայովքն զպիսիդացիս ընդ-
դէմ կալ: Այնր իբրեւ ի վերայ հասա-
նէր Դատամէս, զէն առնոյր, եւ հրա-
մայէր իւրոցն զի զհետ երթիցեն. եւ
ինքն մտրակ ի կուշտ արարեալ երի-
վարին ի վերայ յարձակէր: Իբրեւ ե-
տես զնա Ասպիս ի հեռաստանէ զի
այնպէս յարձակեալ գայր ի վերայ
նորա, զարհուրեցաւ փախեաւ, եւ
դադարեալ ի դիմադարձ լինելոյ, ան-
ձնատուր եղեւ: Զնա կապեալ տայր
Դատամէս Միթրիդատայ զի ածցէ
առ թագաւորն:

ՄԻՆՉԴԵՌ այս իրք այսպէս կա-
տարէին, զմտաւ ածեալ Արտաշխսի
եթէ յորպիսի պատերազմէ յինչ փոքր
իրս զիշխան զօրաւարացն առաքեաց,
ծափս զծափի հարեալ ինքն զինքն
ըստգտանէր, եւ հրեշտակ անդէն ի
բանակն յԱկէ առաքէր, քանզի չեւ

եւս զԴաստամէո համարէր երթեալ, զի ասիցէ թէ մի մեկնեսցի ի զօրացնս։ Նա մինչ չեւ հասեալ էր ի տեղին յոր դէմ եղեալ գնայր, ի ճանապարհի եկն դիպեցաւ այնոցիկ՝ որ զՄօպիան ածէին։ Արդ թէպէտ եւ այնպիսի արագութեամբ ընդ միտ մտանէր նա թագաւորին, այլ նախարարքն նախանձէին ընդ նա մեծաւ խանդաւորութեամբ, զի տեսանէին եթէ զնա միայն առանձինն առաւել համարի թագաւորն քան զամենեսին. վասն այնորիկ իսկ եւ միաբանէին ամենեքեան զի բարձցեն զնա ի միջոյ։ Զայս ամենայն Պանդատես իշխան գանձապահացն արքայի, քանզի բարեկամ էր Դաստամեայ, ի գրի հարեալ մի ըստ միոջէ առաքէր առ նա։ Ազդ առնէր նմա, զի ի մեծ վտանգ հասանիցէ, եթէ մինչ ինքն յեգիպտացւոց աշխարհին հրամանատար զօրաց իցէ, ձախողիցէ ինչ նմա, զի այն սովորութիւն է, ասէ, թագաւորաց զի զվրիպական մարդկան գրեն, եւ զյաջողութիւնս իւրեանց բախտաւորութեան տան։ Որով դիւրաւ իսկ յօժարեն կորուսանել զայնոսիկ՝ ընդ որոց առաջնորդութեամբ իրքն ձա-

խողեցին։ Դու, տէ՛ր, վասն այնո-
րիկ ի մեծ վտանգի կաս, զի թշնա-
միք հակառակորդք են քո որոց լսէ
թագաւորն առաւել։ Զայն թուղթ
իբրեւ ի ձեռն առնոյր Դատամէս,
մինչ դեռ ի բանակն յԱ՛կէ եկեալ էր,
քանզի· գիտէր եթէ ճշմարտու-
թեամբ գրեալ են բանքն, դնէր ի
մտի օտարանալ յարքայէ։ Այլ չառ-
նէր ինչ որ իւրում հաւատարմու-
թեանն չվայելիցէ. զի զԱնդրոկղէս
մագնեսացի զօրաւար կարգէր զօրաց,
եւ ինքն իւրովք սեպհականօքն մե-
կնէր երթալ ի Դամրաց աշխարհն,
եւ զկից նմա զՊափղագոնիա գրա-
ւէր, եւ չհանէր ինչ ի վեր եթէ յինչ
միտս իցէ ընդ արքային։ Դաղատուկ
ընդ Արիոբարզանեայ բարեկամեալ
զօրաժողով լինէր, եւ զքաղաքսն ա-
մուրս իւրոց սեպհականացն տայր
պահել։

Զ. Այլ այս ամենայն վասն ձմե-
րական ժամանակին ոչ ինչ յաջո-
ղութեամբ ի գլուխ ելանէր։ Լուր ե-
հաս նմա եթէ պիսիդացիք զօրա-
ժողով լինին ի վերայ նորա, եւ ա-
ռեալ առաքէր զորդի իւր զԱրսիդէոս
զօրօք։ Ընկանէր պատանեակն ան-

դէն ի ճակատուն. Հայրն ինքնին անդր երթայր ոչ ինչ մեծաւ զօրութեամբ, եւ չառնէր ինչ յայտ թէ որպիսի ազդոյ վէրս առեալ էր, զի կամէր եթէ մինչ չեւ հասեալ իցէ իւրոցն համբաւ ձախողելոյ իրացն, հասցէ ի թշնամի անդր. զի մի իբրեւ զմահ որդւոյն իմանայցեն, վհատեալ անկանիցին զօրականքն ի զօրութենէ։ Ուրդ յոր դիմեալն էր, հասանէր. բանակ հարկանէր ի տեղւոջն, զի ոչ ի բազմութենէ հակառակորդացն շուրջպաշարեսցի եւ ոչ ինքըն նեղեալ արգելցի, առ ի չունելոյ կազմեալ եւ ճակատեալ զզօրսն ի պատերազմ։ Էր ընդ նմա Միթրոբարզանէս աներ նորա, իշխան առնեւձիոյ բազմութեանն. Նա իբրեւ անյոյս զիրս փեսային համարէր, փախուցեալ ի թշնամիս անկանէր։ Իբրեւ զայն լսէր Դատամէս, իմանայր զի եթէ ի վերայ հասանիցէ խուժանն, թէ այնպիսի կարեւոր բարեկամ եթող զնա, եւ ինքեանք այնուհետեւ զնորա խորհրդեան զհետ երթիցեն, վասն որոյ համբաւ հանէր եթէ իւր հրամանաւ Միթրոբարզանէս գնաց հատուածի պատճառաւ,

զի ընկալեալ ի թշնամեացն, դիւրաւ սատակեսցէ զնոսա ։ Սոյդ չէ, ասէ, արժան թողուլ զնա. այլ պարտ է զի ամենեքին զնորա զհետ գնայցեմք. զոր եթէ հաստատութեամբ առնիցեմք, թշնամիք չկարիցեն՝ ինչ ընդդէմ կալ, քանզի եւ ի ներքս իսկ ի պատնիշին եւ արտաքուստ պատերազմ ի դիմի հարկանիցի նոցա ։ Իբրեւ հաճոյ թուէր բանն, հանէր նա զզօրսն եւ զհետ մտանէր Միթրոբարզանեայ, իբրեւ մերձ էր նա հասանել ի թշնամիս, հրաման տայր Դատամէս փողանչանս հարկանել ձայն տալ մարտի ։ Պիսիդացւոց ընդ նորանշան իրսն զարմացեալ, կարծիս ի մտի դնէին եթէ հաստուածեալքն նենգութեամբ ինչ եւ հայթայթանօք առնիցեն, զի ի բուն իսկ բանակն մտեալ, աւելադոյն ինչ չարիս գործիցեն. եւ զառաջինն ի նոսա յարձակէին ։ Նոքա քանզի չգիտէին եթէ զինչ գործիցի, եւ հիմ զայն այնպէս առնիցեն, ստիպէին ընդդէմ նոցա մարտնչել, առ որս փախստեայ անկանէին, եւ լինել ի թերէ նոցա՝ զորս թողլինն ։ Եւ իբրեւ երկոքին կողմանքն չխնայէին ի

նոսա, վաղվաղակի ամենեքեան ի սուր սուսերի սատակէին։ Յետ այսորիկ Դոստամէս ի վերայ յարձակէր այլոց եւս պիսիդացւոց՝ որք ընդդէմ կային, վաղվաղակի խորտակէր զնոսա։ զփախուստէից զհետ մտեալ հալածէր, զբազումս կոտորէր, եւ անոյր զբանակ թշնամեաց։ Այսպիսի ինչ խորհրդով միանգամայն զմառնիչս հարկանէր, եւ զթշնամիսն խորտակէր, եւ զոր ի կորուստ խորամանկեալ էր, զայն ի փրկութիւն շըրջէր։ Արդ չգտանեմք ուրեք եթէ ուրուք ի զօրաւարացն այսպիսի ինչ իմաստուն խորհրդովք եւ տագնապաւ գործ գործեալ իցէ։

Է. ՍՈՒՌԵՆ յայսպիսի անէ ստարանայր Ակիսմեա որդի նորա անդրանիկ, անցանէր առ թագաւորն, եւ պատմէր նմա վասն հօրն ապստամբութեան։ Զայն իբրեւ լսէր թագաւորն, խռովէր, քանզի խելամուտ լինէր ի միտս իւր եթէ ընդ առն հըզօրի եւ քաջի հասանէ նմա կռիւ, որ զամենայն՝ զոր ինչ դնէր ի մտի, համարձակութեամբ հանէր ի գլուխ, եւ սովոր իսկ էր մինչ չեւ զմտաւ ինչ ածեալ, չհարկանել բուռն զիրաց ինչ,

եւ զՄուտոփրադատես ի Կապադովկիա տարաբեր: Եւ զի մի նա անդր կարիցէ մտանել, զխոխոմն՝ յորս դրունքն են կիղիկեցւոց աշխարհին, ջանայր ըմբռնել Դատամես. այլ չըկարէր փութանակի զօրս գումարել: Իբրեւ յայնմանէ վրիպէր, նովին գընդաւն զոր կազմեաց, այնպիսի վայրս ընտրէր, զի ոչ շուրջ պաշարեսցի ի թշնամեաց, եւ ոչ հակառակորդն անդր եւս անցանիցէ, եւ չանկանիցի ի նեղ յերկոցունց կողմանց. եւ եթէ բախել ինչ ընդ նմա պատերազմաւ կամիցի, մի բազմութիւն թըշնամեացն մեծ ինչ վնաս իւրում սակաւաւորութեանն գործիցէ:

Ը. ՕՐԷՍ ամենայն թէպէտ եւ տեսանէր Մուտոփրադատես, սակայն լաւ համարէր ճակատ տալ, քան թէ այնչափ պնդակազմ գնդաւ ի փախուստ դառնալ, կամ զայնչափ ժամանակս ի միում տեղւոջ դադարել: Ունէր նա ի բարբարոսաց քսան հազարս հեծելոց, եւ հարեւր հազար հետեւակաց՝ զոր Կարդական անուանեն, երիս հազարս պարսաւորաց անդստին ի նոցունց. դարձեալ ութ հազար գամիրացւոց, տասն հազար

․այոց, հինգ հազար պափղագոնա-ցւոց, տասն հազար փռիւգացւոց, հինգ հազար գիւղացւոց, ասպեն-դիացիս եւ պիսիդացիս իբր երիս հազարս, երկու հազարս կիլիկեցիս, եւ նոյնչափ կապատիանացւոց, եւ ա-մենայն զօրք՝ զոր ուստեք ուստեք ած ժողովեալ վարձկանութեամբ ի Յունաց աշխարհէն, երիս հազարս․ եւ բազմութիւն յոյժ էր վառելոյն։ Ընդդէմ այսչափ յաճախագունդ բա-նակի, ամենայն յոյս Դատամեայ յանձին իւրում էր եւ ի վայրին, զի անգամ եւ զքսաներորդ մասն զօրաց թշնամեաց չունէր։ Արդ ինու-սա վստահ եղեալ ընդդիմանէր, բա-զում հազարաւորս ի թշնամեայն անդէն ի տեղւոջն սատակէր, եւ յի-րոց զօրաց անտի ոչ ինչ աւելի քան զհազար այր անկանէին։ Նմին իւր յաւուրն երկրորդի նշան յաղթու-թեան կանգնէր ի նմին տեղւոջ՝ յո-րում յառաջնում աւուր կռուեցաւ։ Իբրեւ չու առնէր անտի, եւ զօրք նո-րա հանապազ խոնարհագոյն քան զթշնամեացն էին, յաղթէր նա յա-մենայն ճակատս զոր մղէր, զի չտայր երբեք պատերազմ մինչ չեւ էր ըղ-

թշնամին վայրայն նեղութեամբ արգելեալ։ Եւ զի տեղեակ էր այնց գաւառաց, եւ իմաստուն, խորագէտ խորհրդովք, ստէպ ստէպ զայն գործէր։ Սւտոփրադատէս իբրեւ տեսանէր եթէ պատերազմն մեծ եղեալն վնասու թագաւորին քան թըշնամեացն հասուցանէր, խրատ տայր հաւանեցուցանէր զԴատամէս զի բարեկամութեան դաշինս ընդ թագաւորին կռիցէ, եւ հաշտ լիցի ընդ նմա։ Նա թէպէտ եւ գիտէր եթէ ոչ ինչ հաստատուն բանքն իցեն, սակայն առնոյր յանձն, եւ ասէր հըրեշտակս առ Արտաշէս առաքել։ Այնգունակ ցածնոյր պատերազմն զոր մղէր արքայ ընդ Դատամեայ, եւ Սւտոփրադատէս մեկնէր երթայր ի Փռիւգիա։

Թ. ԻՍԿ թագաւորն քանզի անհնարին թշնամութեամբ էր ընդ Դատամեայ, իբրեւ ետես եթէ չմարթի զնա մարտիւ պատերազմաւ նուաճել, նենգ. գործեալ նմա ի բաց ի միջոյ բառնալ հնարէր։ Այլ նա բազում անգամ խուսափէր։ Որպէս իբրեւ ազդ լինէր նմա եթէ ոմանք ի նորա բարեկամացն խաբ գործեն նմա

նենգամիտք, քանզի որք ազդն արա-
րին թշնամիք էին, այնպէս համա-
րեցաւ եթէ ոչ հաւատալ ինչ եւ ոչ
անփոյթ առնել ի դէպ իցէ, այլ կա-
մէր զփորձ առնուլ զհանդէս անտա-
նել, եթէ ճշմարիտ ինչ արդեւք ի-
ցեն բանքն թէ սուտ։ Նմին իրի եր-
թայր ի ճանապարհն, զորմէ ասէին
եթէ դարան գործեալ իցէ նմա ան-
դէն. այլ ընտրէր զոմն՝ որ ամենե-
ւին իսկ նման էր իւր անդամովք
մարմնոյն, եւ տայր նմա զիւր հան-
դերձան, եւ հրամայէր նմա գնալ ի
տեղւոջն յորում ինքն սովոր էր գը-
նալ։ Նա ինքն զզինուորական զար-
դու զգեցեալ ի գունդ անձնապա-
հացն խառնէր, եւ ի չու անկեալ
երթայր։ Մերդ իբրեւ ամենայն բա-
նակն ի տեղին՝ յորում դարան գոր-
ծեալ էին, հասանէր, պատարեալ ի
զարդուէ անտի նենգագործացն, ե-
լեալ յարձակէին ի վերայ այնր՝ որ
կայրն փոխանակ նորա։ Յառաջա-
գոյն իսկ ասացեալ էր նոցա՝ ընդ ո-
րոց ճանապարհ առնէր, զի կազմ եւ
պատրաստ լինիցին զայն ինչ՝ զոր ին-
քըն գործիցէ, գործել։ Մերդ իբրեւ
ետես զդարանամուտսն, զի խուսն-

ընթացս արշաւեալ գային, նեղս ի նոսա արձակէր։ Զայն իբրեւ ամենեքին նոյնգունակ գործէին, մինչ չեւ երնոցա հասեալ յայն՝ յորոյ վերայ յարձակեցն կամէին, խոցեալ անկանէին։

Ժ. Որդ այսպիսի խորամանգ այր ի յետին ժամանակս խաբանօք Միթրիդատեայ, Արիոբարզանեայ որդւոյ, ըմբռնէր։ Զի նա խոստացաւ թագաւորին ապանանել զնա, թէ խոստասցի թագաւորն զի զոր ինչ եւ կամիցի համարձակ իցէ առանց պատժի գործել, եւ թէ տայցէ երդումն վասն նոցին իրաց աջովն ըստ Պարսից օրինակին։ Իբրեւ զայն երդումն ընդունէր ի թագաւորէն, կեղծաւորէր թշնամանեալ ընդ թագաւորին, զօրաժողով լինէր, եւ մինչ դեռ հեռին իսկ էր ընդ Դատամեայ դաշինս բարեկամութեան կռէր, եւ զնահանգն արքայինն նեղէր, զաւանան վկանդէր, եւ առնոյր աւար բազում. յաւարէ անտի մասն ինչ իւրոց սեպհականացն բաժանէր, եւ մասն ինչ առ Դատամէս առաքէր, նոյնգունակ եւ բազում աւանս ի ձեռս տայր նորա։ Զայս իբրեւ բազում ժամա-

նակս այսպէս գործէր, հաւանեցուցանէր զայրն եթէ անհաշտ պատերազմ ընդ թագաւորին կալաւ. բայց սակայն զի մի նենգութեան ինչ նմա կարծիս տայցէ, չխնդրէր խօսել ընդ նմա, եւ ոչ գալ յանդիման լինել միմեանց փութայր: Նոյնպէս հեռի ի միմեանց բարեկամեալ ընդ իրարս, թուէր ինձ եթէ ոչ առ միմեանս երախտեօք, այլ վասն հասարակաց թշնամութեան՝ զոր ընդ թագաւորին ունէին, միաբանեալ էին:

Ն.Ժ. Նա իբրեւ թուէր նմա այնպէս եթէ արար զանձն հաւատարիմ, ազդ առնէր նմա, եթէ արդ ժամ է յաջողագոյն զօր ժողովել, ելանել տալ մարտ պատերազմի ընդ թագաւորին, եւ եթէ նմա հաճոյ թուեսցի, յորում վայրի կամեսցի, եկեալ կայցէ խօսել ընդ միմեանս վասն իրացն այնոցիկ: Իբրեւ հաճոյ թուեցան իրքն, օր եւ տեղի սահմանէին, զի առ միմեանս եկեալ խօսիցին: Միթրիդատէս աւուրբք ինչ յառաջագոյն գայր յայն տեղի արամբք միով՝ յոր առաւել հաւատացեալն էր, եւ ի բազում տեղիս ուրոյն ուրոյն զատ ի միմեանց սուսե-

րըս թագուցանէր, եւ զտեղիսն խը-
նամով նշանակէր: Յետ ժամանա-
կեալ ժամադիր ժամուն երկոքին եւս
առաքէին լրտեսել զտեղին, եւ ըզ-
նոսին իսկ քննել, ապա գային յան-
դիման լինել միմեանց: Եւ իբրեւ
ժամանակ ինչ անդէն խօսս ընդ մի-
մեանս արկանէին, ելեալ երթայ-
ին ուրաքանչիւր ի միմեանց, եւ մինչ
դեռ հեռագոյն մեկնեալ էր Գոստա-
մէս, Միթրիդատէս մինչ չեւ յիւր-
սըն ժամանեալ, զի մի եւ կարծիս
անպատմ տայցէ առնուլ, ի նոյն տե-
ղի դառնայր, եւ անդէն ուր զսու-
սերն էր եդեալ, նստէր, որպէս թէ
յաշխատութենէն հանգչել կամիցի.
եւ զԳոստամէս տայր կոչել որպէս թէ
բանս ինչ ի խօսելն մոռացեալ իցէ:
Եւ ինքն անդէն զսուսերն՝ որ թա-
քուցեալ կայր, հանէր, եւ ի պա-
տենիցն մերկացեալ ծածկէր հան-
դերձիւն. եւ իբրեւ գայրն Գոստա-
մէս, Ի գնալ իմում, ասէ, տեսի վայ-
րըս ինչ որ հանդէպ մեր կայ; զի կա-
րի դիպօղ է բանակ հարկանելոյ: Զայն
տեղի իբրեւ մատամբ ցուցանէր նմա,
եւ նա դարձեալ հայէր, անդէն հար-
կանէր զնա սուսերաւն, եւ մինչ չեւ

ուրոնք էր ի վերայ դիմեալ, սպա-
նանէր։ Նոյնպէս այրն՝ որ զբազումս
խորհրդով կալաւ, եւ ոչ զոք նեն-
գութեամբ, ի կերպարանաւոր բա-
րեկամութենէ ըմբռնեցաւ։

# ՑԱՆԴԻՄԱՆՈՒԹԻՒՆ

Ա. ՅԱՌԱՋԱԲԱՆ: Բ. Եպամինոնդեայ մանկութիւն եւ երիտասարդութիւն: Գ. Քաջութիւն մտաց Եպամինոնդայ, եւ փոյթըն ունկնդրութեան եւ համբերութիւն աղքատութեան, եւ առատութիւն: Դ. Ճուժկալութեանն փորձ: Ե. Բանքն զոր Մենեկղեդայ առաց իմաստութեամբ: Զ. Բանքն ընդդէմ Կալիստրատեայ, մանաւանդ ընդդէմ ապարտացւոցն: Է. Զգորկանան մոռանալն. եւ աւելի քան զժամանակն ունել զիշխանութիւնն: Ը. Ամբաստանեալ՝ տայ պատասխանի: Թ. Առ Մանտինեաւ առանց պարտութեան մեռանի: Ժ. Ստգտեալ թէ ամուրի իցէ, ի բաց քերէ զնախատինսն. թէ սակայր ի քաղաքային յաղթութենէ. Թեբայեցւոց փառաւորութիւնն:

## ՀՆԳԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ

# ԵՊԱՄԻՆՈՆԴԱՍ

## ԹԵԲԱՑԻ

Ա. ԵՊԱՄԻՆՈՆԴԱՍ ուստր Պոլիմնեայ Թեբացի։ Մինչչեւ ինչ զորմանէ իցեմք գրել, զայս ինչ յառաջագոյն ընթերցանելեացն ի դէպ թուի ասել, եթէ մի զայլոց ինչ բարս յիւրեանց.սովորութիւնս համիցեն, եւ ոչ զայն ինչ՝ որ նոցայն թեթեւագոյնքն իցեն, եւ առ այլսն նոյնպիսի նոյնգունակ հաշուիցին։ Գիտեմք զի երաժիշտք ըստ մերոց բարոյից չվայելէ իշխանաց, եւ կաքաւել իսկ ի յոռութիւնս համարեալ է, այլ այն ամենայն Յունաց եւ հաճոյ եւ գովութեան արժանի թուի։ Արդ իբրեւ զկերպարանս իմն սովորութեան եւ զկարգաց Եպամինոնդեայ կամիցիմք ցուցանել, մեզ այսպէս թուի, եթէ չէ պարտ ինչ որ ի դէպ յայտնելոյ զկերպարանսն

իցէ, թողուլ։ Վասն որոյ նախ զազգէն ճառեսցուք, յետ այնորիկ թէ յորպիսի ինչ խրատու վայելեալ, եւ յորոց արդեւք վարժեցաւ. երրորդ անգամ զբարուցն եւ զհանճարոյն իմաստութենէ, եւ որ ինչ այլ ինչ արժանի յիշատակի իցեն. յետուստ ուրեմն զիրացն որ ի նմանէ գործեցան, զոր բազումք քան զայլոցն ամենեցուն քաջութիւնս նախամեծար համարին։

Բ. Նա՝ արդ ծնեալ ի հօրէ, զորմէ ասացաք, ի պատուական ազգէ, այլ աղքատ թողեալ անդաստանն ի նախնեացն, այնպէս վարժեցաւ, որպէս չիցէ ոք թեբացի առաւել հմուտ քան զնա։ Զի եւ քնար հարկանել եւ նուագել ի հնչիւն աղեաց ի Դիոնիսեայ ուսաւ, որոյ ոչ փոքր ինչ գովութիւն էր ի ճարտարապետս գուսանական արուեստին, քան զԴամոնն եւ զԼամպրոս, որոց անուանք ընդ բնաւ տարածեցան. երգել երգըս սրընգաւք եւ տաւղաւք յՈղիմպիոդորայ, կաքաւել ի Կաղլիփրոնէ։ Եւ փիղիսոփայութեան վարդապետ ունէր զԼիւսի տարենտոնացի պիւթագորեան. եւ այնպէս դեգերեալ կայր

ան նմա, զի մինչդեռ մանուկն էր,
զդժնդակ եւ զաստիկ ծերունին քան
զմանկտին զհաստատակկիցս իւր նախա-
մեծար յընտանութեան համարէր, եւ
ոչ արձակեաց ինչ զնա յիւրմէ, մինչ
չեւ այնչափ յուսման վարդապետու-
թեան քան զաշակերտակիցսն էր յա-
ռաջադէմ լեալ, զի դիւրաւ մարթէր
առնուլ ի միտ, թէ նոյնգունակ եւ
զայլովքն ամենեքումբք յամենայն
արուեստս ճարտարութեանց անցու-
ցանիցէ: Որդ այս ամենայն ըստ մե-
րոց սովորութեանց թեթեւագոյնք
իմն են, նա մանաւանդ եւ արհամարհ-
այլ ի Յունաց աշխարհին յառաջա-
գոյն բազում դրուատեաց եւ գովու-
թեան: Իբրեւ ի չափ հասեալ էր,
եւ հրահանգաց մարտից պատկա-
կայր, ոչ ինչ այնչափ զմարմնոյ զօ-
րութենէն փոյթ յանձին ունէր որ-
չափ թեթեւագնացութեան, քան-
զի զայն ըմբիշ նահատակացն անգ
համարէր, եւ զայս պատերազմի պի-
տոյից: Վասն այնորիկ վարժէր նա
մանաւանդ յընթանալն, եւ ի մրցել,
եւ յաղորել, մինչեւ ցայն վայր զի
կարօղ էր կանգուն կացեալ դիրկ-
ընդխառն լինել եւ կռուել: Իսկ ի

զէնսն առաւելագոյն փոյթ ի կիր արկանէր ։

Գ.. Առ այսպիսի մարմնոյ պնդութիւն բազմագոյն ոգւոցն բարութիւնք յաւելուին ։ Եւ էր իսկ պարկեշտ, իմաստուն, ցածուն, զժամանակն իմաստութեամբ արկանէր ի կիր, տեղեակ ճարտարութեան մարտից պատերազմաց, քաջ անհնարին. այնչափ ինչ զճշմարտութիւն սիրէր, զի անգամ ընդ խաղ չստէր ։ Նոյն դարձեալ ժուժկալ, գթած, համբերող զարմանալի, զի ոչ ժողովրդեան միայն թշնամանացն տանէր այլ եւ բարեկամացն ։ Առաւել զծածուկն յայտնեալս նմա թաքուցանէր, որ երբեմն քան զճարտարն խօսել առաւել օգուտ է. փոյթ էր նա ի լսել, զի համարէր այնպէս եթէ այնու դիւրագոյն ուսանիցի ։ Նմին իրի իբրեւ ի ժողովսն գայր, յորում վասն քաղաքին գուպարած եղեալ մաքառէին, կամ յաղագս փիլիսոփայութեան բան ճառէր, չգնայր երբեք ի բաց մինչ չեւ էր յանդ ելեալ բանն ։ Աղքատութեան այնչափ դիւրաւ համբերէր, զի իսպասաւորութենէ անտի քաղաքին ոչ այլ ինչ քան

զփառսն առ։ Ոչ զբարեկամաց ին-
չըս յանձին կալեալ ընդունել առ ի
դարման անձին. եւ զխնամսն՝ զոր
ընդ նա ունէին բարեկամքն բազում
անգամ այնպէս ի կիր արկանէր առ
ի զայլս ի՝ ըկանաց ապրեցուցա-
նելոյ, որպէս զի մարթէր այնպէս
ինչ համարել թէ ամենայն ինչ հա-
սարակաց էր նմա եւ բարեկամացն։
Զի իբրեւ ոմն յիւրոց քաղաքացեաց
ի թշնամեացն ըմբռնեալ լինէր, կամ
թէ բարեկամի ուրուք դուստր կոյս ի
չափ հասեալ, առ տնանկութեան
չկարէր առն լինել, նա զբարեկամսն
ի մի վայր ժողովեալ, ըստ անցնիւր
կարի հրամայէր թէ որչափ ինչ իւ-
րաքանչիւր ոք ինոցանէ տայցէ։ Եւ
իբրեւ զգլուխն գումարէր, մինչ չեւ
առեալ զինչսն, զնա որ խնդրէրն, ի
ներքս մուծեալ կացուցանէր առաջի
ժողովելոցն, եւ տայր նոցին իսկ հա-
մարել նմա. որպէս զի նա յոր իրքն
հասանէին, գիտիցէ թէ որչափ ինչ
միում միում իւրաքանչիւր պարտիցի։

Պ. Մարդ նորա ժուժկալութեան
հանդէս լինէր ի Պիոմեդոնտայ կիւ-
զիկենացւոյ։ Զի սա աղաչանօք Մր-
տաշխսի յանձին կալեալ զԼապամինոն-

դաս կաշառաբեկ առնել։ Նա եկն
նա ի Թեբայս բազում կշռով ոսկւոյ,
եւ զՄ'իկիւթոս պատանեակ յհինգ-
քանքարովք յիւր կամսն ած ձգեաց,
զոր յայնժամ սիրէրն յոյժ Եպամի-
նոնդաս, Մ'իկիւթոս եկն խօսել ընդ
Եպամինոնդայ, եւ զպատճառս Դիո-
մեդոնտեայ գալստեանն հան նմա ի
վեր։ Նոյն Դիոմեդոնտայ իսկ ա-
ռաջի Չեն ինչ, ասէ, ընչից պէտք, զի
թէ՛ զայն թագաւորն կամիցի, որ ինչ
թեբայցւոց օգուտ է, ձրի իսկ արարից.
ապ եթէ զնորին հակառակսն խըն-
դրիցէ, չեն նորա բաւական ոսկի եւ
արծաթ։ Զի զամենայն աշխարհաց
մեծութիւն չկամիմ ընդունել ընդ
հայրենի աշխարհին գթոյ։ Զզար-
մանամ ընդ քեզ, զի փորձեցեր զիս
որ անծանօթս էի, եւ զի քեզ նման
համարեցար. ներեմ քեզ, բայց փու-
թանակի ել գնա աստի, զի մի զայլ-
սըն զեղծուցանիցես, յորժամ չեղե-
րըդ ինձ գամագիտ։ Եւ դու, Մ'ի-
կիւթէ, դարձո նմա զարծաթն, եւ
թէ զայդ վաղվաղակի ոչ արասցես,
ես զքեզ մատնեցից դատաւորի։ Ի-
բրեւ աղաչէր զնա Դիոմեդոն, զի ըզ-
գուշութեամբ, ելեալ երթիցէ, եւ

զամենայն ինչ զխուր զոր բերեալն էր, մարթիցի ի բաց տանել. Զայդ, ասէ, արարից, բայց ոչ եթէ քո ինչ աղագաւ, այլ իմ վասն, զի մի իբրեւ զարծաթդ ի բաց ոք ի քէն հանցէ, ասիցէ ոք եթէ առ իս եհաս յափշտակեալ, զոր ի մատուցանելն չկամեցայ ընդունել: Եւ իբրեւ հարցանէր ցնա թէ Ո՛ւր ուրեք կամիցի գնալ, եւ նա տայր պատասխանի եթէ յԱթէնս, տայր պահապանս զի զգուշութեամբ անդր հասանիցէ. Եւ ոչ իսկ զայդ բաւական համարէր, այլ ի ձեռն Քաբրեայ աթենացւոյ՝ զորմէ ի վերադոյնսն ճառեցաք, տայր նմա անվնաս ի նաւ ելանել: Ժուժկալութեանն այս ինչ վկայութիւն շատ լիցի: Բազում այլ եւս ի մէջ բերել կարէաք, այլ պարտ է ի չափուն կալ, զի ի միում աստ մատենի զվարս հոյակապ արանց բազմաց ի մտի եդաք փակել, զորոց զկեանս ուրոյն զատ ի միմեանց բազում բեւրս բիւրուց բանից տողեալ, բազում գըրագիրք նախ քան զմեզ պատմեցին:

Ե. ՊԵՐՉԵՍԱ. խօսօղ իսկ էր, այնչափ զի ոչ ոք ի Թեբացւոց հաւասար էր նմա ճարտարաբան լեզուի խօսս-

ղութեամբ. եւ զոր օրինակ յօդապատ զարդարագիր բանիւք յարմարէր նա զճառս մեծամծիգս երկայնատարածս, նոյնպէս վայելուչս համառօտ զպատասխանիսն հատանէր։ Եւ էր նմա չարախօս Մենեկղիդէս ոմն, անդստին իսկ ի Թեբացւոց քաղաքէն, եւ հակառակորդ ի տեսչութեան քաղաքին, որ վարժեալ եւ կրթեալ էր ի ճարտարխօսութեան որչափ ինչ Թեբացւոցն մարթ իցէ։ Քանզի այս ազգ առաւել հարուստ է մարմնոյ անդամովք, քան թէ մտօք եւ իմաստութեամբ։ Նա իբրեւ տեսանէր զԵպամինոնդաս զի առաճէ յիրս պատերազմի, սովոր էր ընդ Թեբացիս յորդորել, զի զխաղաղութիւն նախամեծար քան զպատերազմն համարիցին, զի մի այնմ զօրավարի կարօտ լինիցին։ Նա տայր պատասխանի եւ ասէր, Խաբես, ասէ, բանիւք զքո տոհմային քաղաքացիսն, զի զնոսա ի պատերազմէ դարձուցանես, եւ խաղաղութեան անուամբ ծառայութեան առիթ լինիս. զի խաղաղութիւն պատերազմաւ ծնանի, եւ որք զհանապազորդ խաղաղութիւնն կամիցին ըմբոշ-

խնել, պարտին կիրթս ի պատերազ-
մունս լինել: Նմին իրի եթէ իշխա-
նքս Յունաց աշխարհին լինել կամի-
ցիք, պարտ է ձեզ բանակս արկա-
նել ի կիր, եւ ոչ մրցութեան հրա-
հանգս: Դարձեալ յորժամ Նայն Մե-
նեկղէս նմա մեղադիր լինէր, զի
որդեակս չունէր, եւ զի կին չէր ա-
ծեալ, մանաւանդ զժպրհութիւնն
կշտամբէր, զի համարեցի զանձնէ
թէ պարծանաց Ագամեմնոնեայ պա-
տերազմին եհաս. Նա Դագարեա,
ասէ, ով Մենեկղէ, վասն կնոջե-
պերել զիս. քանզի ոչ ուրուք խրա-
տու այնպէս չանսամ յիրիդ յայդմիկ
որպէս քումդ: Զի եին զՄենեկղէ-
դեայ կարծիք շնութեան: Եւ զի
համարիս թէ ես ընդ Ագամեմնոնի
նախանձ բերել կամիցիմ, խաբ գոր-
ծես: Քանզի նա ընդ ամենայն հա-
մօրէն Յոյնս հազիւ զտաան առ մի
քաղաք առ. եւ ես նմին հակառակ
միայն մերոյ քաղաքին ժողովրդովք
ի միում աւուր զհամօրէն Յունաց
աշխարհն, զղակեդմոնացիս փախըս-
տեայ հանեալ, ազատեցի:

Զ. ՆՈՅՆ յորժամ ի ժողով ար-
կադացուոցն գայր, խնդրել զի բարե-

կամութեան դաշինս ընդ Թեբացւոց եւ արգիացւոց կուիցեն, եւ ըզնորին Հակառակն Կաղիստրատոս աթենացւոց Հրեշտակն՝ որ ճարտարախօս քան զամենեսեան էր ի ժամանակին, խնդրէր զի մանաւանդ ատտիկեցւոց բարեկամութեան ըզհետ երթիցեն. եւ ի խօսսն իւրում բազում բանս նախատանաց Հակառակ Թեբացւոց եւ արգիացւոց ճառեալ, զայս եւս Թշնամանս դնէր եթէ պարտ է արկադացւոց ի միտ առնուլ թէ որպիսի քաղաքացիս իւրաքանչիւր քաղաք ծնաւ, եւ ի նոցանէ մերձ է նոցա եւ զայլոցն զմտաւ ածել: Արդ յարգիացւոց անտի Որեստէս եւ Աղկմէոն զմայր իւրեանց սպանին. եւ ի Թեբացւոցն Եդիպոս որ իբրեւ զիւր հայրն եսպան, որդիս ի մօրէն ծնաւ: Եւ ի տանն Եպամինոնդեայ պատասխանի, յետ զայլոցն ամենեցունց մի ըստ միոջէ ճառելոյ, իբրեւ յայն երկուս պարսաւանսն եկն, Զարմանամ, ասէ, ընդ անմտութիւն հռետորին ատտիկեցւոյ. զի չած զմտաւ եթէ անմեղ ծնան նոքա, եւ յետ զայնպիսի ոճիրս ի քաղաքին գործելոյ, իբրեւ յաշխարհէն

մերժէին, աթենացիք ընկալան ըզ-
նոսա: Այլ առաւել ճարտարխօսու-
թեամբ պայծառանայր ի Սպար-
տիա, իբրեւ գայր անդրէն հրեշտա-
կութեամբ յառաջ քան զղեւկտրի-
ական պատերազմն: Նոյն իբրեւ գայ-
ին ժողովէին հրեշտակք ամենեցուն
նիզակակից բարեկամաց, նա առա-
ջի յաճախագոյն պատգամաւորացն
ժողովոյ, այնպէս զղակեդմոնացւոցն
բռնակալութիւն յանդիմանէր, զի ոչ
ինչ ընդհատ ի ղեւկտրիական պա-
տերազմէն բանիւն այնուիկ եհար
զզօրութիւնս նոցա: Զի որ յետոյ
երեւեցաւ, զայն յայնժամ հան ի
գլուխ, զի առանց թիկանց օգնա-
կանութեան բարեկամացն իւրեանց ղա-
կեդմոնացիք:

Է. Թու համբերօղ էր, եւ իւրոց
քաղաքացեաց թշնամանացն տանէր,
քանզի ընդդէմ հայրենի աշխարհին
զայրանալ անարժան իմն համարէր,
վկայութիւն այն է, զի իբրեւ քա-
ղաքացիքն առ նախանձու ի վերայ
զօրացն զնա չկամէին կացուցանել,
եւ ընտրէր ոմն զօրաւար խամ եւ ան-
տեղեակ պատերազմի, եւ ամենայն
բազմութիւն զօրացն յայն հասանէ-

րին, զի ամենեքին երկնչէին վասն փրկութեան, քանզի յանձուկս վայրացն փակեալ պատեալ պաշարեալ կային ի թշնամեացն, այնու հետեւ Եպամինոնդեայ օգնականութեանն ակսան ցանկալ: Եւ էր նա յայնժամ լոկ յիշխանութենէ ի զօրացն համարի: Եւ իբրեւ խնդրէին ի նմանէ օգնականութիւն, չած ինչ զմտաւ զնախատինսն, եւ զզօրսն ի պաշարմանէ ապրեցուցեալ, ողջանդամ ի քաղաքն հասուցանէր: Զայս ոչ մի անգամ եւեթ, այլ բազում անգամ գործեաց: Եւ աւելի երեւելի գործ գործէր, իբրեւ ի Պեղոպոնեսոսն ածէր զզօրսն ընդդէմ ղակեդմոնացւոց, եւ էին նորա ընկերք երկու, յորոց մի Պեղոպիդասն էր այր զօրաւոր եւ քաջ: Նոյն իբրեւ հակառակորդացն յանցանօք ամենեքին ընդամենեսին նոսա նախանձ բերէին, եւ նմին իրի իսկ բառնային ի նոցանէ զիշխանութիւնն, եւ փոխանակ նոցա այլ հազարապետք զօրաց կային, Եպամինոնդաս ամենայն հրամանաց չհնազանդէր, եւ զընկերսն ած ի հաւանն զի զնոյն գործիցեն, եւ զպատերազմն զոր սկսեալն էր, մղէր: Զի

կորդւքն, յուրաստ կայր. զամենայն՝ որ ինչ ընկերացն ասացեալ էր, խոստացաւ թէ այդպէս իցէ, եւ ոչ իսկ ընդդէմ դառնայր, զի մի ի պատիժսն՝ զոր օրէնք կարգէին, մատնիցէ. այլ զայս մի ինչ ի նոցանէ խնդրէր, զի ի վնասու նորա զայս ինչ գրիցեն, եթէ Նպամինոնդաս ի Թեբայեցւոց ի մահ դատապարտեցաւ, զի զնոսա առիպեաց առ Ղեւկտրեաւ զակեդմոնացւոց գեր ի վերոյ լինել, ընդ որոց ոչ ոք ի բէովտիացւոց նախ քան զնա զօրաւարութիւն իշխեաց ի ճակատ մտանել. եւ զի միով կռուով ոչ միայն զԹեբայս ի կործանմանէն ապրեցոյց, այլ եւ զհամօրէն իսկ զամենայն Յունաց աշխարհ յազատութիւն հան, եւ յայն իսկ ած հատոյց զերկոսին կողմանսն, զի Թեբայեցիք ընդ ապարտացւոց աշխարհին կըռուիցին, եւ զակեդմոնացիք շատ համարիցին եթէ միայն ապրել մարթասցեն. եւ ոչ ի պատերազմէ դադարեաց, մինչ չեւ էր զՄեսենա շինեալ, եւ զնոցա քաղաքն պատեալ պաշարեալ: Իբրեւ զայս խօսեցաւ, ամենեքին զքրքիջ բարձին ուրախութեամբ, եւ ոչ ոք ի դատաւորաց հա-

մարձակէր վճիռ բերել: Սոյնգունակ ի դատաստանէ մահու մեծաշուք փառաւորութեամբ ելեալ երթայր:

Թ. Իսկ ի վերջին աւուրս իւր զօրաւարէր նա զօրաց առ Մանտինեաւ, եւ իբրեւ ճակատ առ ճակատ յարդարեալ յանդգնագոյնս գոռայր ընդ թշնամիսն, ծանուցեալ զնա ղակեդմոնացւոցն, քանզի ի նորա միայնոյ սատակմանն զաշխարհին փրկութիւն եդեալ համարէին, միահամուռ ամենեքին ի վերայ միոյն յարձակէին. անհնարին կոտորած լինէր եւ բազումք անկանէին, եւ չկացին իսկ յետս մինչ չեւ զնոյն իսկ զԵպամինոնդաս՝ որ բազում արութեամբ քաջութեամբ մարտ եդեալ կռուէր, տեսին թէ ի հեռաստանէ սլաքաւ հարեալ կործանեցաւ: Վասն նորին անկանելոյ հեղգագոյն լինէին բէովտացիք սակաւիկ մի, այլ ի պատերազմէն չկային յետս մինչ չեւ զհակառակորդսն խորտակեալ: Այլ Եպամինոնդաս իբրեւ տեսանէր եթէ մահացու վէրս ընկալաւ, եւ դարձեալ զի եթէ զերկաթն՝ որ ի նիզակաբնէն ի մարմնի անդ մնացեալ էր, ի դուրս կորզիցէ, վաղվաղակի թափիցէ զո-

դիւն, ցայն վայր եթող անդէն զեր-
կաթն, մինչեւ պատմեցաւ նմա թէ
բեռնախաղացիք յաղթեցին: Արդ եւ զայն
լուեր, Ահա իսկ, ասէ, կեցի, զի
առանց պարտութեան մեռանիմ:
Յայնժամ զերկաթն ի բաց ձգեալ,
վաղվաղակի թափեաց հանել զոգին:

Ժ. Սա չառ երբեք կին. եւ իբրեւ
յանդիմանեալ վասն նորին ի Պեղո-
պիդեայ՝ որոյ որդի մի էր վատանուն
վատանշան, եւ ասէր թէ Յայսմիկ
ոչ բարւոք խորհեցար ի վերայ աշ-
խարհին, զի որդիս ոչ թողեր. Նա
տայր անդրէն պատասխանի, Տես,
ասէ, մի դուցէ դու չար եւս ինչ
խորհիցիս, որ զայդպիսի ծնունդ
թողուցես յաշխարհին: Նմա չէ մարթ
եթէ պակասիցի իմ զարմ եւ զաւակ,
զի թողում ես զԼեւկտրական պա-
տերազմն՝ որ յինէն ծնաւ, որ ոչ մի-
այն քան զիս երկայնակեաց լինիցի,
այլ հարկ է զի անմահ իցէ: Ի ժա-
մանակի յորժամ ընդ Պեղոպիդեայ
առաջնորդութեամբ վտարեալքն
կալան զԹեբայս, եւ զԼակեդմոնա-
ցւոց պահապանսն ի դղեկէն մեր-
ժեցին, Եպամինոնդաս մինչ դեռ
քաղաքացւոց կառոյց լինէր, կայր

ի տան. զի ոչ չարացն պաշտպանել կամէր, եւ ոչ կռուել ընդ նոսա, զի մի զծեռսն յարեան իւրոցն Թաթաւեսցէ. զի զամենայն յաղԹուԹիւն՝ որ ընդդէմ քաղաքացւոցն լինիցի, վնասակար համարէր։ Այղ յետոյ յորժամ առ կաղմեալ սկիզբն առ ընդ դակեդմոնացիս կռիւն, ինքն յառաջեալ եկաց ի ճակատուն։ Զառբս զառաքինուԹեանց եւ զվարուց շատ եւ բաւական իցեն ասացեալքս, եԹէ զայս եւս ի նոյնս յաւելից, յորմէ ոչ ոք յուրաստ իցէ, եԹէ Թեբացիք եւ նախ քան զնորա ծնունդն եւ յետ նորա մահուն հանապազ այլոց տէրուԹեան հպատակ կացին. եւ զնորին հակառակն իբրեւ նա առաջնորդ կայր քաղաքին, նորա համօրէն Յունաց աշխարհին իշխանք լինէին։ Աստատին մերձ է ի միտ առնուլ, եԹէ մի ոք առանձինն քան զհամօրէն քաղաքն առաւել էր։

# ՑԱՆԴԻՄԱՆՈՒԹԻՒՆ

Ա. ՊԵՂՈՊԻԴԱՍ, յետ կազմելոյ ամբին ատենից, յաքսորս երթայ: Բ. Երկոտասանիւք հանդերձ ի Թեբացւոց քաղաքն դառնայ: Գ. Միւսանգամ հաստատեաց զազատութիւնն սպանեալ զբռնաւորսն, եւ զապարտացւոց պահապանսն ի միջնաբերդէն հան: Դ. Առաջին արշաւանն առանձինն էր Պեղոպիդայ, իսկ միւսն հասարակ նմա եւ Եպամինոնդայ, որպէս եւ այլք ամենեքին: Ե. Զախողեալ անկանի ի պատերազմին:

## ՎԵՇՏԱՍԱՆԵՐՈՐԴ

# Պ Ե Ղ Ո Պ Ի Դ Ա Ս

## Թ Ե Բ Ա Ց Ի

Ա. ՊԵՂՈՊԻԴԱՍ *Թեբացի առա-
ւել ի պատմութիւնս ծանօթ է քան
թէ ի խառնաղանձ ռամկին։ Ի վե-
րան մտեալ կամ թէ զո՛ր օրինակ ար-
դեւք զառաքինութիւնսն յանդիման
կացուցանիցեմ. զի կասկածեմ ե-
թէ սկսանիցիմ մանր մի ըստ միոջէ
զնորա իրսն հարկանել ի գիր, թը-
ւիցիմ այնպէս եթէ ոչ զնորա վարս
ինչ պատմել, այլ զպատմութիւն իմն
կամիցիմ գրել. եւ եթէ զգլխա-
ւորօքն եւեթ զայցեմ, գուցէ որոց
յունարէն դպրութեան չիցեն հմուտ,
ոչ՛ինչ լուսաւորագոյն երեւեսցի, ե-
թէ որպիսի ոք լեալ իցէ այրն։ Նմին
իրի յերկոսին եւս փութացայց ի-
մովսանն, եւ մտաց յագեցոյն եւ ան-
գիտութեան ընթերցողացն դար-
ման տանիցիմ։ Փեբիդաս ղակեդ-*

մնացի իբրեւ տանէր զզօրսն յՈղին-
թոս, եւ ընդ Թեբաս ճանապարհ
առնէր, զամուր քաղաքին՝ որ ա-
նուանեալ կոչի Կադմէա, ունէր թե-
լադրութեամբ սակաւուց ի թեբա-
ցւոցն, որք առ ի դիւրագոյն հակա-
ռակ ընդդիմակաց կողմանն կալոյ,
ձեռնտու ղակոնացւոց լինէին, եւ
զայդ իւր իսկ խորհրդով եւ ոչ հա-
սարակաց խրատու գործէր։ Իբրեւ
այն գործեցաւ, ղակեդմոնացիք զնա
ի զօրաւարութենէ զօրացն ի բաց հա-
նէին, եւ ընչից տոյժս եւ պատիժս ի
վերայ ածէին։ Այլ ոչ եթէ վասն
այնորիկ զամուրն ինչ թեբացւոց
դարձուցանէին. զի յետ միանգամ
թշնամութեանն ի միջի գրգռելոյ,
լաւագոյն համարէին թէ պաշարեալ
կալցեն, քան եթէ յազատութիւն
ելանիցեն։ Քանզի յետ պեղոպոնե-
սական մարտին եւ աթենացւոց ի
պարտութիւն մատնելոյ, համարէին
թէ ընդ թեբայիս է նոցա այնուհե-
տեւ կռիւ, եւ կարծէին թէ նոքա
միայն իշխիցեն դիմադարձ լինել։
Զայս ինչ ի մտի եդեալ, իւրեանց
բարեկամաց զգլխաւոր իշխանու-
թիւնսն տային, եւ ի միւսոյ կողման

առաջնորդացն զկէսս սպանանէին, եւ զայլս ի վտարանդիկս հանեալ մերժէին. ընդ որս եւ Պեղոպիդաս այս՝ զորմէ բուռն հարեալս եմ գրել, մերժեալ յաշխարհէն անկանէր:

Ի. Սոսա ամենեքին գրեթէ երթեալ անկանէին յԱթէնս, ոչ զի ի դատարկութիւն ինչ հատանիցին, այլ զի որով իւիք եւ բախտն պատահենիցի, ի մերձաւոր վայրաց, նովին զհայրենի գաւառն միւսանգամ ըմբռնել ջանայցեն: Արդ իբրեւ թըւէր նոցա դէպ ժամանակ զիրսն ի գլուխ հանելոյ, հասարակ ընդ այնոսիկ՝ որ ի Թեբացւոց աշխարհին զայն խորհէին, օր եւ ժամ սահմանէին գալ նկուն առնել զթշնամիս, եւ զքաղաքն ազատել. եւ զայն օր ընտրէին իւրեանց, յորում մեծամեծք իշխանացն սովոր էին ուտել եւ ըմպել ի միասին: Բազում անգամ իրք մեծամեծք ոչ ինչ հարստաբուռն զօրօք ի գլուխ ելեալ կատարեցան, այլ ոչ երբեք ուրեք յայնպիսի սակաւաւորաց այնչափ զօրութիւն բեկաւ: Զի երկոտասան այր երիտասարդ ի մի վայր հաւաքեալ միաբանեցին, յայնցանէ՝ որ յաքսորս առաքեցան, ի-

ցըն կարգէ թուիցի, եթէ առաւել
համարձակութիւն որչափ մնաս գոր-
ծիցէ ։ Քանզի վաղվաղակի եհաս
յականջս դատաւորացն թեբայեցւոցն
եթէ վտարեալքն եկին մաքն ի քա-
ղաքն. այլ նոքա, քանզի ընդ գինիս
մտեալ էին, եւ ի խրախուսս հա-
տեալ, այնչափ առ ոչինչ դրեցին,
զի եւ ոչ հարցն եւ խնդիր առնել զայն-
պիսի իրաց փոյթ յանձին կալան։ Եւ
մեւս եւս իմն ինչ յաւելաւ, որ ա-
ռաւել զնոցա անհոգութիւն յայտ
առնիցէ. զի թուղթ եհաս յաթե-
նացւոց քաղաքէ, յԱրքեայ քրմա-
պետէ առ մի ոք ի նոցունց Արքիաս
անուն, որ յայնժամ զգլխաւորու-
թիւն իշխանութեան ի թեբայեցւոց
քաղաքին ունէր. ի նմա ոճով մի
ըստ միոջէ գրեալ կային անցք վտա-
րելոցն ի քաղաքէն ելանելոյ։ Զայն
թուղթ իբրեւ տային նմա, նա քան-
զի բազմեալ կայր ի գինըմպելիսն,
զթուղթն որպէս կնքեալն էր, ընդ
բարձիւն արկեալ, ի վաղուի օրն,
ասէ, թողում զգաստիկ իրս։ Արդ
ամենեքին նոքա, արբեալք գինե-
զէնք եւ սխաղակեալք, մինչ բա-
զում ժամք գիշերոյն անցեալ էին,

ի փառաբելոց անտի սպանման. եւ Պեղոպիդաս առաջնորդ էր։ Յետ այսց իրաց կատարելոց, իբրեւ խուժանն կոչեցաւ զէն առնուլ եւ կռուել ի վերայ ազատութեանն, եւ ոչ միայն որք ի քաղաքին էին, այլ եւ յամենայն կողմանց յարուարձանեայ տեղեաց միախուռն ընթանային, բզզակերդմնացուոց զօրսն ի միջնաբերդէ անտի մերժէին, զաշխարհն ի պաշարմանէ ապրեցուցանէին, եւ զոմանս յառաջնորդաց զԼակդմէայն առնլոյ սպանանէին, եւ զոմանս ըստ աշխարհ հանէին։

Դ. ԻԲՐԵՒ նոքա զաղմկաւն էին, եւ ընդ տոհմային քաղաքացիսն մարտ եդեալ կռուէին, Եպամինոնդաս, որպէս ի վերագոյնն ճառեցաք, ի տան համդարտեալ կայր։ Վասն որոյ փառաւորութիւն Թեբայեցւոց քաղաքին ազատութեան առանձինն է Պեղոպիդեայ, իսկ այլն ամենայն հասարակ ընդ Եպամինոնդայ։ Զի եւ ի ղեւկտրականն մարտին, յորում իշխան զօրագլուխ կայր Եպամինոնդաս, սա զօրաւարէր ընտիր զօրուն որ զառաջինն զլակոնացւոց ճակատըն տապաստ արկ։ Դարձեալ եւ

յայլ ամենայն վիշտսն մօտ էր. որպէս յորժամ ընդ սպարտացւոց քաղաքին պատերազմէր, զմեւս թեւն ունէր. եւ զի զԱթենաս վաղվաղակի դարձուցեն, երթայր հրեշտակութեամբ ի Պարսս։ Եւ եղեւ սա երկրորդ ի դլխաւորաց Թեբացւոց քաղաքին. այլ այնպէս զի Եպամինոնդեայ մերձաւոր էր։

Ե. Ար։ Եւ ընդ չաջողութեանց մարտ եղեալ կռուէր. զի եւ իսկըզբանն, որպէս ցուցաք, վտարանդի յաշխարհէն մերժեցաւ. եւ իբրեւ ըզթեսաղացւոց աշխարհն ընդ Թեբացւոց իշխանութեամբ արկանել կամէր եւ հրեշտակութեան օրինօք յապահովս զանձն համարէր, զի սովորութիւն է հրեշտակութեան օրինաց սուրբս յամենայն ազգս լինել, յԱղէքսանդրեայ փերեցւոյ բըռնաւորէ, ընդ Իսմենեայ ձերբակալ լինեալ ի կապանս արկաւ։ Զնա Եպամինոնդաս ապրեցոյց, ի մարտ պատերազմի ընդ Աղէքսանդրի գըրգռեալ։ Այլ յետ այսպիսի իրաց նա չկարէր հաշտ լինել ընդ նմա՝ յորմէ բռնադատեցաւ. վասն որոյ հաւանեցոյց զԹեբայեցիս, զի յօգնականու-

թիւն թեւառազացուացն եղթեալ, ըղ-
բանաւորան մեքենայեն։ Այլ իբրեւ
զխաւորութիւն մարտին նմա յանձն
եղեւ, եւ անդէն ի տեղին գայր զօ-
րացն, այն ինչ տեսեալ զթշնամին,
ընդխառանէր։ Յայնմ մարտի դէտա-
կըն ի վեր ամբառնայր Պեղոպիդաս,
եւ իբրեւ տեսանէր զԱ՛ղեքսանդրոս,
ցասմամբ վառեալ, մորակ ի կուշտ
արարեալ երիվարին, ի նա խաղայր,
եւ հեռացեալ յիւրոցն, հարեալ ի
նեզակէ անկանէր։ Եւ այս դէպ եղեւ
յետ յաղթութեանն յաջողելոյ. զի
վատթարեալ խոյ էին զօրք բռնա-
ւորաց։ Իբրեւ այս իրք այսպէս կա-
տարէին, յամենայն քաղաքաց Թե-
տաղացւոց աշխարհին, Պեղոպիդեայ
որ սպանաւն, պսակս ոսկիս տային,
եւ պատկերս պղնձիս կանգնէին, եւ
նորա որդւոց բազում անդաստանս
պարգեւէին։

# ՑԱՆԴԻՄԱՆՈՒԹԻՒՆ

Ա. ԱԳԵՍԻՂԱՒՈՍ վասն թագաւորութեան կռուի ընդ եղբօրն որդւոյ։ Բ. Ըղդաշինսն որ ընդ Տիսափեռնի յԱսիա կռեցան պահէ։ Գ. Զփախուստական ասար Հարկանէ. յԵփեսոս զզօրականն կրթէ. այլուր երթայ, եւ այլուր կեղծաւորի դնալ։ Դ. Կոչեցեալ ի վերայ բէովտացւոցն առ Կորոնեաւ յաղթէ, եւ յայնոսիկ որ ի մեհեանսն ապաստանէին խնայէ։ Ե. Ի լինել պատերազմի զկորընթացւոց քաղաքաւ, զձեռս կարճէ առ ի չքանդելոյ զքաղաքն։ Զ. Զառնու յանձն ի ղեւկտրիական պատերազմն երթալ. զսպարտացւոց քաղաքըն որում պատերազմ ի դիմի հարկանէր ի թեբացւոց, հնարիւք պահէ։ Է. Ընչիւք դիւրութիւն առնէ աշխարհին. զպատարագսն որ առաքեցան նմա, հասարակաց առնէ։ Ը. Քանզի տգեղ էր մարմնովն եւ հասարակաց խառնաղանձն ապա ի կիր արկանէր, ի բարբարոսաց անտի անդոսնեցաւ. ի Մենելայ նաւահանգստին մեռաւ։

## ԵՒԹՆԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ

# ԱԳԵՍԻԼԱՒՈՍ

## ԼԱԿԵԴՄՈՆԱՑԻ

Ա. ԱԳԵՍԻԼԱՒՈՍ *լակեդմոնացի որպէս յայլոցն մատենագրաց, նոյնպէս բազմապատիկ ի Քսենոփոնտեայ սոկրատացւոյ դրուատեալ գովեցաւ. զի ընտանութեամբ էր ընդ նմա: Սա զառաջինն վասն թագաւորութեան ընդ Լէոտիքիդեայ, եղբօրն որդւոյ, մաքառէր: Սովորութիւն է ի նախնեաց անտի լակեդմոնացւոց, զի երկուս ունիցին հանապազ թագաւորս, անուամբ մանաւանդ քան ճոխութեամբ, յերկուց տոհմից Պրոկղեայ եւ Եւրիսթենեայ որք նախ քան զամենայն ի զաւակէ անտի Հերակղի սպարտացւոց թագաւորք կացին: Ի սոցանէ երկոցունց չէր օրէն ի միոջէ անտի փոխանակ միւսոյն ընտրել զոք, եւ յերկոսեանն իսկ թագաւորք կարգ ըստ կարգէ*

կայրն։ Նախ այնմ անկ էր, որ անդրանիկն էր յորդւոց անտի Նորա՝ որ ի թագաւորութեանն վախճանեցաւ։ Ապա թէ նա յարու մանկանէ անժառանգ վախճանէր, որ մերձաւորն էր ազգականութեամբ, զնա ընտրէին։ Արդ մեռաւ Ագիս արքայ, Ագեսիղայ եղբայրն, եւ թողյր ուստր մի Ղեւոտիքիդէս անուն, զոր ի կենդանութեան իւրում չճանաչէր; եւ ի մեռանելն ասաց, թէ իւր որդի իցէ։ Արդ սորա եւ Ագեսիղայ, իւրոյ հօր եղբօրն, դուպարած կայր վասն թագաւորութեանն պատուոյ։ Այլ ոչ այնմ զոր խնդրէրն եհաս մանուկն, զի ի Ղիւսանդրեայ պատուպարութենէ, այն՝ որ խաղմարարն էր, զոր օրինակ վերագոյնն յայտ արարաք, եւ ընդ ժամանակն ընդ այնոսիկ զօրաւոր, Ագեսիղաւոս նախամեծար համարեցաւ։

Ա. ՍԱ վաղվաղակի յորժամ ըզթագաւորութիւնն ըմբռնէր; ածէր ի հաւան զՂակեդմոնացիս, զի զօրս յասիացւոց աշխարհն արձակիցեն, եւ տայցեն մարտ պատերազմի ընդ թագաւորին. զի ասէր, Քան յեւրոպէացւոց աշխարհին առաւել լաւ

է յառաջացուց կողմանս ճակատ տալ։ Զի եւ համբաւ ելանէր Արտաշիսի նաւամարտիկ տորմիղ նաւաց գումարել, եւ հետեւակ զօրս, զի գնոսա ի Յունաց աշխարհն տուաքիցէ։ Եւ իբրեւ տուաւ նմա իշխանութիւն, այնպիսի արագութիւն ի կիր արկանէր, զի վաղագոյն Ասիա զծրօքն հասանէր, քան թէ շահապքն նախարարապետք թագաւորին ի վերայ հասանէին եթէ նա եւ ի քաղաքէն. որով զամենեսեան առանց պատրաստութեան եւ զեղծս գտանէր։ Իբրեւ հասանէր Տիսափեռնէս յիրացն հաստատութեան վերայ, որ զգլխաւորական իշխանութիւն յայնժամ ի մէջ արքունի սատիկանացն ունէր, ժամ եւ ժամանակ ի ղակոնացւոյն խնդրէր, կերպարանօք որպէս թէ ջանայցէ ինքն, զի ղակեդմոնացւոց դաշինք բարեկամութեան ընդ արքայի կուիցին, այլ արդեամբք զի զօր ժողովեսցէ. եւ առնոյր երից ամսոց ժամանակ։ Եւ երդմնի եւ դաշնաւոր լինէին ընդ միմեանս, զի առանց իրիք նենգութեան զդաշինն պահեսցեն։ Յուխտն հաւատարիմ կայր Ագեսիղաոս,

իսկ Տիսափեռնէս զնորին հակառակըն ոչ այլ ինչ բայց պատերազմ գումարէր: Զայն թէպէտ եւ զգայր Լակոնն, սակայն զերդումն զոր եդուեալ պահէր, եւ տայր թէ բազում ինչ նպաստ լինիցի նովաւ անձին. զի Տիսափեռնէս այնու զի երդմանն մտէր, եւ զմարդիկ յիւրոց իրացն օտարացուցանէր, եւ զդիմն ի ցասումն ածէր: Եւ ինքն զի զկրօնսըն պահէր, քաջալերէր զզօրսն, իբրեւ զմտաւ ածէին եթէ աստուածոցն օգնականութիւն ի նոցա թերէ իցէ, եւ մարդիկ բարեկամք լինիցին նոցա, զի սովոր են նոքա այնոցիկ որ հաւատարիմ ի խոստմունսն կացին, ձեռնտու լինել:

Գ. ԻԲՐԵՒ եկն եհաս ժամն, խուժդուժն կարծէր իմն այնպէս ի միտս իւր, եթէ քանզի բազում վայրք բընակութեան էին նորա ի կարացուց աշխարհին, եւ այն թագաւորութիւն ի ժամանակին յայնմիկ մեծագանձ յղփ էր, թշնամիք առաւել անդր յարձակիցին, վասն այսորիկ զիւր զօրսն անդր գումարէր: Այլ Ագեսիղաւոս դէմ եդեալ ի փռիւգացւոց աշխարհն գնայր, եւ զզա-

ւառն անմխարդի Թափուր ի բնակչաց կացուցանէր, մինչ չեւ ուրեք շարժեալ Տիտափեանեայ։ Իբրեւ զօրքըն բազում աւարաւ մեծանային, յԵփեսոս ածէր զբանակն ձմերել. եւ անդրէն արուեստանոցս զինուց կացուցանէր, մեծաւ ճարտարութեամբ զպատերազմն յարդարէր։ Եւ զի մեծաւ փութով վառեցին ի զէն եւ ի զարդ, եւ շքեղագոյնս եւ պայծառագոյնս յօրինեցին, պարգեւս առաջի դնէր որոց աւելագոյն ինչ ճարտարութիւն ցուցանիցեն։ Զնոյն եւ ի պէսպէս մրցութիւնս գործէր, զի որք իւիք ինչ զայլովք անցուցանիցեն, մեծապատիւ մեծապարգեւ մեծարիցին։ Արդ այսպիսի իրօք զօրըս վառեալս զարդարեալս եւ ամենեւին իսկ տեղեկագոյնս մրցութեանց ստանայր։ Եւ իբրեւ ժամ Թուեցաւ նմա զզօրսն արտաքս քան զձմերոցն հանելոյ, տեսեալ զի եթէ ուր երթալոցն էր յայտնապէս պատմեսցէ, չեն ինչ հաւատալոց Թշնամիքն, եւ այլ ինչ դաւառուս ամրացուցանել փութայցեն, եւ համարիցին եթէ այլազգ ինչ քան զոր բարբառեցաւն, գործիցէ։ Արդ ի-

բրեւ առաց թէ ի Սարդս գնալոց է- ցէ, Տիսափեռնէս նոցին կարիացւոց կողմանցն պաշտպանել փութայր. եւ իբրեւ խաբեցաւ, եւ պարտե- ցաւ խորհրդով, անագան խաղայր գնայր յօգնութիւն իւրոցն: Զի յոր- ժամ անդր հասանէր, Ագեսիղաւոս բազում վայրս վանեալ վկանդեալ, մեծաւ աւարաւ լցեալ էր: Իսկ Դա- կոնն իբրեւ ետես թէ թշնամիք յաղթեն նմա հեծելազօրու, չա- յանձն երբեք ի դաշտի ուրեք ճա- կատ տալ, եւ յայնպիսի վայրս ի մարտ մտանէր, յորս առաւել հե- տեւակ զօրքն բռնանային: Եւ խու- ճապէր իսկ, քանիցս անգամ. թէ խառնուրդք լինէին, գ.յաճախա- գունդ բանակս թշնամեացն, եւ այնպէս յՄ.սիա շրջէր, զի ամենեքին զնա յաղթօղ համարէին:

Դ. Ընդ իբրեւ խորհէրն ի միտս իւր խաղալ գնալ ի Պարսս, եւ ընդ թագաւորին իսկ գլխովին. բախել, հրեշտակ անդէն ի քաղաքէն հա- սանէր նմա, պարիտաց հրամանաւ, թէ աթենացիք եւ բեովտացիք ի մարտ պատերազմի ընդ ղակեդմո- նացիս գրգռեցան, վասն այնորիկ մի

ինչ դանդաղեսցի դալ: Յայսմ վայ-
րի ոչ փոքր ինչ ընդ հլուպկեան միտան
քան ընդ պատերազմօղ զօրութիւնն
պարտ իցէ զարմանալ. զի որ զօրա-
ւորն էր յաղթօղ զօրուն, եւ բազում
իմն համարձակութիւն ունէր Պար-
սից թագաւորութեանն տիրելոյ.
այնպէս ցածութեամբ ունկնդիր հր-
րամանաց հեռաւորաց իշխանացն լի-
նէր, որպէս թէ դոյզն ինչ ոք առանց
իշխանութեան ի ժողովս սպարտա-
ցւոց աշխարհին էր: Երանի թէ ըզ-
նորին օրինակի եւ մեր զօրաւորքն
յօժարէին առէպ զհետ գնալ: Այլ
դարձցուք միւսանգամ ի նոյն: Ագե-
սիղաւոս քան զընչաւէտ թագաւո-
րութիւնն նախամեծար զբարւոք
համբաւն արար, եւ առաւել փա-
ռաւորութեան համարեցաւ թէ իւր
աշխարհին հրամանաց հնազանդ լի-
նիցի, քան թէ պատերազմաւ ա-
սիացւոց աշխարհին յաղթիցէ: Արդ
զայս ածեալ զմտաւ, ընդ Եղեսպոն-
տոս զզօրսն անցոյց, եւ այնպէս ե-
րագեալ հասանէր, զի զճանապարհ
զոր Քսերքսէս ի միում ամի հարկա-
նէր, նա զերեսնօրեայ աւուրս ի գը-
լուխ հանէր: Իբրեւ չէր ինչ կարի

Հեռի ի պերճապանծութեանց կողմանց-
ցըն, աթենացիք եւ բէովտիացիք եւ
այլ եւս նոցին դաշնաւորք, առ Կո-
րնթեաւ Ջանայիւն կալ նմա հակա-
ռակ. նա ամենեցուն առաւելի պա-
տերազմաւ յաղթեր: Այոր յաղթու-
թեան առաւել իմն գրուածք են,
զի իբրեւ բազումք փախուցեալ ի մե-
հեան Աթենայ դիցն անկանէին, եւ
հարցեալ լինէր նա, թէ զինչ հրա-
մայիցէ վասն նոցա, նա թէպէտ եւ
վէրս եւս ի պատերազմին առեալ էր,
եւ ցասուցեալ երեւէր ընդ ամենե-
սին՝ որոց զէն առեալ հակառակ կա-
ցին, այլ սակայն զկրօնսն քան ըզ-
բարկութիւն մեծարոյ համարեցաւ,
եւ հրամանս ետ չըռնադատել զնոսա:
Զայս ոչ եթէ ի Յունաց աշխարհին
միայն գործէր, զի զմեհեանս դիցն
սուրբ ունէր, այլ եւ ի բարբարոսաց
աշխարհին մեծաւ փութով զամե-
նայն պատկերս եւ զբագինս պահէր:
Եւ քարոզէր իսկ եւ ասէր, եթէ Զար-
մանամ թէ ոչ սեղանազերծ տա-
ճարակապուտ համարեցին, որք ի
պատկերսն անպատուանելոց մնաս առ-
նիցեն. կամ զհարդ ոչ յեւս մեծա-
մեծ ինչ պատիժս մտանիցեն որք ըզ-

կրօնան. նուաճեցուցանիցեն, քան զայնոսիկ՝ որք աւար հարկանիցեն զմեհեանսն։

Ժ. Յետ այսր պատերազմի զումարէր համօրէն կուրեն զկորնթացւոց աշխարհաւն, եւ վասն այնորիկ կորնթական պատերազմն կոչեցաւ։ Արդ իբրեւ ի միում ճակատու տասն հազարք թշնամեաց, Ագեսիղայ զօրաւարութեամբ անկանէին, եւ այնպէս հակառակորդացն զօրութիւն մեղկէր անկանէր, նա այնչափ քաջ ի բաց հեռի ի հպարտութենէ եւ ի պարծանաց էր, զի զթայր ի վերայ ծախողանաց Յունաց աշխարհին. քանզի այնչափ բազում մարդկան յաղթեալ ի նմանէ վասն հակառակորդացն անկան, զի այնու բազմութեամբ, եթէ առողջմտաք էին Յունաց, մարթէր Պարսից վրէժս տալ։ Նոյն դարձեալ իբրեւ զթշնամիս ի քաղաքին պաշարեալ ունէր, եւ բազումք խրատ տային նմա, զի ընդ Կորնթացւոց քաղաքին տացէ մարտ պատերազմի, նա տայր անդրէն պատասխանի եւ ասէր, թէ Արդ չվայելէ ինչ իմում առաքինութեան. զի յայն իսկ եկի, ասէ, զի զորս չկայ-

ցեն ինչ յիւրեանց շամփուռն, դարձուցեն անդրէն ի նոյն, եւ ոչ զի զքաղաքսն հօյակապս զՅունաց աշխարհին կործանեցին: Զի եթէ զնոսա՝ որք ընդ մեզն հակառակ կացին հինին, կամիցիմք ընձեռել, անձամբ զանձինս քակեմք, իբրեւ հանդարտեալ կայցեն խուժդուժքն: Զայդ եթէ առնիցեմք, դիւրաւ եւ անջան պատերազմաւ, յորժամ կամիցին նկուն առնիցեն զմեզ:

Զ. Յաւելում ժամանակի դէպ լինէին ղակեդմոնացւոց առ Դեւկոլիաւ միշտաքն. եւ զի մի իցէ թէ անդր երթայցէ, չառ յանձն ի հրապարակի երեւել, ուր եւ ի բազմաց ստիպէր, իբրեւ այն թէ իմանայր յառաջադոյն զելս իրացն: Եւ իբրեւ Եպամինոնդաս ընդ սպարտացւոց պատերազմէր, եւ առանց պարսպաց էր քաղաքն, նա այնպիսի ոք զօրաւոր զանձն ընծայեցուցանէր, մինչեւ յայնժամ ամենեցուն երեւել, եթէ նորա չէր լեալ, սպարտացւոց քաղաքըն յաւառակաց բրելոց էր: Յայնմ կարւոյ ժամանակի արագութեամբ իւրոց խորհրդոցն ամենեցուն իսկ լինէր ի փրկութիւն: Քանզի իբրեւ

ոմանք ի մանկանցն զարհուրեալք ի գալստենէ Թշնամեացն, դէմ եդեալ տարադէմ փախստեայ առ Թեբացիս անցանել կամէին, եւ վայրս ինչ բարձրաւանդակս արտաքս քան զքաղաքն ունէին. Ադեսիդաւոս քանզի տեսանէր Թէ մեծ իմն վնաս է, եԹէ իմանայցի Թէ ոք առ Թշնամիսն անցանել յօժարիցէ, իւրայովքն հանդերձ եկն ի տեղին, եւ որպէս Թէ բարուք ինչ մտօք գործեցին, յարգէր զնոցա խորհուրդս, զի զայն վայրան կալան. Եւ ես, ասէ, զմտաւ ածէի Թէ պարտ է զայս այսպէս առնել: Այնդունակ զմանկտին կերպարանեալ յարգանօքն շահեցաւ, եւ յաւելեալ ի նոսա. անդրատին յեկեղեցին ընդ իւր, Թողոյր ըզվայրան ի զգուշուԹեան: Զի իբրեւ Թիւ համարոյ այնոցիկ՝ որ չէին ինչ տեղեակ խորհրդոց նոցա յաճախէր, չիշխեցին խլրտել. մանաւանդ առաւել վասն այնորիկ զի կարծէին, եԹէ զոր խորհեցանն, ի ծածուկ կայ:

Է. ԱՐԴԱՐԵՒ յետ ղեւկտորիականն պատերազմին ղակեդմոնացիք ոչ երբեք նորոգեցան, եւ ոչ զառաջին ինչ իշխանուԹիւն իւրեանց ըմբռնեցին.

այդ Ագեսիղաւոս չդադարելոյ եր-
բեք, որով իւիք եւ ձեռնհաս էր թի-
կունք լինել աշխարհին։ Զի իբրեւ
մանաւանդ ընչիւք կարօտ էին զա-
կերդմնացիք, նա ամենեցուն որոց
յետոյ կացեալ էր ի թագաւորէն,
ձեռնտու լինէր. եւ բազում ինչս ի
նոցանէ առեալ պարգեւ, դիւրու-
թիւն տանէր իւրում գաւառին։ Նա-
յն իսկ առաւել զարմանք էին ի նմա,
զի յորժամ բազում դահամոնունք եւ
պատուարագք նմա ի թագաւորաց եւ
ի հարստաց եւ ի քաղաքաց մատու-
ցանէին, ոչ ինչ ամենեւին յիւր տունն
մուծանէր, ոչ զղակոնացի ռոճիկն
եւ զհանդերձիկն փոխեաց։ Այլ զնոյն
տուն շատ եւ բաւական համարէր,
զոր եւ Եւրիսթենէս նախնին հարցն
իւրոց ի կիր արկ. յոր թէ մտանէր
ոք, ոչ ինչ տենչանաց, ոչ ինչ խաւլ
առատութեան նշանակս մարթէր
տեսանել, եւ զնորին հակառակն
բազում ինչ համբերութեան եւ
ժուժկալութեան նշանակս։ Եւ այն-
պէս իսկ էր կազմեալ եւ յարդարեալ,
որպէս զի ոչ իւիք ինչ իրօք այլակերպ
իցէ ի կարօտելոյ եւ ի դոյզն ուրուք
տանէ։

Ը. Երբ այր մի այսպիսի, որում այնպէս առատ եղեւ բնութիւնն յոր-ժամ զօրւոց առաքինութիւնս բա-ժանէր, իբրեւ զմարմինս անդամոց նորա կազմէր, յուսացա վստահու-թեամբ. զի եւ կարծ էր նա հաստա-կաւ եւ անկար յընկերաց զօրութենէ եւ միով ոտամբ կաղ։ Եւ այս աղե-ղութիւն իմն բերէր. եւ որք չէինն ծանօթք, իբրեւ ընդ երեսս նորա հայէին, յընչաց քերեալ արհամար-հէին. այլ որ նորա քաջութեանցն ի վերայ հասանէին, զարմանային ընդ նա կարի։ Որ եւ դէպ եղեւ իսկ նմա, զի իբրեւ ուխտանամենի յօգ-նականութիւն Թակեայ, յեգիպտա-ցւոց աշխարհն երթայր, եւ ի ծո-վեզերին հանդերձ իւրովքն ընկող-մանեալ ննջէր, առանց յարկաց բաց-օթեայ, եւ խշտիս ունէր այսպիսի ինչ. գետնին ծածկեալ ի յարդեց, եւ յայնոր վերայ ոչ ինչ աւելի ար-կեալ բայց միայն մորթ. եւ անդէն ամենեքին ննջէին, հանդերձս գը-ծուծս եւ մաշս զգեցեալ, այնպէս զի ամենայն հանդերձանք նոցա ոչ միայն թագաւոր զոք ի միջի նոցա չցուցանէին, այլ զմարդոյ ուրուք

տառապելոյ կարծիս տային: Իբրեւ համբաւ գալստեան նորա առ արքունականն հասանէր, փաղփաղակի բերէին նմա պատարագս եւ պարգեւս ազգիազգիս: Եւ իբրեւ զՄգեսիղաւոսն խնդրէին, հազիւ առնոյին յանձն հաւատալ, եթէ մի ի նոցանէ իցէ, որք յայնժամ ննջէին: Եւ իբրեւ Թագաւորին բանիւք, զոր բերինն, մատուցանէին, նա չառնոյր ինչ անտի, բայց միայն ի մնոյ որթոյն եւ յայնպիսի ոսկեաց՝ որոց ի ժամանակին յայնմիկ կարօտ էր, եւ զեւղս անուշունս, եւ զպսակն, եւ զչոր] խորտիկսն ծառայից իւրոց բաժանէր, եւ զայլն եւս հրաման տայր յետս դարձուցանել: Զայն իբրեւ գործէր, խուժդուժքն զնա աւելագոյն եւս արհամարհէին. զի համարէին եթէ առ չգիտելոյ, զնոսա մանաւանդ առնուլ յօժարեաց: Իբրեւ *յեգիպտացւոց աշխարհէն դառնայր, ընկալեալ պարգեւս երկերիւր քան տաղանդ ի Նեկտանեբայ, զի զնոյն իւրում ազգին տայցէ պարգեւս, եւ դայր հասանէր ի նաւահանգիստն՝ որ անուանեալ կոչի Մ՚ենեղայ, եւ ի մէջ կիւրենացւոց

եւ եգիպտացւոց աշխարհին կայ, յախտ հիւանդութեան անկեալ մեռանէր: Ընդ նորա բարեկամքն, զի դիւրաւ կարիցեն ի Սպարտա հասուցանել, մոմով պատէին, քանզի մեղր չունէին, եւ այնպէս բերէին յաշխարհն:

# ՑԱՆԴՈՒՄԱՆՈՒԹՒՒՆ

Ա. ՅՈՒՄԵՆԷՍ զառաջինն Փիլիպպեայ եւ Աղեքսանդրի դպիր լեալ, ապա զօրաւար եղեւ թեւի միոյ։ Բ. Զգուշաւորս վճռակա-նալ, սիրելի եղեւ Պերդիկկայ եւ հաւա-տարիմ։ Գ. Կացուց զնա Պերդիկկաս ընդ-դէմ թշնամեացն որ յեւրոպացւոց աշխար-հէն։ Դ. Նէոպտողեմայ յաղթէ սատարեկ պատերազմաւ զԿրատերոս մեծաւ յուղար-կաւորութեամբ թաղէ։ Ե. ՅԱնտիգո-նեայ դատապարտեալ պարտեալ եւ պա-շարեալ խորամանկութեան հնարիւք ապրի։ Զ. Խնամակալ լինի Ողոմպիադայ եւ որ-դւոցն Աղեքսանդրի։ Է. Կերպարանէ ըղ-կերպարանս իշխանութեան Աղեքսանդրի հակառակ Անտիգոնեայ։ Ը. Անտիգոնեայ յաղթեալ ի զօրականաց հինօրէից ստա-հակութենէ խափանի։ Թ. Խորամանկ խորհրդով զթշնամին մերժեալ կացուցա-նէ։ Ժ. Մատնեալ յիւրոցն, որ յաղթեացն կայ ի դիպահուոջ այնր որ պարտեցաւն։ ԱԺ. Զհամբերեալ բանտին զպատիժն խնդրէ։ ԲԺ. Վասն խորհրդեանն յետ սովով տան-ջելս, որով վախճանի։ ԳԺ. Մինչ դեռ կենդանի էր ոչ ոք ի զօրաւարացն ըղ-թագաւորի անուն առ. թէ որպէս յու-ղարկաւորութիւն եղեւ։

ՈՒԹԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ

# Ե Ւ Մ Ե Ն Է Ս

## Կ Ա Ր Դ Ի Ա Ց Ի

Ա. ԵՒՄԵՆԷՍ կարդիացի: Սմա եթէ քաջութեանն հաւասար եւ բախտն էր, թէպէտ եւ ոչ ինչ մեծ եւս քան զոր էն, լինէր, այլ եւս առաւել երեւելի եւ մեծարոյ, քանզի զհոյակապ մարդիկ քաջութեամբըն կշռեմք եւ ոչ եթէ բախտիւ: Զի ժամանակ կենաց նորա, յորում Մակեդոնացիք ածէին, կարի արհամարհ իմն զնա առնէր, որ անդէն ի նոցա իսկ միջի կեայր, քանզի յօտար քաղաքէ էր. եւ ոչ իսկ ինչ պակաս էր ի նմանէ, բայց միայն ազնուական զարմ: Թէպէտ եւ նա յիւրում բնին ի գլխաւոր ազգէ էր, բայց սակայն դժուարէին Մակեդոնացիք, զի յիրս ինչ առաւել քան զնոսա Թուիցի, սակայն համբերէին. զի անցուցանէր զամենեքումբք խնամակալու-

թեամբ, աչքնութեամբ, համբերու-
թեամբ, խորագիտութեամբ եւ հան-
ճարով։ Իբրեւ մանուկ իսկ էր, բա-
րեկամութիւն խառնէր ընդ Փիղի-
պեայ, Ամինտեայ որդւոյ, եւ ի սուղ
ժամանակի ընտանենայր նմա. զի
բացուստ ի բաց պայծառանայրն ի
մանկութեան իսկ նորա բարքաստա-
քինութեանն։ Եւ ունէր զնա առ
իւր ի տեղւոյ դպրի, որ առ Յոյնս
յոյժ իսկ պատուականագոյն է քան
թէ առ Հռոմայեցիս։ Զի առ մեզ,
արդեամբք իսկ որպէս եւ ենն, վար-
ձկանք գրիչքն համարին. իսկ առ
նոսա նորին հակառակ չլինի ոք յայն
գործ միջամուխ, թէ ոչ ցածուն ոք
իցէ եւ ծանօթ հաւատարմութեամբ
եւ քաջութեամբ, զի հարկ է նմա,
թէ ամենայն խորհրդոցն խորհրդա-
կից լինիցի։ Զայս կարգ բարեկամու-
թեան առ Փիղիպպեայ ունէր զամս
եւթն, եւ յետ նորա մեռանելոյ, ի
նոյն գործ սպասաւորութեան կայր
առ Աղեքսանդրի զամս երեքտասան։
Այլ ի յետին ժամանակսն եւ զօրա-
ւար եւս էր միւսում թեւի հեծելա-
զօրուն, որ անուանեալ կոչէր Հե-
տերիկէ։ Եւ էր նա միջամուխ խոր-

Հրրդոց երկոցունց եւս Թագաւորացըն, եւ ամենայն խրոց կցորդ ։

Ի. Յետ Աղեքսանդրի ի բարեղացւոց աշխարհէն մեռանելոյ, իբրեւ բաժանէին զտէրութիւն նորա ծառայքն դայեկորդիք իւրաքանչիւր եւ գլխաւոր իշխանութիւն տային Պերդիկկայ, այն՝ որում Աղեքսանդրոս ի մեռանել իւրում ետ զիւր մատանին. որով ամենեքին իմանային եթէ նմա զթագաւորութիւնն ընծայեցուցեալ իցէ, մինչեւ իւր որդիքն ի չափ հասանիցեն։ Քանզի Կրատերոս, եւ Անտիպատրոս, չէին մօտ, որ անցուցանել զնովաւ կարծէին, եւ Եփեստիոն մեռեալ էր, զոր մեծարոյ քան զայլսն համարէր Աղեքսանդրոս, որպէս մարթի դիւրաւ իմանալ։ Յայնմ ժամանակի տըւաւ Եւմենեայ կապադովկացւոց աշխարհն, կամ մանաւանդ թէ սահմանեցաւ. զի յայնժամ ի ձեռս թշնամեաց էր։ Զնա Պերդիկկաս ընդ իւր յարեցուցանէր մեծաւ փութով զի յոյժ իսկ հաւատարիմ եւ աջողակ զայլսն տեսանէր, եւ գիտէր զի եթէ զնա հրապուրիցէ, բազում իւիքն որպատաստ լինիցի նմա ջիրմն զորս յար-

դարէր ։ Կանգնի ածէր իսկ զմտաւ, որում զրեթէ ամենեքին՝ որ ի մեծ ինչ իշխանութեան կային, ցանկան, զայլոց բաժինսն յափշտակեալ միւս վարել ։ Զայդ ոչ նա եւեթ գործեաց, այլ եւ ամենեքին իսկ՝ որք Աղեքսանդրի բարեկամք լեալ էին ։ Առաջին Անտիպատրոս զՄակեդոնիա ըմբռնել յօժարէր. նա բազում մեծամեծ խոստմամբք ջանայր հաւանեցուցանել զԵւմենէս, զի զՊերդիկկաս թողցէ եւ ընդ իւր բարեկամութիւն առնիցէ ։ Նա իբրեւ չկարէր ածել զնա ի հաւան, գուն գործէր բապանանել. եւ առնէր իսկ, եթէ ոչ նա գիշերի գաղտուկ փախուցեալ ապրէր ի միջոյ պահապանաց նորա ։

Գ. ՅԱՅՍՄ ժամանակի բորբոքեցան մարտք պատերազմաց, որ յետ Աղեքսանդրի մահուն մինչեւ ցհամայնաջնջումն սատակման մղէին. եւ ամենեքեան ի մի վայր զայլն հալանէին, զի զՊերդիկկաս նկուն առնիցեն ։ Թէպէտ եւ տկար զնա տեսանէր Եւմենէս, զի առանձինն ամենեցուն հարկէր հակառակ կալ, այլ չկայր յետս ի բարեկամէն, եւ ոչ ըդկեալն քան զհաւատարիմն լինել լաւ

համարեցաւ։ Կացուցանէր զնա. Գեր-
դիկկաս ի վերայ կողմանց ասիացւոց, որ ի մէջ լերանց Տաւրոսի եւ Եղեսպոնտեայ կան, եւ զնա միայն ընդդէմ կարգէր եւրոպէացւոց հակառակորդացն, զի ինքն խաղայր գնայր ի վերայ Պտղոմեայ, տալ մարտ պատերազմի ընդ եգիպտացւոց աշխարհին։ Սակայն ոչ ինչ բազմաձեռն զօրօք էին, եւ ոչ ինչ պնդակազմ, զի եւ առանց կրթութեան իսկ էին, եւ ոչ ի բազում ժամանակաց զումարեալք, եւ առէին եթէ մօտ իսկ են եւ ըստ Եղեսպոնտոս անցեալ Անտիպատրոս եւ Կրատերոս, հարըստաբուռն զօրօք մակեդոնացւոց, արք հոյակապք եւ յիրս պատերազմի քաջք անհնարին. զի յայնմ ժամանակի մակեդոնացւոց զօրականն այնպիսիք ոմանք համբաւէին, որպիսի այժմ հռոմայեցիք համարիցին, զի միշտ իսկ հանապազ քաջք համարեցան, որք զգլխաւոր իշխանութիւն կալան։ Գիտաց Եւմենէս զի եթէ զօրքն իմանայցեն թէ ընդ ում կռուել երթան, ոչ միայն չկամիցին խաղալ, այլ վաղվաղակի իբրեւ լուր լինիցի նոցա, քակեալ ցրուեսցին։

Կատնորոյ զայս իմաստուն խորհուրդ խորհեցաւ, թէ ընդ անկոխ ճանապարհ զզօրսն ածիցէ, յորս չկարիցեն ինչ զճշմարտութիւնն լսել. եւ հաւանեցոյց զնոսա թէ հակառակ բարբարոսաց ինչ խաղայցէ: Նոյն զայս խորհուրդս հան նա ի գլուխ, եւ զզօրսն ճակատեցոյց ի պատերազմ, մինչ չեւ էր զօրացն ի վերայ հասեալ եթէ ընդ որոց տայցեն պատերազմ: Եւ զվայրսն յառաջագոյն հաստեալ կալեալ, այնպէս առնէր զի առաւել հեծելազօրու մարտիցէ, որով հարստագոյնն էր քան հետեւակօքն, զի նոքօք ի վայր էր քան զնոսա:

Դ. Ի ՍՈՑԱ սաստկագոյնս ընդ միմեանս բախել, իբրեւ ցմեծ ժամ աւուրն կռուէին, անկանէր Կրատերոս զօրաւար, եւ Նէոպտողեմոս՝ որ զերկրորդ բարձ իշխանութեան ունէր: Ընդ նմա Եւմենէս միայն ընդ միայն կռուէր. եւ յորժամ զիրկընդզիրկ խառնէին, եւ ի գետին յերիվարացն անկանէին, որպէս զի յայտ լինէր թէ թշնամութեան մտօք կռուէին, եւ ոգւովք մանաւանդ քան թէ մարմնով մաքառէին, մինչ չեւ միոյ ի նոցանէ փչեալ զոգին, մեւսն

ոչ Թափեցաւ։ Վերս առ ի Նմանէ Եւմենէս, բայց ոչ եթէ վասն այնորիկ եւ ի ճակատուէն, այլ ընդդագոյնս ընդդէմ կայր Թշնամեացն։ Յայնժամ վայրի իբրեւ հեծելազօրն բեկաներ, եւ Կրատերոս զօրաւար մեռաներ, եւ այլ եւս բազումք ի պատուաւորաց ձեռբաւկալ լինէին, հետեւակ զօրքն, քանզի յայնպիսի վայրըս անկեալ էին, զի առանց Եւմենեայ կամելոյ չկարէին մազապուր ապրծանել, հաշտութիւն ի Նմանէ խնդրէին։ Այլ իբրեւ յայն հասին, չկային ի դաշինսն, եւ իբրեւ արձակեցան, փաղփաղակի առ Անտիպատրոս անկանէին։ Եւմենէս զԿրատերոս ի ճակատուէն կիսամահ հանէր, եւ ջանայր արծարծանել. այղ իբրեւ չկարաց, ըստ առնն արժանաւորութեան եւ ըստ առաջին բարեկամութեանն, զի առ Աղէքսանդրի կենդանեաւք ընտանեբար գնայր ընդ Նմա, եհան զդին յուղարկաւորութեամբ, եւ զոսկերսն ի Մակեդոնիա առ կինն եւ առ որդիսն առաքէր։

Ե. ԽՈՐՍՈՒ այս ինչ այսպէս յԱղեսպոնտոս կատարէին, Պերդիկկաս առ Նիղոս գետով ի Սեղեւկեայ եւ

յԱնտիգոնեայ ապանանէր, եւ դահ-
ներեց զխաւարութիւն այնու հետեւ
Անտիպատրեայ հասանէր: Անդ ըստ
զօրացն վճիռ տալոյ, որք յետոյ կա-
ցեալք էին, մինչդեռ չէին անդէն,
զխապարաք դատանէին, յորս էր եւ
Նաւմենէս: Իսկ նա զայնպիսի վերս
յանձն առեալ, չկործանէր, եւ ըզ-
պատերազմն մղէր. բայց իրք որ-
կարք, թէպէտ եւ զքաջութիւն մը-
տաց նորա ոչ բեկանէին, այլ նը-
ւաղէին: Իբրեւ զնորա զհետ մտեալ
հալածէր Անտիգոնոս, եւ բազում
յաճախութիւն զօրաց էր նորա, բա-
զում անգամ զճանապարհայն նե-
ղէր. եւ ոչ ընդխառնել ի պատե-
րազմ դիպէր երբէք, եթէ ոչ ի տե-
ղիս՝ յորս սակաւք կարիցեն զդէմ
ունել զբազմաց: Այլ ի յետին ժա-
մանակին, յորժամ չեղեւ մարթ
հնարիւք ըմբռնել, շուրջ պաշարե-
ցաւ ի բազմութենէ: Անտի եւս, յետ
բազմաց յիւրոց անտի անկանելոյ, ա-
պրէր, եւ ի փոխիւզացուոց ամուրն՝ որ
անուանեալ կոչի Նորա, անկանէր:
Եւ իբրեւ շուրջ նստեալ պաշարէին
զնա անդէն, եւ կասկածէր մի գուցէ
յորժամ ի միում վայրի դադարիցէ,

անպիտանք այնու հետեւ լինիցին ե-
րիվարքն պատերազմի, քանզի չգոյր
տեղի արշաւելոյ, խորագէտ հնա-
րիւք զեւս իւրացն գտանէր, զի յոր-
ժամ դադարեալ կայցէ, մարթիցի
զգրաստուցն ջերանել եւ ընդ հրա-
հանգս ելանել, զի եւ ախորժելով
զխարն կերիցեն, եւ ի մարմնոցն վար-
ժմանէ ոչ դադարիցեն։ Զգլուխս
փոկով ի բարձուէ պնդէր, որպէս զի
չկարէին իսկ քաղ առաջոյ աքեօքն
ի գետինն հասանել, ապա յետոյ
զանիւք տագնապէր ոստոստել եւ
կիցս ընկենուլ. եւ յայնչափ շար-
ժել, ոչ ինչ ընդհատ յասպարիսին
արշաւելոյ, քիրտն հարկանէր։ Ուս-
տի եղեւ ամենեցուն զարմանալի ինչ
կարծել թէ զգրաստսն այնպէս գե-
ղեցիկս ի քաղաքէն հանիցէ, ուր բա-
զում ամիսս կայր ի պաշարման, որ-
պէս թէ ի դաշտագետին վայրի ու-
նիցի զնոսա։ Յայսր պաշարման ժա-
մանակի յորժամ եւ կամէր զկազմած
եւ զամրութիւն Անտիգոնեայ այրէր
եւ քակէր։ Եւ դադարեալ նստէր նա
ի միում վայրի զամենայն ժամանա-
կըս ձմերայնւոյն. այլ քանզի չմար-
թէր բանակն ռոճիկ գտանել, եւ

մերձ էր դարունն, կերպարանեալ որպէս թէ ձեռս տայցէ, իբրեւ դաշինք ի միջի կուէին, զԱնտիգոնեայ ռատիկանան պատրէր, եւ անձամբ եւ իւրովքն ամենեքումբք ողջանդամ զերծանէր ։

Ջ. ԱԴՈՄԴԻԱՍ մայր Աղեքսանդրի իբրեւ թուղթ եւ հրեշտակս առ նա յասիացւոց աշխարհէն առաքէր, հարցանել եթէ դառնայցէ՞ արդեւք ի Մակեդոնիա, եւ ի ձեռն առնուցո՞ւ զիշխանութիւնն, քանզի ի ժամանակին յայնմիկ Անտիպատրոս բնակէր. նա զառաջինն հաւանեցուցանէր ըղնա, զի մի շարժեսցի ի տեղւոջէն, եւ սպասեսցէ մինչեւ Աղեքսանդրի որդին արքայութեանն հասանիցէ ։ Այլ եթէ ցանկութեամբ ինչ աճապարեսցէ երթալ ի Մակեդոնացւոց աշխարհն, զամենայն զրկանսն մոռանայցէ, եւ մի ընդ ումեք անագորոյն խստութեամբ գնայցէ ։ Յայսըմ ամենայնէ ոչ ինչ արար նա. քանզի եւ ի Մակեդոնիա գայր, եւ անդէն բազում անագորոյնութեամբ վարէր ։ Եւ խնդրէր իսկ Եւմենեայ մինչդեռ հեռին էր, զի չառնուցու յանձն եթէ փիղիպեայ տանն եւ որ-

դուց թշնամիք տայցեն անուանդ առ-
նել զզարմն, այլ զի յօգնականու-
թիւն եկեսցէ որդւոցն Աղեքսանդրի։
Զայս եթէ կամիցիս ինչ, ասէ, ի գը-
լուխ հանել, փաղփաղակի զօր զու-
մարեա զունդ կազմեա, զի նոքօք
հանդերձ հասցես ինձ ի թիկունս։
Եւ զի դիւրագոյն զայն գործեսցես,
եւ ամենեցուն սատրիկանացն՝ որ հա-
ւատարիմն կացին, առաքեցի թուղ-
թս զի քեզ հնազանդ լինիցին, եւ
քո խրատուքն վարիցին։ Նոքիմբ
Եւմենէս գրգռեալ, լաւ համարեցաւ
եթէ այնպէս ինչ դէպքն տայցեն,
կորնչել զի երախտաւորացն շնոր-
հահատոյց լինիցի, քան ապախտա-
ւորութեամբ կեանս կեցցէ։

Ե. ԱՅՆՈՒՀԵՏԵՒ զօրաժողով լինէր
եւ մարտ պատերազմի ընդ Անտի-
գոնեայ պատրաստէր։ Զի էին ընդ
նմա բազումք յազնուականաց անտի
մակեդոնացւոց, յորս Պեւկեստէսն
էր, որ անձնապահ լեալ էր Աղե-
քսանդրի եւ յայնժամ ունէր զՊար-
սից աշխարհն, եւ Անտիգենէս՝ ընդ
որոյ իշխանութեամբ էր մակեդոնա-
ցւոց ճակատն, կասկածէր վասն նա-
խանձուն մակեդոնացւոց, յորմէ չը-

կարէր ապրել, եթէ այր մի օտարածին զգլխաւորական իշխանութիւն ըմբռնիցէ, մանաւանդ քան այլ մակեդոնացիք՝ որոց այնչափ յաճախութիւնէր: Անդէն ի վանս իշխանաց յանուն Աղեքսանդրի խորան հարկանէր, եւ աթոռ ոսկիապատ հանդերձ գաւազանաւն եւ թագաւ անդր հրամայէր դնել, եւ ամենեցուն օր ըստ օրէ անդր ժողովել, զի անդրէն վասն երեւելի ինչ իրաց խորհուրդ առնուցուն: Կարծեալ այնպէս եթէ չարկանիցէ նախանձուկս, եթէ կերպարանօք իշխանութեան եւ անուան Աղեքսանդրի երեւիցի մղել զպատերազմն. զոր եւ արար իսկ: Եւ քանզի ոչ ի վանսն Եւմենեայ, այլ զարքունի վրանաւն ժողովէին, եւ անդէն վճիռ լինէր զիրացն, ղաւղէր իմն սակայն ամենայն ի ձեռն նորա վճարէր:

Ը.։ Եւ ի Պարետակս ի մարտ պատերազմի ընդ Անտիգոնեայ բախէր, ոչ ճակատ առ ճակատ յարդարէր, այլ զճանապարհայն. եւ զնա խուճապեցուցեալ ի Մարաստան տագնապեցոյց դառնալ ձմերել: Եւ ինքն ի սահմանորդ աշխարհին Պարսից ի

ձմերոց զզօրսն բաժանէր, ոչ որպէս իւր ինչ կամք էին, այլ որպէս զօրացն միտք ստիպէին առնել։ Պանգի Աղեքսանդրի ճակատն՝ որ զառիացւոց աշխարհաւ շրջեցաւ, եւ Պարսից յաղթեաց, առաջին իմն պարծանօքն եւ ժպրհութեամբ ոչ հնազանդել ինչ զօրաւարացն, այլ հրաման տալ խնդրէին, որպէս եւ այժմ մեր հին զօրականք գործեն։ Արդ վտանգ է, զի մի եւ զնոյն՝ զոր նոքայն արարին, առնիցեն, զի իւրեանց անժուժկալութեամբն եւ բազմապատիկ ժպրհութեամբ, զամենայն վեր ի վայր առնիցեն, զայնոսիկ՝ որոց թիկունք էին, կորուսանիցեն, ոչ ինչ ընդհատ յայնցանէ՝ զորս սատակեցինն։ Եւ եթէ ոք զայնց զօրականաց իրս ընթեռնուցու, ամենեւին հանդոյն սոցա գործոցն գտանիցէ, եւ առնուցու ի միտ եթէ չիք ինչ կրճիմ ի միջի ընդ այն եւ ընդ այս, բայց ժամանակն։ Այլ դարձցուք անդրէն ի նոսա։ Բնակեալ էին ի ձմերոցսն, ոչ ըստ օրինի պատերազմի, այլ ըստ իւրեանց դիւրին եւ հեռի իսկ ի միմեանց մեկնէին։ Իբրեւ ի վերայ հասանէր իրացն Անտիգո-

նոս, եւ իմանայր եթէ ինքն չլինի-ցի դամադիր հակառակորդաց կազմելոց պատրաստելոց, դնէր ի մտի նոր ինչ խորհուրդ խորհել։ Երկու ճանապարհք էին, ընդ որս ի Մարաց աշխարհէն ուր ինքն ձմերէր, ի ձմերոցս թշնամեաց մարթ էր հասանել։ Մի ի կարճոյ ճանապարհն էր յանապատ տեղիս, եւ ըստ այն ճանապարհ ոչ ոք անցանէր վասն անջրդութեանն, զտասն աւուրս մարթ էր հատանել անցանել զայն ճանապարհ. իսկ այն ընդ որ ամենեքեան առհասարակ անցանէին, տասն աւուրց գնացիւք երկայնագոյն քան զմեւսն էր, այլ յուռթի եւ ամենաբեր։ Ընդ այս թէ անցանէր, գիտէր, զի մինչ չեւ զերիր մասն ճանապարհին ի գլուխ հանեալ իցէ, թշնամիք իմանայցեն զնորա գալուստն. ապա թէ ընդ առանձին տեղիս ձըգեալ երթայր, ակն ունէր եթէ ըզթշնամին զեղծ գտեալ նուաճեսցէ։ Արդ առ ի գլուխ հանելոյ զիրան, հրրաման տայր բազում տիկս եւ հագաղակս ածել կուտել. յետ այնորիկ բանջար եւ եփոյս վասն տասն աւուրց պիտոյից, եւ պատուիրէր թէ մի հուր

ի բանակին լուցանիցի, եւ զճանապարհն՝ զոր ի մտոք եդեալ էր հատանել, ծածկէր յամենեցունց։ Եւ իբրեւ հանդերձեալ կազմէին, դէմ եդեալ գնային յոր կամէին։

Ժ. Զայս ճանապարհին հազիւ ի գլուխ հանեալ էր, իբրեւ ի ծխոյ բանակին կարծիք լինէին Եւմենեայ եթէ մերձ են թշնամիք։ Ի մի վայր ժողովէին զօրագլուխք, խորհուրդ ի մէջ առնոյին, եթէ զինչ ի դէպ իցէ գործել։ Ամենեքեան իմանային եթէ չմարթէր փաղփաղակի զզօրսն գումարել, մինչ չեւ եւս Անտիգոնոս հասեալ իցէ։ Արդ իբրեւ բոլորեքեան դողդոջէին եւ սայթաքէին, եւ անյոյս լինէին զիրացն, ասէր ցնոսա Եւմենէս եթէ փաղփաղակի հնազանդիցին եւ զհրամայեալսն առնիցեն զոր յառաջագոյն չարարին, ինքն յարդարիցէ զիրսն։ Զի ընդ որ ըզհինգ աւուրս թշնամիք անցանել մարթեն, այնպէս ինչ առնիցէ, զի նոյնչափ ինչ աւուրբք յերկարեսցի, որով եւ այսր անդր ընթացեալք զիւրեանց զօրս գումարեսցեն։ Եւ առ ի զԱնտիգոնեայ զարշաւանն կարճելոյ, այսպիսի խորհուրդ կալաւ։ Արս ըն-

տիրս առաքէր ի մօտաւոր լերինն՝ որ հանդէպ կային թշնամեացն ճանապարհի. եւ պատուէր տայր նոցա զի յառաջնում պահու գիշերոյն աստ անդ մեծամեծ խարոյկս լուցանիցեն, եւ յերկրորդում պահու նուազեցուսցեն, եւ յերրորդումն՝ աղօտ աղօտ առնիցեն. եւ կերպարանօք զսովորութիւն բանակի ցուցեալ, կարծիս տայցեն թշնամեաց եթէ անդէն իսկ բանակ հարեալ իցեն, եւ թէ իմացան զնոցա գալուստն. զնոյն եւ յերկրորդում գիշերի գործիցեն: Որոց հրամայեալն էր, վաղվաղակի զպատուէրն կատարեցին: Անտիգոնոս, իբրեւ օրն նսեմացաւ, ընդ խարոյկսըն նայեցաւ, կարծեաց եթէ իւր գալուստն ի վեր ել, եւ թշնամիք անդր զիւրեանց զօրսն ժողովեցին: Փոխէր զխորհուրդն, եւ զի չկարաց զնոսա զեղծ գտանել, խոտորեցոյց զճանապարհն, եւ զերկարագոյն շաւիղս յուռթի ճանապարհին կալաւ: Անդ հանգարտէր օր մի, զի զզօրսն յաշխատութենէն հանգուսցէ, եւ զգրաստսն դարմանեսցէ. զի նորոգեալ եւ արծարծեալ գնդաւ ի ճակատ մտանիցէ:

Ժ. ԱՅՍՊԷՍ Եւմենէս խորամանգ զօրաւարին յաղթէր հանճարով եւ նորա արքայութեանն խափան լինէր, այլ չլինէր ինչ այն նմա օգուտ: Քանզի առ նախանձու իշխանացն՝ որ էին ընդ նմա, եւ առ նենգութեան մակեդոնացւոց հին զօրաց յորժամ պատերազմին յաղթեալ ի բաց մեկնէր, Անտիգոնեայ ի բուռն անկանէր. Թէպէտ եւ զօրքն նմա յառաջագոյն երիցս յայլ եւ այլ ժամանակս երդուեալ էին, եթէ պաշտպանիցեն նմա, եւ ոչ երբեք յետս կացցեն ի նմանէ: Այլ այնպէս ոմանք ընդ նորա քաջութիւնն նախանձաբեկ լինէին, զի առաւել կամեցան երդմնահաւս լինել քան թէ չլինել նմա մատն: իսկ Անտիգոնոս, թէպէտ եւ այնպէս անհնարին թշնամութեամբ էր ընդ նմա, ապրեցուցանէր զնա եթէ իւրքն թողացուցանէին նմա, զի իմանայր եթէ չէ հնար ումեք այնպէս թիկունք լինել նմա յիրսն, որ յայտ իսկ էր ամենեցուն եթէ մօտ առ կուրծս հասեալ է: Զի ի վերայ հասեալ կային Սեղեւկոս եւ Լիւսիմաքոս եւ Պտղոմէոս, զօրաւորք զօրութեամբ, ընդ որս վասն դահերէց

գլխաւորութեանն պարտ էր կռուել։ Այլ զայն չառնոյին յանձն որ շուրջն կային. քանզի տեսանէին, զի իբրեւ Եւմենէս ընկալցի, ամենեքին առ նմա փոքր ինչ թուեսցին։ Եւ Անտիգոնոս գլխովին այնպէս բորբոքեալ էր ցասմամբ, զի մեծաց իրաց յուսով եւեթ մարթ էր նմա մեղմանալ։

ԺԸ. Իսկ իբրեւ ետ զնա դնել ի պահեստի, եւ ստորին պահապանացն եհարց, թէ Զիա՞րդ կամիցի պահել. Իբրեւ զառեւծ, ասէ, կամ իբրեւ զազանագոյն փիղ։ Զի չեւ եւս հաստատեալ էր ի մտի, եթէ ապրեցուսցէ ինչ արդեւք զնա, թէ ոչ ապրեցուսցէ։ Եւ գային առ Եւմենէս երկոքին կողմանքն. եւ որք առ քինու նայել եւ ուրախ լինել ընդ նորա կործանումն կամէին, եւ որք վասն հին բարեկամութեանն խօսել ընդ նմա եւ մխիթարել յօժարէին. յոլովագոյնք եւս այն էին, որք զնորա կերպարանսն ճանաչել խնդրէին, թէ որպիսի ոք իցէ, յորմէ զայնչափ ժամանակս եւ այնպէս սաստիկ կասկածէին, եւ յորոյ ի կորստեան զյաղթութեան յոյսն ե-

գեալ էին։ Իսկ Նումենէս, իբրեւ ընդերկար ի կապանս կայր, առէր ցՍենոմարքոս՝ յոր յանձն էր վերակացութիւն պահպանութեան բանդին. Զարմանամ, ասէ, զի զերիս աւուրս այսպէս պահիցիմ. քանզի այդ Անտիգոնեայ իմաստութեանն չվայելէ զի այսպէս ընդ պարտելոյ գնայցէ, եւ ոչ հրաման տայցէ կամ սպանանել կամ թողուլ։ Իբրեւ յանդգնագոյնս բարբառեալ թուեցաւ նա Սենոմարքեայ, Թէ դու, ասէ, եթէ այդպիսի քաջութեան միտս ունէիր, ընդէ՞ր ոչ ի ճակատուն անկար[13], մինչ չեւ անկեալ ի ձեռս թշնամւոյն։ Տայր պատասխանի անդրէն Նումենէս Իցիւ, ասէ, այնպէս դէպք ային, այլ յայն սակս այն չդիպեցաւ, զի ոչ երբէք ընդ այնպիսումն՝ որ հզօրագոյն քան զիս իցէ, ի ճակատ մտի. զի եւ ոչ ընդ ումեք մարտ ետու, որ ոչ պարտեալ անկանիցի։ Եւ զի յաղթեցայ, այն ոչ եթէ թշնամեաց ինչ քաջութեամբ դիպեցաւ, այլ բարեկամացն նենգութեամբ։ Եւ զայն ոչ եթէ սութեամբ ինչ ասէր. զի եւ տեսլեամբ ազնուական էր, եւ ունէր պնդու-

թիւն եւ զօրութիւն առ ի ժոյժ ունելոյ աշխատութեան. մարմնադեղ եւ համեմատ կերպարանօք:

ԺԲ. Երդ քանզի Անտիգոնոս չըհամարձակէր առանձինն մճիւ տալ վասն նորա ի խորհուրդ առնէր ապատան: Ընդ գրեթէ ամենեքին զառաջինն խռովեալ զարմանային, եթէ չեւ եւս ածեալ էն պաշարժք պատուհասից ի վերայ նորա, որ զայնչափ ժամանակս այնպէս անհնարին չարիս ընդ նոսա անցոյց, մինչեւ բազում անգամ ի յուսահատութիւն իսկ հասանել, որ զմեծամեծ զօրաւարս նոցա սպան, եւ այնչափ ինչ զօրութիւն է ի նմա, զի որչափ սա կենդանի կայցէ, չմարթի նոցա ի զգուշութեան լինել, եւ եթէ մեռանիցի, չգուցէ ուստեք այնու հետեւ կասկած ինչ: Ապա ուրեմն զայն ասէին, զի եթէ զնա յաղթութիւն հանիցէ, զո՞ ունիցի այնու հետեւ իւր բարեկամս, զի ինքեանք Եւմենեաւ հանդերձ լինել առ նմա չառնուն յանձն: Իբրեւ այսպէս ըդմիտս խորհրդականացն իմանայր, խնդրէր իւր եւթնօրեայ ժամանակս զի խորհիցի: Այլ իբրեւ կասկածէր

զի մի գուցէ խռովութիւն ինչ ի զօրուն լինիցի, հրաման տայր մի ումեք առ նմա մտանել, եւ զօրքատօրէ կերակուրն չտալ. քանզի չառ յանձն բուռն լինել այնմ՝ որ երբեմն բարեկամեալ էր նմա։ Անդ ոչ ինչ աւելի քան զերիս աւուրս սովով նեղեալ, իբրեւ չուէր բանակն, առանց գիտելոյ Անտիգոնեայ, ի պահապանացն վտղոտեցաւ։

Գ․Ժ․ ԱՅՍՊԷՍ Եւմենէս ամաց քառասուն եւ հնգից, ի քսաներորդ ամաց հասակին, որպէս վերագոյնն ցուցաք, ամս եւթն Փիլիպեայ ի ծառայութեան եղեալ, եւ ամս երեքտասան առ Աղէքսանդրի ի նոյն գործ սպասաւորութեան կացեալ, եւ ի նմին ժամանակի թեւի միոջ հեծելոց ոստիկան լեալ, եւ յետ Աղէքսանդրի մեռանելոյ իշխան զօրագլուխ լեալ զօրաց, եւ զոմանս ի գլխաւոր զօրաւարացն մերժեալ եւ զոմանս սպանեալ, ըմբռնեալ ոչ Անտիգոնեայ ինչ քաջութեամբ, այլ մակեդոնացւոցն երդմնստութեամբ, ի կենաց վախճանէր։ Եւ թէ զինչ կարծիս զնմանէ կարծէին ամենեքին՝ որ յետ Աղէքսանդրի մեծի թագա-

ւորքն կացին, այս յայտ անտի է, զի ոչ ոք ի նոցանէ առ Եւմենեայ կենդանեաւք թագաւոր անուանէր, այլ կուսակալ. Նորին իսկ յետ սորա մեռանելոյ, փաղփաղակի արքունական հանդերձանս եւ անուն առնոյին։ Եւ ոչ որպէս իսկզբանն համբաւ հանին թէ Աղէքսանդրի որդւոց զթագաւորութիւն պահիցեն, զայն հաստատուն ունել յօժարէին. եւ իբրեւ բարձաւ դիմակաց հակառակորդն, զոր ի մտին ունէին հանին ի վեր։ Զայս ոճիր գործեցին Անտիգոնոս, Պտղոմէոս, Սեղեւկոս, Դիւսիմաքոս, Կասանդրոս։ Իսկ Անտիգոնոս զԵւմենեայ դին մերձաւորաց նորա տայր թաղել։ Նոքա ըստ զինուորութեան օրինի յուղարկաւորութեամբ թաղեցին, ուղեկից լեալ ամենայն զօրացն, եւ զոսկրոտին ի Գամիրս առ մայրն եւ կինն եւ առ որդիս նորա հասուցին։

# ՅԱՆԴԻՄԱՆՈՒԹԻՒՆ

Ա. ՓՈԿԻՈՆ բարի անուանեալ կոչի, եւ յաղքատութեանն խոտէ զպարգեւսն։ Բ. Ի ծերութեանն ատելի լինի վասն զքաղաքըն Անտիպատրեայ ի ձեռս տալոյ եւ զԴեմոսթենէս յաշխարհէ հանելոյ, եւ զՊիրեւս մատնելոյ։ Գ. Առնու պատիժս յաշխարհէն ի բաց գնալոյ։ Դ. Դատապարտեալ ի մահ մատնի եւ թաղի ի ծառայիցն։

# ԻՆՆԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ

# Փ Ո Կ Ի Ո Ն

## Ա Թ Ե Ն Ա Ց Ի

Ա. ՓՈԿԻՈՆ *աթենացի թէպէտ եւ բազում անգամ զօրավար եկաց զօրաց, եւ զգլխաւոր իշխանութիւնն կալաւ, այլ առաւել յայտ են նորա անարատ կեանք քան զինուորութեան վաստակն։ Վասնզի այսր չէք ինչ յիշատակ, իսկ այնր բազում ինչ որով եւ Բարի անուանեալ կոչէր։ Եւ էր համապազ աղքատ, իբրեւ մարթէր նմա մեծատուն լինել, վասն յաճախ մեծարանացն եւ պատուոց, եւ գլխաւոր իշխանութեանց՝ զոր տայր նմա ժողովուրդն։ Սա իբրեւ զՓիլիպպեայ արքայի զմեծամեծ պարգեւսն յետս դարձուցանէր, եւ սափպէին զնա հրեշտակքն ընդունել, եւ խրատ եւս տային նմա, զի եթէ նմա չիցէ փոյթ յայնց պարգեւաց անկանել, գոնէ զուստերացն հոգասցէ,*

որոց դժուարին իցէ յայնպիսի անհնարին աղքատութեան զայնչափ հայրենի փառաւորութիւնն ունել յանկատանի։ Նա պատասխանի տայր նոցա, Եթէ ինձ, ասէ, նմանք լինիցին, այն փոքր անդաստան սնուսցէ զնոսա, որ զիս յայսպիսի բարձ իշխանութեան հան, ապա թէ աննմանք ինչ լինելոց իցեն, չկամիմ եթէ իմովք ծախուք նոցա զեղխութիւն սնանիցի եւ աճիցէ։

Բ. ԻՍԿ ՍԱ մեծաւ յաջողութեամբ բախտին մինչեւ ցութսուն ամ հասակին ժամաներ, ի յետին ժամանակսն նախանձաբեկ լինէին ընդ նա իւր տոհմային քաղաքացիքն։ Նախ քանզի հանդերձ Դեմադեաւ վասն զքաղաքն ի ձեռս տալոյ Անտիպատրեայ միաբանեաց. եւ նորա խրատու Դեմոսթենէս ընդ այլոց՝ որք երախտաւորք քաղաքին համարէին, ռամկին հրամանաւ յաքսորս առաքեցան։ Եւ ոչ այնու եւեթ մնաս գործեաց, զկյառութեան խորհուրդ ի վերայ աշխարհին խորհեցաւ, այլ զի եւ ի բարեկամութեանն չեկաց հաստատուն։ Վասնզի ի Դեմոսթենեայ օգնականութիւն գտեալ, յաս-

տիճանն զոր ունէր, եւ, յորժամ յարգեալ գովեաց զնա Դեմոսթենէս ընդ հակառակս ելեալ Քարեսայ. եւ ի նմին առնէ, յորժամ մահու դատապարտ լինէր, պաշտպանութիւն գտեալ երբեմն, եւ գնաց ապրեալ ի պատժոց պատուհասից։ Արդ զսա ոչ միայն ի տագնապէն չարչարեցոյց, այլ եւ մատն եւս եղեւ։ Եւ միով իւիք առաւել յանցեաւ. զի յորժամ գլխաւոր իշխանութիւն ռամկին առ նմա էր, եւ ազդ լինէր նմա ի Դերկիւղեայ եթէ Նիկանովր Կասանդրի ոստիկան նենգ գործէ Պիրէայ աթենացւոց, որ եւ խնդրէր իսկ ի նմանէ զի փոյթ յանձին ունիցի, մի գուցէ ի պաշարել զրկեալ գտանիցի քաղաքն. փոկիոն լու ի լու ժողովրդեանըն ասէր, եթէ Չիք ինչ վտանգ, եւ խոստացաւ թէ ինքն իցէ ընդ այնր երաշխաւոր։ Եւ յետ ոչ բազում ինչ աւուրց ժամանակի Նիկանովր զՊիրեւս առ։ Եւ իբրեւ ժողովուրդն ի զէն ընթանայր զի հանցէ ի նմանէ, քանզի առանց այնր չկարէր լինել աթենացւոց քաղաքն, նա ոչ միայն ի զէն զոք ոչ կոչեաց, այլ եւ ոչ վառելոցն իսկ կամեցաւ ոստիկան լինել։

Գ. Իսկ ի նմին ժամանակի Աթենաս քաղաքի երկու բաժինք՝ յորոց մին ի ժողովրդենէ կուսէ էր, եւ միւսն յիշխանաց թերէ։ Ընդ սոսա էր Փոկիոն եւ Դեմետրիոս փաղերացի. եւ երկոցունց եւս կողմանց պաշտպանեին մակեդոնացիք. զի որ ռամկին թեկն ածէին Պողիսպերքոնտեայ նպաստ լինէին, իսկ աւագանին ընդ Կասանդրի միաբանեալ էին։ Յայնմ ժամանակի Կասանդրոս ի ձեռն Պողիսպերքոնտեայ մերժէր ի մակեդոնացւոց աշխարհէն. որով ռամիկն գեր ի վերոյ լեալ, վաղվաղակի վճիռ հատեալ ի վերայ գլխաւորաց հակառակ կողմանն, մերժէին զնոսա յաշխարհէն. ընդ նոսա էր եւ Փոկիոն եւ Դեմետրիոս փաղերացի. եւ վասն նորին իրաց պատգամաւորս առ Պողիսպերքոնտէս առաքէին, որ խնդրեցին ի նմանէ զի զնոցա վճիռն հաստատեսցէ։ Ընդ որ գնայր եւ Փոկիոն. յոր իբրեւ հասանէր, բանիւք հրաման տայր նմա զի պատասխանի վասն անձինն առնիցէ առաջի Փիղիպեայ արքայի, այլ արդեամբք առաջի Պողիսպերքոնտեայ. քանզի նա կայր յայնժամ ի վերայ արքու-

նի իւրաց ։ Ընդ ամբաստանութիւն լեալ զնմանէ յԱփնոնիդեայ թէ զՊի-րեւս ի ձեռս ետ Նիկանորայ, խոր-հրդականաց վճռովք ի պահտուեալ յԱթէնս առաքէր, զի անդրէն ըստ օրինացն դատաստան լիցի զնմանէ ։

Գ. ԻԲՐԵՒ հասին անդր, քանզի վասն հասակին տկար էր յաւուց, կա-ռօք ածեալ գայր, բազում ամբոխ անդէն ի տեղւոջն կուտէր. ոմանք զառաջին համբաւն զմտաւ ածեալ, տիոցն գթային, այլ յոլովագոյնք այն էին, որ բարկութեամբ զայրա-նային վասն կարծեացն Պիրեայ մա-տնութեան, եւ մանաւանդ զի ընդ-դէմ ռամկին կամաց եկաց ի ծերու-թեանն ։ Նմին իրի եւ ոչ խօսս իսկ արկանելոյ թողութիւն լինէր նմա, եւ պատասխանի տալոյ ։ Եւ անդէն զկարգս ինչ օրինացն կատարեալ դա-տաստանաւ պարտաւոր առնէին. եւ տային ի ձեռս արանց մետասանից, որոց սովոր էն աթենացիք տալ զայ-նոսիկ՝ որ հրապարակաւ պարտաւո-րեալքն իցեն ։ Եւ իբրեւ ածէին զնա սպանանել, ընդ առաջ եղեւ Նմ-փիւղետոս՝ որ բարեկամ լեալ էր նո-րա, եւ իբրեւ ասէր ցնա արտասուօք,

Ո՛Հ որպիսի ինչ անարժանս կրես Փոկիոն. Նա տայր պատասխանի, թէ Ոչ արտաքոյ ակնկալութեան էին զոր կրեմն, զի այսպիսի վախճան եղեւ բազմաց արանց աթենացւոց երեւելեաց։ Եւ այնպէս գարշէին խորշէին ի նմանէ խառնիճաղանճն, զի ոչ ոք յաղատաց անտի համարձակեցաւ թաղել զնա, վասն որոյ եւ ի ծառայից թաղեցաւ։

## ՅԱՆԴԻՄԱՆՈՒԹԻՒՆ

Ա. ՏԻՄՈԼԷՈՆԴ զհայրենի գաւառն յազատութիւն հանեալ, զբռնաւոր եղբայրն ի միջոյ եբարձ։ Բ. ԶԴիոնիսոս ի սիկիղացւոց աշխարհէն մերժեալ ի Կորընթոս առաքեաց. Իկետայ յաղթեաց. զկարքեդոնացիս վարատեաց. զՄամերկոս ձերբակալ արար։ Գ. Յետ նորոգելոյ զկրան կղզւոյն, զիշխանութիւն ի բաց եթող։ Դ. Յորժամ կացին աչք նորա, դեսպակաւ շրջէր. բախտին մեհեան շինեաց։ Ե. Թէ համբերէր թշնամանաց. օր ծննդեան նորա. թաղումն։

ՔՍԱՆԵՐՈՐԴ

# Տ Ի Մ Ո Ղ Ե Ւ Ո Ն Դ

## Կ Ո Ր Ը Ն Թ Ա Ց Ի

Ա. ՏԻՄՈՂԵՒՈՆԴ կորընթացի։ Արդարեւ մեծ ումն էր այրս այս, որպէս ամենեքին համարին. քանզի նըմա միայնոյ դէպք եռուն, որ չգիտեմ եթէ այլում ումեք դիպեալ իցէ, զի եւ զաշխարհն յորում ծնաւն, որ ի բռնաւորացն նեղէր անհնարին, յազատութիւն հանիցէ, եւ ի սիրակուսացւոց աշխարհէն, յորոց յօգնականութիւն գնաց, զհին ծառայութիւնն ի բաց բարձցէ, եւ ըզհամօրէն Սիկիղիա՝ որ զամս բազումս ի պատերազմաց նեղէր եւ ի հինէ ըլկէր, ինքնին եկեալ յառաջին կարգըն հաստատիցէ։ Այղ յայսմ ամենայնի մերթ աջողէր նմա եւ մերթ ձախողէր. եւ որ աւելի դժուարինն կարծի, առաւել իմաստութեամբ զաջողութիւն բախտին ի կիր արկա-

նէր քան զչաջողութիւնն ։ Քանզի իբրեւ նորին եղբայր Տիմոփանէս ի կորնթացւոց զօրաւար ընտրէր, վարձկանութիւնս օգնականութեան ինքեան գումարեալ բռնանայր, եւ մարթէր նմա բաժանակից արքայութեանն լինել, այնպէս հեռի էր ի հաղորդութենէ չարեաց գործոցն, զի զիւրոց տոհմային քաղաքացեաց ազատութիւն նախամեծար քան ըզկեանս եղբօրն առնէր, եւ աշխարհին օրինաց հպատակ կալ լաւ համարէր քան հրաման տալ աշխարհին ։ Զայս ածեալ զմտաւ, ի ձեռն հաւատարմին եւ հասարակաց խնամւոյ ուրուք, ընդ որում քոյրն իւր միահայր եւ համամայր ամուսնացեալ էր, զեղբայրն զբռնաւոր փոյթ ի մտի ունէր սպանանել ։ Այլ ինքն ոչ միայն անձամբ զիրան չկամէր վճարել, այլ եւ հայել իսկ ընդ եղբօրն արիւն չառյանձն. զի եւ իբրեւ ինքն ի գլուխ ելանէին, ինքն ի բացեայ կայր պահապանօք, զի մի ոք յիւրոց անձնապահաց նմա ի թիկունս հասանիցէ ։ Զայս նշանաւոր գործս նորա ոչ նոյնպէս ամենեքին յարգեալ գովեն. զի ոմանք այնպէս համարէին եթէ ա-

նենգաւորութիւն գործեաց, եւ առ նախանձու քաջութեան նորա բիծ գնել կամէին։ Իսկ մայրն յետ իրացն ի գլուխ ելանելոյ, չընկալաւ զորդին առ իւր, եւ յորժամ տեսանէրն զնա թշնամանելով եղբայրասպան եւ անօրէն կոչէր։ Այնչափ ի խոր խոցէր նա ի բանից անտի, զի բազում անգամ զիւրովին երթալ յօժարէր, եւ մահուամբ հեռանալ ի տեսլենէ ապախտաւոր մարդկանն։

Ի. Ի ԺԱՄԱՆԱԿԻ յորժամ Դիոն ի սիրակուսացւոց քաղաքին սպանանէր, Դիոնիսոս վերստին զՍիրակուսաս ըմբռնէր. Նորին հակառակորդք թիկունս օգնականութեան ի կորընթացւոց խնդրէին եւ զօրաւար՝ որ գլխաւոր կացցէ նոցա յայսմ մարտի։ Անդր առաքեալ Տիմողեւոնդ, չաւատալի աջողութեամբ զԴիոնիսոս ի համօրէն սիկիլացւոց աշխարհէն մերժէր։ Եւ թէպէտ եւ սպանանել եւս ձեռնհաս էր, այլ չկամեցաւ, եւ փոյթ յանձին ունէր զի զգուշութեամբ ի Կորինթոս հասանիցէ. զի յերկոցունց Դիոնիսացն բազում անգամ օգնականութիւն գտեալ էին կորընթացիքն եւ կամէր զի այնր մար-

դաւիրութեան յիշատակ մնայցէ. եւ զայն մեծապայծառ յաղթութիւն համարէր, յորում գթութիւն առաւել էր քան զանադորունութիւն. եւ զի մի միայն ակընջօք լուիցեն, այլ եւ աչօք տեսանիցեն եթէ զո ոք եւ յորպիսի թագաւորութենէ յոր խոնարհութիւն իջոյց: Յետ Գիոնիսեայ ի բաց գնալոյ, ընդ Իկետայ ի մարտ պատերազմի բախէր, որ ընդդէմ եկաց Գիոնիսեայ. եւ զի ոչ առ ատելութեան ինչ բռնաւորութեանըն, այլ իշխանութեան ցանկութեամբ զայն գործեաց, յայտ անտի է, զի ինքն յետ Գիոնիսի բռնալոյ, չկամէր թողուլ զիշխանութիւնըն: Նմա եւս գեր ի վերոյ լեալ Տիմոլեւոնդեայ, զկարթեդոնացւոց յաճախադունդ զօրս առ Կրիմիսոս գետով ի փախուստ դարձուցանէր, եւ այնչափ շատ տագնապի ի վերայ հասուցանէր, զի շատ եւ բաւական համարէին եթէ հնար ինչ իցէ զղիբէացւոց աշխարհն ունել, ուր յառաջագոյն ի բազում ժամանակաց զսիկիղիացւոց աշխարհն ըմբռնեալ ունէին: Նա եւ զՄամերկոն, զիտաղական զօրաւարն, զայր դառ պա-

տերադմող եւ զօրաւոր , ունէր , որ ի սիկիոնացւոց աշխարհն յօգնականութիւն բռնաւորացն եկեալ էր :

Գ․ Յետ այսոց իրաց կատարելոց , քանզի վասն երկայնժամանակեան պատերազմին ոչ միայն զգաւառս այլ եւ զքաղաքսն զլխովին անապատս եւ աւերեալս տեսանէր , ժողովէր ածէր որչափ ինչ մարթէր նախ զսիկիոնացիս . եւ ապա ի կորընթացւոց քաղաքէն վարատականս կոչէր , զի եւ ի նոցանէ իսկզբանն սիրակուսացւոց քաղաքն հաստատեալ եկաց : Առաջնոց քաղաքացւոց զիւրեանց ինչսն դարձուցանէր , եւ նորոցն զարարսն` որ թողեալ լքեալ էր ի պատերազմին , բաշխէր . զպարիսպս քաղաքացն զկործանեալս եւ զմեհեանսըն զքակեալս նորոգէր , եւ զքաղաքսն ինքնաւրէնս աղխկամիս թողայր : Յետ այնպիսի անհնարին պատերազմի այնպիսի շինութեան համօրէն կղզւոյն առիթ լինէր , զի սա շինիչ քաղաքացն կարծէր , եւ ոչ եթէ որք իսկզբանն շինեցին ածեալ գաղթականս : Զգղեակն ի սիրակուսացւոց քաղաքին , զոր Դիոնիսոսն ամբացոյց , առ ի զքաղաքն

պաշարելոյ, ի հիմանց բրէր. եւ զայլ եւս պատուարս բռնակալութեանն քակէր, եւ փոյթ յանձին ունէր, զի մի ինչ նշանակ ծառայութեան մնասցէ: Իբրեւ այնպէս զօրաւոր էր, զի եւ յակամայ կամս նոցա մարթէր բռնանալ եւ իշխել, եւ այնպէս սիրելի էր յաչս ամենեցուն սիկեղացւոց, զի ոչ ոք ընդդէմ կայր նմա եթէ թագաւորել ինչ խնդրէր, առաւել ընդ սիրելին լինել կամեցաւ, քան ատելին երեւել: Վասն այնորիկ վաղվաղակի ի բաց եթող զթագաւորութիւնն, եւ իբրեւ զմի ի ժողովրդենէն կայր ի սիրակուսացւոց քաղաքին զամենայն ժամանակս որչափ եւ եկեաց: Զայդ ոչ անմտութեամբ ինչ գործեաց, զի որում այլ թագաւորք ճոխութեամբն հազիւ թէ ձեռնհաս եղեն, սա գթով իմն ունէր: Եւ ոչ մի ինչ պատիւ պակաս էր ի նմանէ, եւ ոչ յետ այնորիկ իրս ինչ հրապարակաւ ի սիրակուսացւոց քաղաքին գործէին, զորմէ վճիռ լինեալ էր, մինչ չեւ հարցեալ զՏիմողեւոնդ թէ յինչ միտս իցէ: Եւ քան զնորա խորհուրդն ոչ միայն զուրուք խորհուրդ նախամե-

ծառ չառնէին, այլ եւ ոչ ընդ այնմ ի կշիռ անգամ մուծանէին։ Եւ այս ոչ միայն գթով եւ խնամով քաղաքացեացն եղեւ, այլ եւ նորա իմաստութեամբն։

Գ. Նա իբրեւ անցեալ էր զաւուրբք, առանց իրիք խաւթութեան կացին աչք նորա։ Այնպէս առնէր վշտացն այնոցիկ, որպէս զի ոչ ոք լուաւ նմա թէ տրտնջէր, եւ ոչ ինչ արգել լինէր նմա այն յառանձինն եւ ի հասարակաց իրս դատանելոյ։ Եւ գայր իսկ ի թատրոն, իբրեւ ժողովք ժողովրդեան անդէն լինէին, վասն հիւանդութեան անդրուարօք ի կառս լծելովք, եւ այնպէս ի կառաց անտի զխուր միտս յայտ առնէր. եւ չէր որ զայն ամբարտաւանութեան դրեր։ Զի եւ ոչ բան ինչ անզգամութեան եւ ոչ պարծանաց ել երբեք ի բերանոյ նորա։ Եւ իբրեւ բանս ինչ գովութեան զանձնէ լսէր, ոչ այլ ինչ երբեք առնէր, բայց միայն եթէ զդիցն գոհանայցէ եւ երախտաւորս համարիցի զնոսա, զի յորժամ կամեցին զնախկինդացուց աշխարհն նորոգել, զնա յօժարեցին առնել զօրավար։ Վասնզի եւ համարէր իսկ

այնպէս ուրեմն ոչ ինչ ի մարդկօրէն ի-րաց առանց աստուածոցն հրամա-նաց դիպիցի: Վասն այնորիկ առ-անին իսկ մեհեան ինքնադէպ պա-տահարացն կանգնէր, եւ զայն խը-նամով պաշտէր:

Լ. Ըստ այնպիսի առաւել լաւու-թեան առնուն զարմանալի պատահարք յաւերան, զի զամենայն մեծամեծ պատերազմունս յաւուր ծննդեան մղեաց, ուստի եւ զօր ծննդեան նո-րա ամն խմբէր համօրէն սիկիլացւոց աշխարհն: Յործամ այր մի Դամե-նետոս անուն, լիրբ եւ ապախտաւոր, ամա կամէր օր գնել եւ ժամ սահ-մանել. զի առնէր բա խօսեցայց ընդ-նմա օրինօք, եւ բազումք միախոհուն գրմէին, որք զառնն ժպրհութիւն ձեռնամբք փութային կարճել. ա-զաչեաց Տիմոլեոնդ զամենեսեան, զի մի զայն գործիցեն: Զի վասն այ-նորիկ, ասէ, ես ի մեծ աշխատու-թիւնս եւ ի բազում վիշտս արկի զանձն, զի այդ համարձակ լիցի Դա-մենետեայ եւ այլոց: Քանզի եւ այն ազատութեան է, թէ ամենեցուն զինչ ոք եւ կամիցի, համարձակու-թիւն իցէ զիրաւունս յանդիման կա-

ցուցանել։ Նոյն դարձեալ, յորժամ ումն հանգոյն Ղամեստեայ, որ Դեմենետոսն անուանեալ կոչէր, ի ժողովս ժողովրդեան սկսաւ բամբասել զգործս նորա, եւ խաղայր իմն Թըշնամանօք ի վերայ Տիմողեւոնդեայ, Այժմ, ասէ, եղեւ զոր ըղձայինն. զի զայդ ի դիցն անմահից հանապազ խնդրէի, զի այնպէս ազատութիւն սիրականացն շնորհիցեն, որպէս զի որեւպէտ ոք զոր ինչ եւ կամիցի, առանց պատժոց պատուհասից խօսիցի։ Այս յորժամ վախճանեաց ըզկեանս իւր հասարակաց ծախիւք սիրականացն ի տեղւոջ հրահանգացըն, որ Տիմողեւոնդեայն կոչի, Թաղէին, եւ ամենայն քաղաքն ժողովեալ երթայր զհետ։

## ՑԱՆԴԻՄԱՆՈՒԹԻՒՆ

Ա. ԸՆՈՒՌՆԵՌ. *Թագաւորք ազարաց. Պարսից Թագաւորք երեւելի իշխանութեամբ Կիւրոս, Դարեհ, Քսերքսէս, եւ երկու Արտաշէս։* Բ. *Փիլիպպոս, Աղեքսանդրոս, Պիւռոս, Դիոնիսոս։* Գ. *ՅԱղեքսանդրի բարեկամաց Անտիգոնոս, Դեմետրիոս, Ղիւսիմաքոս, Սելեւկոս, Պտղոմէոս։*

## ՔՍԱՆԵՐՈՐԴ ԱՌԱՋՆՈՐԴ

## ՎԱՍՆ

# ԹԱԳԱՒՈՐԱՑ

Ա. ՍՈՔԱ գրեթէ եղեն Յունաց զօրաւարք, որք միշտառակաց ար-ժանի թուէին, բայց միայն ի թա-գաւորաց. եւ զնոցանէ ճառել ինչ չկամեցաք, քանզի արուութիւնք ինչ որ ի նոցանէ գործեցան, մանր մի ըստ միոջէ հարան ի մատեանի. եւ ոչ իսկ բազումք իցեն: Զի Լակեդմո-նացին Ագեսիղաւոս անուամբ եւ ոչ եթէ իշխանութեամբ թագաւոր ե-կաց, որպէս եւ այլքն սպարտացիք: Արդ ի նոցանէ որ զմիահեծան իշ-խանութիւն կալան, նշանաւորք ե-ղեն, որպէս մեզն թուի, Պարսից Կիւրոս եւ Դարեհ Վշտասպեայ որ-դի. եւ իւրաքանչիւր ոք ի նոցանէ ի հասարակաց կարգաց իւրով քաջու-թեամբն զարքայութիւնն ըմբռնէր: Առաջինն ի նոցանէ առ Մասագե-

տօք ի ճակատ մտեալ անկանէր. իսկ Դարեհ ի ծերութեանն ժամանակի ի կենաց վճարէր։ Դարձեալ այլ եւս երեք են անդստին ի նմին ազգէ. Քսերքսէս եւ երկու Արտաշէսք, Երկայնաբազուկն եւ Ուշեղ։ Քսերքսի այն իմն առաւել երեւելի է, զի անհնարին զօրօք ի ծովու եւ ի ցամաքի ի կռիւ ընդ Յունաց աշխարհին բախէր։ Երկայնաբազուկն Արտաշիսի գովութիւն մանաւանդ այն է, զի գեղեցիկ էր նա, եւ ամենեւին համեմատ անդամովք մարմնոյն, զոր եւ ազնուազոյնս պատերազմի քաջութեամբք զարդարէր. զի եւ չէ իսկ ոք ի Պարսից աշխարհին, որ զօրաւոր քան զնա իցէ։ Իսկ Ուշեղն Արտաշէս արդարութեանն պարծանօք նշանաւոր լինէր։ Քանզի իբրեւ իւրոյ մօրն ժանտութեամբ կինն կոբեաւ[16], ի սաստիկ տրտմութիւն կործանէր, բայց յաղթէր տրտմութեանըն գութ մօրն։ Սոքա երկոքեան անուանակիցք յախտ հիւանդութեան անկեալ զբնութեանն պարտիս հատուցանէին. իսկ մեւս եւս երրորդն յԱրտաւանայ սատիկանէ սրով սպանանէր։

Ր. Իսկ ի Մակեդոնացւոց ազգէն երկու ոմանք գեր ի վերոյ եղեն զամենեքումբք քաջութեամբ իւրեանց զոր գործեցին. Փիղիպպոս Ամինտեայ ուստր եւ Աղեքսանդրոս Մեծ: Աղեքսանդրոս ի բաբեղացւոց աշխարհին խաւթացեալ մեռանէր. Փիղիպպոս յԱնգիս ի Պաւսանեայ, իբրեւ ի տեսիլս խաղուցն երթայր, առանձին թատերին սպանանէր: Մի յեպիրացւոց Պիւռոս, որ ընդ Հռոմայեցիս ճակատս եդ: Սա յորժամ ընդ արգիացւոց քաղաքին պատերազմէր, ի պեղապոնեսացւոց աշխարհին, քարիւ հարեալ սատակէր: Դարձեալ մի ոմն սիկեղացի, Դիոնիսոս երէցն, քանզի եւ զօրաւոր էր զօրութեամբ եւ տեղեակ իրաց պատերազմի. եւ որ ի բռնաւորն ոչ դիւրաւ գտանի, չէր ինչ անառակ, ոչ պագշոտեալ, ոչ ագահ, եւ ոչինչ իրաց ցանկայր, բայց միայն միահեծան եւ մշտնջենաւոր իշխանութեան, ուստի եւ անագորոյն էր: Զի իբրեւ ջանայր զայն պատսպարել, չխնայէր կենաց ուրուք զոր դարանակալ այնմ կարծէր: Նորով քաջութեամբ զբռնակալութիւնն ըմբռնեալ բազում աջողու-

թեամբ ունէր, եւ ի վաթսուն ամաց հասակի վախճանէր յաճել եւ ի պայծառանալ թագաւորութեանն: Նա ոչ յայնչափ բազում ամս կենաց իւրոց եւեթ զմահ ուրուք յիւրմէ զարմէն, թէպէտ եւ յերից կանանցն իւրոց որդիս ծնանէր, եւ բազում թոռունք ծնան նմա:

Գ. ՅԵՏ.ՍՆ դարձեալ թագաւորք մեծամեծք ի բարեկամաց անտի Աղէքսանդրի մեծի, որք յետ նորա մեռանելոյ, զնորա արքայութիւնն կալան. յորս էր Անտիգոնոս եւ նորին որդի Դեմետրիոս, Լիւսիմաքոս, Սելեւկոս, Պտողոմէոս: Ի նոցանէ Անտիգոնոս, իբրեւ ընդ Սելեւկեայ եւ Լիւսիմաքեայ բախէր պատերազմաւ, սպանանէր ի ճակատուն: Նոյնպիսի մահու եւ Լիւսիմաքոս ի Սելեւկեայ վախճանէր: Քանզի իբրեւ ի միմեանց քակէին, ի մարտ պատերազմի ընդ իրեարս անկանէին: Իսկ Դեմետրիոս իբրեւ զիւր դուստր Սելեւկեայ այր կնութեան, եւ ոչ այնպէս հաստատուն ի միջի բարեկամութիւնն մնայր, ըմբռնեալ ի պատերազմի, աներն ի դիպահւոջ փեսային ախտիւ ջերեալ մեռանէր:

Ոչ յետ բազում ժամանակաց Սեղեւկոս, նենգ գործեալ նմա Պտղոմեայ բարկութեանն, սատակէր, զոր ընկալաւ, յորժամ ի հօրէն մերժեալ Պտղոմէոս յաղէքսանդրացւոց քաղաքէն, կարօտ էր այլոցն օգնականութեան։ Նա ինքն իսկ Պտղոմէոս, երբեւ իւրով կենդանեաւք զարքայութիւնն իւրում որդւոյն տայր, ի նմանէ անդէն սպանեալ աւեն։ Զսոցանէ քանզի շատ իսկ ասացեալ համարիմ, ինձ ի դէպ թուի չթողուլ զԱ՛միղկար եւ զԱ՛ննիբաղ, զի յայտ է թէ որքա քաջութեամբ եւ իմաստութեամբ առաւել եղեն քան զամենեսեան որ յափրիկեցւոց աշխարհին ծնան։

# ՅԱՆԴԻՄԱՆՈՒԹԻՒՆ

Ա. ԱՄԻԼԿԱՐ զկարքեդոնացւոց իրս ի լաւանդր փոփոխեաց։ Բ. Խաղաղութիւն աբարեալ, զապստամբսն խուճապեցոյց ի սուր սուսերի իւրոյ. եւ հաստատեաց ընդ խաղաղութիւն աշխարհին։ Գ. Իսպանիա առաքեալ զԱննիբաղ զիւր որդի տարաւ ընդ իւր, եւ զԱսդրուբաղ որում զիւր դուստրըն խօսեցաւ։ Դ. Իսպանիացւոց աշխարհին անկաւ։

## ՔՍԱՆԵՐՈՐԴ ԵՐԿՐՈՐԴ

# Ա Մ Ի Ղ Կ Ա Ր

## Կ Ա Ր Ք Ե Դ Ո Ն Ա Ց Ի

Ա. ԱՄԻՂԿԱՐ Աննիբաղայ ուսար որոյ անուն յորջորջանաց Բարկան ճանաչէր, կարքեդոնացի, յառաջնում պունիկական պատերազմին, այղ ի յետին ժամանակին, մինչ դեռ մանուկ իսկ էր, սկիզբն առնէր զօրաւարել զօրաց ի Սիկիղիա: Մինչ չեւ եւս էր եկեալ նորա, եւ ի ծովու եւ ի ցամաքի ձախողէին իրք կարքեդոնացւոցն. այլ յորմէ հետէ նա մօտ էր, թշնամեաց երբեք չետ տեղի, եւ ոչ իսկ մնասելոյ պատճառս ետ: Նորին հակառակ բազում անգամ, ի լինել դիպաց պատերազմի նեղէր զնոսա, եւ հանապազ գեր ի վերոյ լինեալ ի ճակատուէն ելանէր: Որով իբրեւ գրեթէ զամենայն ինչ ի սիկիղացւոց աշխարհին կարքեդոնացիք կորուսանէին, նա զԷրիկէ այն-

պէս իմն պատապարէր, զի թուէր այնպէս եթէ չիցէ անդէն պատերազմ մղեալ։ Յայնմ ժամանակի կարքեդոնացւոց ի նաւամարտիկ կռուին առ Եգատես կղզեօք հարեալ ի Կ. Ղուկտատեայ Հռոմոց բդեշխէ, գնէին ի մտի զրաւ առնել պատերազմին, եւ յանձն առնէին զերան Ամիղկարայ, զի ըստ մտի ի գլուխ հանիցէ։ Նա թէպէտ եւ վառէր բորբոքէր ցանկութեամբ պատերազմելոյ, սակայն խաղաղութեան դաշինս կռել լաւ համարէր. քանզի տեսանէր, զի նեղեալ ի բազում ծախուց էր աշխարհն, եւ չկարէր այնու հետեւ բազում ժամանակս ժոյժ ունել տառապանաց մարտին. այլ խորհէր այնպէս զի իսկ եւ իսկ յետ սակաւ ինչ նորոգելոյ եւ արծարծանելոյ, անդէն ի պատերազմ գրգռեալ, զհռոմայեցիս հարկանիցէ զինուք, մինչեւ գեր ի վերոյ լինիցին կամ յաղթեալ ինոցանէ ձեռս տայցեն։ Այնպիսի մտօք խաղաղութեան դաշինս ի միջի հաստատէր, եւ այնչափ վայրենեալ ինոսին, զի յորժամ Կատուղոսն չառնոյր յանձն խաղաղութեան դաշինս կռել, թէ ոչ

նա իւրովքն հանդերձ՝ որք զնորիւկէ
կալան, զենընկէց դէմ եդեալ տա-
րադէմ իսիկիղացւոց աշխարհէն դը-
նայցեն, ասէր թէ Յետ նկուն լինե-
լոյ հայրենի աշխարհին լաւ է ինձ մե-
ռանել, քան եթէ այնչափ թշնա-
մինօք հանդերձ դառնալ յաշխարհն։
Զի ոչ իւրոյ քաջութեանն համա-
րէր զզէնսն զոր յաշխարհէն առ հա-
կառակ թշնամեացն, այլ ի ձեռս
հակառակորդացն։ Նորա պնդու-
թեանն հաւանեցաւ Կատուղոս։

Բ. Մ, 81. Նա իբրեւ եկն ի Կարքե-
դոն, գիտաց թէ կարի իսկ այլակերպ
քան զոր ինքն կարծէր, է աշխար-
հըն։ Զանզի յայնչափ երկայնժա-
մանակեան չարեացն արտաքնոց,
այնպէս ներքին պատերազմն դրդը-
ւէր, զի ոչ երբէք յայնպիսում վը-
տանգի եղեւ կարքեդոնացւոց աշ-
խարհն, բայց միայն յորժամ յա-
տակաց բրեցաւ։ Նախ զօրքն՝ զորս
յօտարականզմն կուտաց գումարեցին,
ընդդէմ հռոմայեցւոց, յետս կալին,
եւ էր թիւ համարոյ նոցա քսան հա-
զարաց։ Սոքա զամենայն աֆրիկե-
ցւոց աշխարհն յապստամբութիւն եւ
ի խակագործ ստահակութիւն գրր-

դուէին, եւ ընդ կարքեդոնացւոց քա-
ղաքին կռուէին ։ Այնպէս զահի հա-
րան ի չարեաց անտի կարքեդոնացիք
զի զօրաւիգն օգնականութեան ի
հռոմայեցւոց խնդրէին. եւ ընկալան
իսկ ։ Այլ ապա ուրեմն յորժամ ի
յուսահատութիւն հասանէին, զԱ-
միլկար իշխան հրամանատար կար-
գէին ։ Սա ոչ միայն զթշնամիս ի
պարսպաց կարքեդոնացւոց քաղա-
քին իբաց մերժէր, յորժամ աւելի
քան զհարեւր հազարս վառելոց է-
ին նոքա, այլ եւ այնպէս ինեղ ար-
կանէր, զի յանձուկ վայրս փակեալ,
բազումք սովով անկանէին քան թէ
սրով ։ Զամենայն քաղաքսն որ յետս
կացին, ընդ որս եւ զՈւտիկա եւ զԻ-
պոն, որ քան զհամօրէն քաղաքս
ողջոյն իսկ ափրիկեցւոց աշխարհին
ամրագոյնք են, դարձուցանէր ան-
դրէն ։ Եւ ոչ զայն ինչ շատ համա-
րէր, այլ եւ զսահմանս իշխանու-
թեանն տարածանէր. եւ այնպիսի
խաղաղութիւն ամենայն ափրիկե-
ցւոց աշխարհին պարգեւէր, զի թը-
ւէր եթէ ի հարուստ ամաց չիցէ ինչ
մարտ պատերազմի լեալ յաշխարհի
անդ ։

Գ. Այս ամենայն իրք իբրեւ ըստ մտի յաջողէին նմա, համարձակութիւն առեալ եւ ընդ Հռոմայեցիս ոխացեալ, զի դիւրաւ պատճառանս ինչ մարտի գտանիցէ, փութայր զի զօրաւոր լեալ զօրօք իսպանիացւոց աշխարհն տուաքեացի. ածէր անդր ընդ իւր եւ զորդեակն իւր զԱննիբաղ, որ էր ամաց իննուց: Եւ ընդ նմա եւ պատանի երեւելի, գեղեցիկ, Անդրուբաղ անուն, զորմէ ասէին ոմանք, թէ աւելի իմն քան զդէպն սիրիցէ զնա Ամիլկար. զի չէր մարթ չարախօսացն յայնպիսի առնէ պակաս լինել: Ուստի արգել Անդրուբաղայ ամօթիկան բարոյից զի ընդ նմա կայցէ: Այլ Ամիլկար տայր նմա զիւր դուստր կնութեան, զի ըստ նոցա սովորութեանն չմարթէր փեսային արգելուլ յաներոյ: Վասն այնորիկ յիշատակեցաք զնմանէ, զի յետ Ամիլկարայ սպանանելոյ, նա կայր ի վերայ զօրաց, եւ իբրեւ մեծամեծս գործէր, եւ զառաջինն առատութեամբ զհին վարս Կարքեդոնացւոց եղծանէր: Եւ յետ նորա մահուն, Աննիբաղ ի զօրաց անտի առնոյր զիշխանութիւնն:

Գ. Ացգ. Ամիլկար իբրեւ ընդ ծովն անց, եւ իսպանիացւոց աշխարհն եկն, բազում իրս աջողութեամբ ի գլուխ հանէր. ազգս մեծամեծս եւ պատերազմօղս ընդ իւրեւ նուաճէր. զհամօրէն աշխարհն աֆրիկեցւոց երիւարօք, զինուք, մարդկաւ, կարաւով ընչաւէտ առնէր: Եւ իբրեւ ածէր նա զմտաւ դումարել ի պատերազմ ի վերայ խոտաղացւոց աշխարհին, յետ ինն ամաց անցանելոյ նորա իսպանիացւոց աշխարհն, ի ճակատուն մինչ դեռ ընդ վետտոնացիս կռուէր, սպանաւ: Թուի ինձ եթէ որա մշտնջենաւոր ընդ հռոմայեցւոց ատելութիւն պատճառք եղեն երկրորդ պունիկական պատերազմին. զի Աննիբաղ նորին ուստր, հանապազորդ հօրն խնդրուածովք յայն եհաս, զի լաւագոյն համարէր մեռանել, քան ընդ հռոմայեցւոց չըմտանել ի կռիւ:

# ՑԱՆԴԻՄԱՆՈՒԹԻՒՆ

Ա. ԸՆՆՈՒՐՈՂ, մեծ քան զամենայն զօրաւորս, ի նախանձուէ անօրինացն ի տկարութիւն Հռոմնէ: Բ. Զփիլիպպոս եւ զԱնտիոքոս ընդ Հռոմայեցւոց գրգռէ, վասըն թշնամութեան զոր ընդ Հռոմայեցւոց ունէր ժառանգութեամբ: Գ. Զօրաւոր լինել զՍպանիանուանճէ, զՍադուկոսոս վանել վկանդէ, ընդ պիւրենական խախոմնն եւ ընդ Աղպս յիտաղիա անցանէ: Դ. Առողանեաւ եւ Պադաւ եւ Տրեբեաւ եւ Տրասիմենեաւ եւ Կանեաւ Հռոմայեցւոց յաղթեաց: Ե. Զփաբիոս, խաբէ. Ոռուփայ, Գրակքեայ, Մարկեղայ յաղթէ: Զ. Ցիւրում աշխարհին ի Սկիպիոնէ ի պարտութիւն մատնի: Է. Ցետ խաղաղութեան լինելոյ երկուցեալ թէ գուցէ տացի ի ձեռըս Հռոմայեցւոցն, առ Անտիոքոս փախըստական գնայ: Ը. Զուր գրգռէ զկարքեդոնացին ի մարտ պատերազմի, եղբայրըն մեռանի, տայ պատերազմ ընդ Հռոմայեցւոց: Թ. Ցետ Անտիոքայ փախստեայ գնալոյ, զկծծի կրետացին պատրէ: Ժ. Զպրուսիացւոց աշխարհն ընդ Հռոմայեցւոց դէմ գրգռէ: ԱԺ. Ընդ Եւմենեայ մարտուցեալ խէժս ինաւսն ընկենու: ԲԺ. Իբրեւ խնդրեցաւ ի Հռոմայեցւոց եւ պաշարեցաւ, դեղ առեալ ի կենաց վախճանի: ԳԺ. Ցայնչափ պատերազմաց մէջի զդրոց փոյթ յանձին կալաւ:

ՔԱՌԱՍՆԵՐՈՐԴ ԵՐՐՈՐԴ

# ԱՆՆԻԲԱՂ

## ԿԱՐՔԵԴՈՆԱՑԻ

Ա. ԱՆՆԻԲԱՂ Ամիլկարայ ուստր կարքեդոնացի: Եթէ ճշմարիտ իցէ, զորմէ չկասկածէ ոք, եթէ Հռոմոց ազգն անցոյց զանցոյց զամենեքումբք քաջութեամբ, չմարթի ուրանալ եթէ Աննիբաղ այնչափ առաւել քան զայլ զօրաւարսն եղեւ իմաստութեամբ, որչափ Հռոմայեցւոց ազգն քան զայլ ամենայն ազգսն նշանաւոր զօրութեամբ. զի քանիցս անգամ ճակատու եւ ընդ նոսա յիտալացւոց աշխարհին, հանապազ գերի վերոյ լինէր: Եւ եթէ չէր իւրոց տոհմային քաղաքացւոցն նախանձու ակարացեալ, թուէր թէ Հռոմայեցւոց յաղթիցէ. այլ բազմաց չարախօսութիւն զմիոյ ուրուք քաջութիւն եղծ: Բայց նա զհայրենի ատելութիւնն առ Հռոմայեցիս, որ

իբրեւ զժառանգութիւն անց առ նա այնպէս հաստատուն ունէր, զի ըղ֊շունչն յառաջ քան թէ զատելութիւնն թողոյր: Զի եւ յորժամ յաշխարհէն տարագիր եղեւ, եւ այլոց օգնականութեամբ կարօտ էր, չկայր ի բաց մտօք ընդ հռոմայեցիս կռուել:

Բ. Ոչ մի ինչ զփիլիպպեայ ատացից, զոր մինչ դեռ ի բացեայ իսկ էր, թշնամի հռոմայեցւոց յարուցանէր. քան զամենայն թագաւորս ի ժամանակին հարստագոյն արքայ Անտիոքոս էր, որդ զնա այնպէս վառէր բորբոքէր ի մարտ պատերազմի, զի ի կարմիր ծովէ անտի ի վերայ խաղաղացւոց աշխարհին կամէր գալ ի պատերազմ: Եւ յորժամ գային առ նա պատգամաւորք հռոմայեցւոց, գիտել թէ յինչ միտս յոր կամս իցէ, եւ ծածուկ խրատու ջանալ արկանել կասկած ի միտ վասն Աննիբաղայ, եթէ կաշառս ի նոցանէ առեալ, այլադունակս քան զառաջինն խորհիցի, եւ զայն ոչ ընդ վայր ինչ եւ վայրապար գործէին, իմանայր զայն Աննիբաղ. քանզի տեսանէր եթէ ի ծածուկ խորհուրդսն չառնէր զնա միջամուխ: Եւ յորժամ

ցեմ: Վասն որոյ եթէ բարեկամ ես Հռոմայեցւոց, ոչ անիմաստութեամբ գործես զի զայդ յինէն թաքուցանես. այլ եթէ պատերազմ յարդարիցես, անձամբ զանձն զրկես, թէ ոչ զիս իշխան հրամանատար պատերազմին կարգիցես:

Գ. Արդ ի նոյն ամի ընդ հօրն իտալանիացւոց աշխարհն անցանէր, եւ իբրեւ յետ նորա մահուն Ասդրուբաղ իշխան հրամանատար կարգէր, նա համօրէն հեծելազօրուն զօրաւար կայր: Եւ յորժամ Ասդրուբաղ եւս ի կենաց վճարէր, զօրքն զգլխաւոր իշխանութիւն նմա տային. եւ իբրեւ լուր լինէր ի Կարքեդոն, ամենեքին հաւանէին ընդ իրան: Այնգունակ Աննիբաղ, մինչ չեւ եւս քըսան եւ հինգ ամաց էր, հրամանատար կարգեալ, յերեքամեայ ժամանակի զամենայն ազգս սպանիացւոց աշխարհին նուաճէր պատերազմաւ. զՍագունտոս զդաշնաւոր քաղաքն բռնաբար առնոյր. երիս բանակս զօրականաց գումարէր, ի սոցանէ ըզմին յափրիկեցւոց աշխարհն առաքէր, զմիւսն հանդերձ Ասդրուբաղաւ եղբարբն իՍպանիա թողոյր, եւ

զերրորդն ինքնին առեալ խաղայր զնայր յիտալացւոց աշխարհն: Ընդ խոխոմն պիրենեական լերանց անցանէր. ընդ ամենայն անցս ճանապարհին համապատ ընդ բնակիչս տեղեացըն բախէր մարտիւ, եւ ամենեցուն յաղթէր: Եւ իբրեւ յԱլպս հասանէր, որ զիտալացւոց աշխարհն ի գաղիացւոց կողմանցն բաժանեն, ընդ որս ոչ ոք երբեք անց զօրօք, բայց միայն ի Հերակլեայ Յունէ, որով եւ Յունական խոխոմբ եւ այժմ անուանեալ կոչեն զվայրսն, հարկանէր սաստիկ զբնակիչս լերանցն, որ ջանային արգելուլ զի մի անցանիցէ. զվայրսն ընդարձակէր, զճանապարհսն ամրացուցանէր, եւ այնպէս յարդարէր, զի փիղ վառեալ պատրաստեալ ընդ այն անցանիցէ, ընդ որ յառաջն այր մի անզէն հազիւ սողել կարէր: Ընդ այն զզօրսն անցուցանէր, եւ գայր հասանէր յիտալացւոց աշխարհն:

Դ. Եւ Ռոդանոս գետով ընդ Պ. Կոռնելեայ Սկիպիոնեայ բդեշխի ընդխառնէր ի պատերազմ, եւ վանէր զնա: Ընդ նմին վանն Կղաստիդեայ առ Պադոս գետով յայլ ճա-

կատ մտանէր, եւ անտի խոյ վերա-
ւոր փախստեայ հանէր: Երրորդ ան-
գամ նոյն Սկիպիոն ընդ Տիբերեայ
Լոնգոսի խրոււմ ընկերի առ Տրե-
բիաւ գայր ի վերայ նորա: Ընդ նո-
սա ճակատ մղէր, եւ զերկոսին եւս
խորտակէր վանէր: Անտի ընդ Լի-
գուրս անց ըստ ապեննինեան լերինն
յԵտրուրիա երթալ: Զճանապար-
հայն այնչափ սաստիկ աչաց ցաւով
ջերանէր, զի այնու հետեւ ոչ քաջ
տեսանէր աջոյ ականբն: Իբրեւ նո-
վին ախտիւ վարանէր, եւ բարձեալ
տանէին զնա, զԿ. Փղամինիոս բդեշխ
առ Տրասիմենեաւ զօրօքն դարանեալ
սպանանէր, եւ յետ ոչ բազում ա-
ւուրց զԿ. Կենտենիոս հազարապետ,
որ ընտիր ընտիր զօրու զխոխոմման ու-
նէր: Ապա յԱպուղիա հասանէր.
ընդդառաջ լինէին նմա երկոքին բը-
դեշխքն Կ. Տերենտիոս Վարրոն, եւ
Գ. Պաւղոս Էմիղիոս. Նա զերկո-
ցունց եւս զբանակս ի միում ճակա-
տու ցրուէր. զԳ. Պաւղոս բդեշխ ըս-
պանանէր, եւ զայլս եւս որ յառաջն
հիւպատք կացին. ընդ նոսա եւ զԿն.
Սերուիղիոս Գեմինոս, որ յառաջ
քան զայն ամ բդեշխն կացեալ էր:

Ե. ՅԵՏ այնր պատերազմին մեծ-
լոյ, խաղաղր գայր ի Հռոմ քաղաք,
եւ չդատնայր ող ընդդէմ. ի վերայ
ընթանոյն՝ որ մօտ ի քաղաք անդր է-
ին, ազատներ: Իսկ իբրեւ զաւուրս
ինչ անդէն բանակ հարեալ ի Կա-
պուան դարձեալ գայր, Դ. փաքիոս
Մ՛աքսիմոս, դիկտատոր հռոմայեցի,
ի փաղեռնեայ անդի ի դիմի հարկա-
նէր: Յարձակմամբ փակեցաւ յանձուկս
վայրացն, գիշերի առանց երկք զօ-
րացն փետաու մազապուր զանձն հա-
նէր. եւ զփաբիոս զխորագէտ զօրա-
ւարն խաբեալ վրիպեալ կացուցանէր:
Զի ի խաւարազգած գիշերի կոտիւ-
ընդ եղջերս զուարակացն կապեալ-
ելոց, եւ զբազմամբոխ թափառա-
կան բազմութիւն երամակացն ի վե-
րայ արձակէր: Իբրեւ զնոսա յան-
կարծակի ի վերայ դիմեալ տեսանէ-
ին, այնչափ ահ անկանէր ի հռո-
մայեցւոց զօրն, զի չիշխէր ող ար-
տաքս քան զպատնէշն ելանել: Յետ
ոչ բազում ինչ աւուրց իւրայն այնո-
ցիկ վճարելոյ, զՄ. Մինուկիոս Ռու-
փոս, զիշխան հրամանատար հեծե-
լազօր գնդին, որ ունէր իշխանու-
թիւն հանգոյն դիկտատորի, նեն-

գութեամբ ի պատերազմ դրդուեալ ի փախուստ դարձուցանէր: ԶՏ. Սեմպրոնիոս Գրակքոս, որ երկրորդ անգամ բդեշխն կացեալ էր, նենգ գործեալ բառնայր ի միջոյ, մինչ դեռ հեռի ի Դուկանս էր: ԶՄ. Կղաւդիոս Մարկեղոս ի հինգերորդում հիւպատոսջն, առ Վենուսեաւ նոյնգունակ սպանանէր: Եւ զի՞ մի ըստ միոջէ թուիցեմ, զայս եւեթ շատ համարիմ, յորմէ մերձ է յանձնէ իմանալ թէ որպիսի ոք լինեալ իցէ. ցորքան ժամանակս յիտաղացուց աշխարհին էր, չեկաց ոք նմա հակառակ ի ճակատու, ոչ ոք յետ Կանեայ կռուին ի դաշտի բանակ եհար:

Զ. Որ այնպէս անհնարին առ յաղթել էր, կոչէր այսրէն գալ պաշտպանել հայրենի աշխարհին. եւ տայր պատերազմ ընդ Պ. Սկիպիոնեայ որդւոյ, զոր նա մի անգամ առ Ռոդանոս գետով, եւ երկրորդ անգամ առ Պադոս գետով, եւ երրորդ անգամ առ Տրեբիաւ ի փախուստ դարձոյց: Քանզի ակարացեալ իմն էր աշխարհն եւ անկեալ ի զօրութենէ, ցանկայր ի ժամանակին խաղաղութեան դաշինս ընդ նմա կռել, զի

հզօրագոյնս յետոյ ի դիմի հարկանէին։ Եւ եկեալ յանդիման լինէին միմեանց, այլ չմիաբանէին ի պայմանսն։ Յետ սակաւ ինչ աւուրց ի գլուխ ելանելոյ իրացն, առ Զամաւ ընդ նմա ի ճակատ մտանէր։ Եւ ի նմանէ փախեալ, որ չաւատալի իմն թուէր, զերկուս տիւս եւ զերկուս գիշերս յԱդրումետոն գայր հասանէր, որ ի բացեայ է ի Զամայ իբրեւ երեքհարեւր հազար քայլ։ Մինչ դեռ այնպէս փախուցեալ երթայր, Նումիդացիք՝ որք ընդ նմա ի ճակատուէն ելին, դաւաճանակալ լինէին նմա. յորոց ոչ միայն ապրէր, այլ եւ նկուն եւս առնէր զնոսա։ ՅԱդրումետոն զայլ եւս մնացորդս փախստէիցն գումարէր, եւ անդէն այրընտիր զէնընտիր ժողովէր; եւ ի սակաւ աւուրս բազում զօրս կուտէր։

Է. ԻԲՐԵՒ մեծաւ սաստկութեամբ փութայր նա զպատերազմն յաղթարել, կարքեդոնացիք ընդ հռոմայեցւոց ի հաշտութիւն խօսէին։ Նմա նա եւ յետ այնորիկ զօրաւարէր զօրացն, եւ յափրիկեցւոց աշխարհին իբրու վճարէր. զնոյն եւ Մագոն նորին եղբայր գործէր, մինչեւ ցՊ. Սուղ-

պիկեայ եւ կ․ Մերեղեայ բդեշխու-
թիւնն։ Արդ մինչ դեռ ողջա հիւ-
պատքն կային, կարքեդոնացիք հը-
րեշտակագնացս անդր ի Հռոմ առ-
նէին, զի ծերակուտին եւ ազգին
Հռոմայ շնորհ կալցին, վասն հաշ-
տութեան դաշինս ընդ նոսա կռե-
լոյ, եւ վասն նոցին իրաց պատկառ-
կի մատուսցեն պարգեւս, եւ խըն-
դրեսցեն զի պատանդքն ի փրեգեղս
իցեն, եւ դարձցի գերին։ Նոցա վը-
ճիռ լինէր ի ծերակուտէն, եթէ
զպատարագս նոցա ընկալեալ իցէ,
պատանդքն յորում վայրի խնդրե-
ցինն, լինիցին, ՝զգերին ոչ ի բաց
արձակիցեն, քանզի զԱննիբաղ՝ յո-
րոյ ձեռն պատերազմն գրգռեցաւ,
որ անհնարին թշնամին էր հռոմայ-
եցւոց անուան, դեռ եւս զօրաւոր
ունէին զօրուն, նոյնգունակ եւ ըզ-
նորին եղբայր զՄագոն։ Իբրեւ այնմ
պատասխանւոյ ի վերայ հասանէին
կարքեդոնացիք, զԱննիբաղ եւ ըզ-
Մագոնյետս կոչէին։ Նա իբրեւ այ-
սրէն դառնայր, հազարապետ եկաց,
յետ քան եւ երկուց ամաց յորմէ
հետէ թագաւոր լեալ էր։ Զի զոր օ-
րինակ ի Հռոմ բդեշխքն նոյնպէս եւ

ի կարքեդոնացւոց քաղաքին երկու տարեւոր թագաւորքն կային։ ի նմին իշխանութեան նմին փութով կայր Անիբաղ, որպէս եւ ի մարտին ժամանակի. քանզի այնպէս առնէր, զի ի նոր հասոյթն ոչ միայն զհարկսն ըստ ուխտին հարկանիցեն հռոմայեցւոցն, այլ զի յաւելուցու եւս արծաթ առ ի դնելոյ ի տան գանձին։ Ապա յերկրորդում ամի հազարապետութեանն, յորժամ Մարկոս Կղաւդիոս եւ Լուկիոս Փուրիոս բդեշխ կային, պատգամաւորք ի Հռոմայ ի Կարքեդոն եկին։ Անիբաղ անծեալ զմտաւ թէ վասն զնա ինչ խնդրելոյ առաքեալ իցեն. մինչ չեւ էր նոցա յանդիմանն լեալ ծերակուտին, գաղտ ի նաւ ելանէր, եւ յԱսորիս առ Անտիոքոս փախստեայ անկանէր։ Իբրեւ ի վեր ելին իրքն, կարքեդոնացիք նաւս երկուս զկնի արձակէին, զի եթէ հասանիցեն, ըմբռնեսցեն. զինչսն հասարակաց առին, զտունն յատակաց բրէին, եւ զնա զլխովին. վտարանդի առնել դատեցան։

Ը. ԻՍԿ Անիբաղ յերրորդում ամի յետ յաշխարհէն փախստեայ ա-

պրելոյ, մինչ դեռ Պ. Կոռնելիոս եւ Կ. Մ՚ինուկիոս բդեշխք կային, հինգ նաւուք յափրիկեցւոց աշխարհն գային ի սահմանս կիւրենացւոց, թէ գուցէ զկարքեդոնացիս յԱնտիոքոս ապաստան ի մարտ պատերազմի գրգռել կարիցէ, զոր հաւանեցոյց իսկ զի զօրօք յիտալացւոց աշխարհն խաղայցէ։ Կոչեաց անդր զՄ՚ագոն զեղբայրն։ Իբրեւ ի վերայ հասին կարքեդոնացիքն զնոյն պատիժ պատուհասի ի վերայ արկանէին Մ՚ագոնեայ, զոր եւ եղբօրն սահմանեցին։ Նոքա իբրեւ անյոյս եղեալ յիրացն արձակեցին զնաւսն, եւ զառագաստսն ետուն հողմոյն, Աննիբաղ առ Անտիոքոս ժամանէր. իսկ զՄ՚ագոնեայ վախճանէն ոմանք այսպէս յիշատակեն եւ ոմանք այնպէս, զի կէսք նաւաբեկ լեալ գրեն, եւ կէսք ի ծառայիցն իւրոց սպանեալ։ Իսկ Անտիոքոս եթէ յորժամ զպատերազմն մղէր նորին խրատուքն վարել յօժարէր, որոյ բանիւքն գրգռէր ի մարտ, առ Տիբերեաւ եւ ոչ ի Թ․երմոպիւղիս կռուէր վասն իշխանութեանն։ Զոր թէպէտ եւ տեսանէր ի բազում ինչ տխմարութեամբ ձեռն

արկեալ, սակայն ոչ ի մի ինչ իրս ե-թող զնա։ Իշխան հրամանատար լի-եալ սակաւուց նաւամարտիկ նաւաց, զորս հրաման առ յԱսորւոց աշխար-հէն յաւաքացուց կողմանս ածել, նա-քգք ընդ նաւամարտիկ տորմիղ նա-ւաց առաջացւոյ ի Պամփիւղեայ ծո-վուն խառնէր ի պատերազմ։ Ընդ իւրեւ իւրքն ի բազմութենէ անտի թշնամեացն պարտէին, նա յորում թեւի կայր, գեր ի վերոյ լինէր։

Թ. ԽՈՐՆԻ Անտիոքոս ի փախուստ դառնայր, երկուցեալ մի գուցէ ի ձեռս տայցի, որ արդարեւ իսկ դի-պէր եթէ անդէն կալեալ էր, ի Արե-տէ առ գորտինեայսն գայր, զի անդ զմտաւ ածիցէ թէ ուր ի դէպ իցէ երթալ։ Այլ եւտես այլոն՝ որ ամենե-ւին իսկ խորագէտ էր, զի եթէ ոչ զգուշանայցէ ինչ, եղեւն դատանե-լոյ է, վասն ուշդութեան կրետա-ցւոցն։ Քանզի բազում ինչս ընդ իւր տանէր, զորմէ գիտէր եթէ եւ լուրն. վասն որոյ այսպիսի ինչ խորհուրդ խորհեցաւ։ Սափորս բազումս լնոյր կապարաւ, եւ զվերին երեսսն ծած-կէր ոսկւով եւ արծաթով, եւ առա-ջի գորտինեացւոցն դնէր աւանդ ի

մեհենին Անահտայ, կերպարանեալ որպէս թէ զամենայն ինչս իւր ի նոցա հաւատարմութիւն առնիցէ ապաստան։ Եւ գնաց այսպէս պատրեալ, յամենայն պղնձի պատկերան՝ զոր ընդ իւր տանէր, զիւր ինչսն ընդյր, եւ գնաց ի բացի ընկենոյր ի տանն։ Գորտինիացիք մեծաւ փութով ըզմեհեանն պահէին, այլ առաւել ըՆնիբաղայ քան յայլոց, զի մի ինչ բառնայցէ յանդգնս եւ ընդ իւր տարցի։

Ժ. Եւ իբրեւ այսպէս զիւր ինչսն պահէր պունիկեցին, խաբեալ զամենայն կրետացիսն, առ Պրուսիաս ի Պոնտոս հասանէր։ Ուր որում ի նոյն միտս եկաց ի վերայ խաղաղութ աշխարհին, եւ ոչ այլ ինչ գործ գործեաց, բայց միայն զի վառեաց եւ յորդորեաց զթագաւորն ընդդէմ հռոմայեցւոցն։ Եւ իբրեւ տեսանէր թէ տկար է ընտանի եւ սեպհական զօրութեամբն, զայլ թագաւորն հաւանեցուցանէր, եւ յաւելոյր ի նոյն զազգս պատերազմօղս։ Հակառակ կայր Նմա պերգամացւոց թագաւորն Եւմենէս, որ կարեւոր բարեկամ էր հռոմայեցւոց. եւ էր պատերազմ ի միջի նոցա ընդ ծով եւ ընդ ցամաք։

Վասն այնորիկ ցանկայր յոյժ Աննի-
բաղ զի նա նկուն լինիցի: Այլ ի ծո-
վու եւ ի ցամաքի առաւել զօրագոյն
Եւմենէս էր, վասն հռոմայեցւոցն
բարեկամութեան. եւ թէ զնա կոր-
ծանէր, համարէր թէ այլն ամենայն
դիւրաւ աջողեսցին նմա: Եւ այսպիսի
ինչ խորհուրդս խորհէր առ ի սպանա-
նելոյ զնա: Յետ սակաւ ինչ աւուրց
նաւամարտիկ պատերազմաւ հասա-
նէր կռուել, եւ յաղթեալ իմն լի-
նէր նաւացն յաճախութեամբ. վա-
սըն այնորիկ նենգութեամբ պարտ
էր զմարտն մղել, զի չէր ինչ հաւա-
սար զինուք: Հրաման տայր յաճա-
խագոյն օձս թունաւորս կենդանւոյն
ըմբռնել, եւ զնոսա յանօթս խեցե-
ղէնս արկանել: Եւ իբրեւ բազում
յաճախութիւն լինէր օձիցն, ի նմին
աւուր յորում նաւամարտիկ կռիւն
լինելոց էր, ի մի վայր գումարէր ըզ-
նաւական զօրն, եւ հրամայէր նոցա
զի ամենեքին միախուռն ի նաւ ան-
դըր Եւմենեայ թագաւորի ընթա-
նայցեն. եւ շատ համարեսցին ան-
ձանց պաշտպանել յայլ եւս նաւացն.
եւ այդ դիւրաւ յօձիցն յաճախու-
թենէ յաջողեսցի նոցա: Եւ թէ յո-

ըումնաւի Թագաւորն կայցէ, եւ ա-
սէ, ազդ արարից ձեզ. զոր Թէրմ-
բռնիցէք կամ սպանանիցէք, մեծ
իմն պարգեւ խոստացեալ իցէ ձեզ:

Ը.Ժ. ԽՈՐԵՍ այնպէս առ զօրան
հրապարակախօս եղեւ, յերկոցունց
կողմանց գային ի կռիւ նաւամարտիկ
նաւքն: Եւ իբրեւ ճակատ առ ճա-
կատ յարդարէին, մինչ չեւ էր փո-
ղանշանս հարեալ ձայն տուեալ մար-
տի, Ըննիբաղ զի յայտ արասցէ ի-
րոցն Թէ յորում վայրի Եւմենէսն ի-
ցէ, զԹղԹաբերն գաւազանաւ[17] ի
նաւակի առաքէր: Նա իբրեւ ինաւս
հակառակորդացն հասանէր, զԹուղ-
Թըն ցուցեալ, յայտ առնէր եԹէ
առ Թագաւորն առաքեցաւ: Վաղ-
վաղակի առ Եւմենէս տանէին. քան-
զի չկասկածէր ոք եԹէ չիցէ ինչ վա-
սըն խաղաղուԹեան գրեալ: ԶԹղԹա-
բերն, իբրեւ յայտնի եղեւ իւրայոցն
զօրաւարին նաւն, անդր ուստի մե-
կնեալն էր, դառնայր: Իսկ Եւմենէս
զԹուղԹն բացեալ, չեգիտ ինչ ինմա
բայց միայն բանս զանձն ծաղր ա-
նելոյ: Արդ Թէպէտ եւ չգիտէր Թէ
յինչ պատճառանաց սակս զայն գոր-
ծեցին, եւ զարմանայր իսկ, այլ չգան-

դաղէր ինչ վաղվաղակի զմարտն մը-
ղել։ Եւ յընդխառնել պատերազմին,
բիթինացիքն, ըստ Աննիբաղայ հրա-
մանին, ամենեքեան միահամուռ
յարձակէին ի վերայ նաւուն Եւմե-
նեայ։ Եւ իբրեւ չմարթէր զդէմ ու-
նել զօրութեան նոցա թագաւորն,
ի փախուստ աճապարէր, որում չը-
հասանէր իսկ, եթէ ոչ հասեալ ան-
կեալ էր յիւր պահապանսն՝ որ ան-
դէն ի ծովեզերին կային։ Այլ եւս
պերգամացւոցն նաւքն, իբրեւ սաս-
տկագոյն զհակառակորդսն նեղէին,
յանկարծակի յեղակարծումն ժամու
զանօթսն կաւեղէնս՝ զորոց վերա-
գոյն յիշատակեցաք, սկսան ընկե-
նուլ. որք իբրեւ ընկեցանն, զառա-
ջինն ի ծաղր ածին զպատերազմօղսն,
եւ թէ վասն էր այն լինիցի, չկային
ի վերայ։ Այլ իբրեւ զնաւսն լցեալս
յօձիցն տեսանէին, զահի հարեալ ի
նորանշան իրացն, չգիտէին թէ յումէ
արդեւք առաւել խուսիցեն, եւ ըզ-
խելս նաւացն դարձուցեալ, անդէն ի
բանակ անդր նաւացն դառնային։
Այսպէս Աննիբաղ խորհրդով յաղ-
թէր զինուց պերգամացւոց. եւ ոչ
զայն մի անգամ եւեթ գործեաց,

այլ բազում անգամ զայլ եւս հակառակորդս հետեւակ զօրօք նոյնգունակ իմաստութեամբ խորտակէր։

ՌԺԺ. ԽՐՐՆԻ այս իրք այսպէս յասիացւոց աշխարհին գործէին, դէպ այնպէս լինէր, զի պատգամաւորք Պրուսիայ ի Հռոմ առ Գ. Կուինտիայ Փղամինինեայ՝ որ հիւպատոն լեալ էր, ճաշ ուտէին. անդ իբրեւ զՀաննիբաղայ բան ճառէր, ասաց մին ի նոցանէ, թէ ի Պրուսիայ արքայութեանն իցէ։ Զայն բան յաւուրն երկրորդի Փղամինինոս ծերակուտին պատմէր։ Իսկ ծերակոյտն, քանզի այնպէս համարէր, զի մինչ դեռ Հաննիբաղն կենդանի կայցէ, չէ մարթ թէ առանց նենգութեան լինիցին, հրեշտակագնացս ի Բիւթինացւոց աշխարհն առնէին, եւ Փղամինինոս անդստին ի պատգամաւորաց անտի էր, զի խնդրեսցեն ի թագաւորէն զի մի զիւրեանց զանհնարին թշնամի առ իւր ունիցի, այլ տացէ զնա ի ձեռս։ Իսկ Պրուսիաս չիշխեաց ասել թէ Չտամ. այլ զայս ասէր, թէ Մի խնդրիցէք յինէն զայն ինչ՝ որ ընդդէմ հիւրութեան իրաւանց իցէ, դուք թէ կամիք ըմբռնեցէք, զտեղին ուր

նայն իցէ դիւրաւ գտանել ք։ Քանզի Լ՚Ննիբրայ ի միում վայրի եւեթ կայր յաւանիքն զոր ետ նմա թագաւորն. եւ այնպէս իմն զվայրսն յօրինեաց, զի յամենայն կողմանց շինուածոյն ունիցի զրաւնս, քանզի յամենայն ժամանակի կասկածէր զի մի այն գիրկեայք, որ եւ պատահեսցեն իսկ։ Իբրեւ պատրաստամաւուրք հրամայեցաւ-ցին անդր զայլսն եւ բնագրութեանք պաշարէին զապարանսն շուրջանակի, հայեցեալ պատուհանէկին ի դրանէն, ասէր ցԼ՚Ննիբրայ, եթէ Խաղաւմ. վա-ռեալք համեալ. կան ապաաքդ. քան զառաջորութիւնն։ Նա տեսեալ հրաման շուրջ գալ հայել ընդ ամենայն դր-րանսն, եւ փութանակի պատմեր նմա թէ այնպէս յամենայն կողմանց պաշարեալ իցէ։ Իբրեւ վաղվաղակի պատմեաց մանուկն որ ինչ էրն, եւ զամենայն ելսն փակեալ ցուցանէր, իմանայր թէ այն ոչ յանկարծակայ եղեւ, այլ թէ զինքն իսկ զխնդրէն կամին, եւ թէ չէ ինչ ընդ երկար կա-լոց կենդանւոյ. եւ զի մի այլոց կամօք ի կենաց անկանիցի, զմտաւ ածեալ զառաջինն քաջութիւնն, զթշնամի զոր հանապազ ընդ իւր տանէր, առ։

Գ·Ժ·. Այսպէս այրն հզօր անհնարին, բազում եւ պէսպէս վաստակովք վաստակեալ, հանգչէր յեւթանասուն ամաց հասակի. առ որովք արդեւք բդեշխիւք վախճանեցաւ, այն չէ յայտ: Քանզի Ատտիկոս ի Մարկեայ Կղաւդեայ Մարկեղեայ, եւ Կ. փաբիոսի Ղաբէոնեայ հիւպատին մեռանել ասէ յիւրում ժամանակացն մատեանս. այլ Պողիւբիոս ի Ղ. Էմիղեայ Պաւղոսի, եւ Կն. Բեբեայ Տամփիղեայ ժամանակարն. եւ Սուղպիկիոս ի Պ. Կոռնեղեայ Կեթեգեայ եւ ի Մ. Բեբեայ Տամփիղեայ: Արդ այսպիսի այր եւ յայնչափ պատերազմունս զբաղեալ, ժամանակս ինչ եւ գրոց պարապէր. քանզի եւ մատեանք ինչ կան նորա Յունաց բարբառովն յօրինեալ: Ի նոսա առ ռոդացիս վասն Կն. Մանղեայ Վուղսոնեայ իրացն՝ որ յասիացւոց աշխարհին գործեցան: Զնորա պատերազմացն մղելոց բազումք աւանդեցին յիշատակարանս, այլ ի սոցանէ երկուք՝ որ ընդ նմա ի բանակի անդ էին, եւ կեցին իսկ ի միասին, որչափ ինչ Թոյլ ետ բախտն, Սիղենոս եւ Սոսիղոս Ղակեդմոնացի:

Սոսիղոսայս յունական դպրութեան վարդապետ էր Աննիբաղայ։ Այլ մեզ ժամ է արդ կատարումն գրոցս առնել, եւ զհռոմայեցւոց զօրաւարս յայտ առնել[18]. զի իբրեւ սոցա եւ նոցա գործք ընդ միմեանս համեմատիցին, դիւրաւ դատաստան լինիցի թէ ո՛յք իցեն նախամեծար։

# ՑԱՆԴԻՄԱՆՈՒԹԻՒՆ

Ա. ԿԱՏՈՆ յերիտասարդութեան զօրական եւ կապարճակիր, եւ շինուածոց յանձանձիչ, եւ հազարապետ եկաց. եւ զԷննիոս ած ի Հռոմ: Բ. Բդեշխ լեալ զՍպանիա առ ի վիճակի. համարձակար կացեալ թշնամութիւնս յանձին կալաւ վասն քաղաքին: Գ. Գրուատիք նորա, ուսումն եւ մատեանքըն:

## ՔՍԱՆԵՐՈՐԴ ՉՈՐՐՈՐԴ

# Ս. ՊՈՐՓԻՒՌԻՈՍ ԿԵՏՈՆ

## ՀՌՈՄԷԱՑԻ

Ե. ՍԱՑՈՒՆ ի Տուսկաղուս նահան-
գի ծնաւ. ի մանկութեանն մինչ
չեւ էր յիշխանութիւնս համեալ, ի
Սաբինիս կայր, զի էր նորա անդէն
կալուած ժառանգութեան, զոր ե-
թող նմա հայրն։ Դ. Վաղերեայ փըռ-
զակեայ խորաւու, որ կցորդն էր իշ-
խանութեան նորա, յորժամ բդեշ-
խըն էր եւ համարակար, որպէս Ս.
Պերպետնեա կենսագրինս ասէ, էպա-
տմէր, չուեաց եկն ի Հռոմ, եւ ըն-
կերքն առնէր միջամտուք ի հրապա-
րակի իւր լինել։ Զառաջինն թուշա-
կի արժանի լինէր մինչ դեռ յեւթն-
եւտասն ամաց հասակի էր. եւ յոր-
ժամ Կ. փարիոս Սաքսիմոս եւ
Մ. Կղաւդիոս Մարկեղլոս հիւպատք
կային, հազարապետ զօրաց ի Սի-
կիլիա լինէր։ Եւ յորժամ զար-

ձաւն, չոգաւ զհետ բանակին Կ. Կ-
ղաւդեայ Ներոնի. եւ բազում ինչ առ Սենաւ նպաստ լինէր, ի կալուն յորում անկաւ Ասդրուբաղ, եղբայր Աննիբաղայ: Դէպ եղեւ լինել նմա կապարճակիր Պ. Կոռնեղեայ Սկիպիոնի Ափրիկանոսի բդեշխի, ընդ որում ոչ որպէս վայել է կարեւոր բարեկամի կեայր. քանզի չմիաբանէր ընդ նմա յամենայն կեանս իւր: Շինուածոց յանձանձիչ եղեւ ընդ Կ. Եղուիոսի. ոստիկան լեալ զարդինիացւոց նահանգն յանձանձէր, ուստի յորժամ կապարճակիրն էր եւ մեկնէր յափրիկեցւոց աշխարհէն, զԿ. Աննիոս պուետ ընդ իւր էր ածեալ. զոր ոչ նուազ քան զինչեւ պէտ մեծապայծառ ձաղումն սարդինիացւոց համարիմք:

Ի. ԻՇԽԱՆ եկաց ընդ Ղ. Վաղերեայ Փղակկոսի, եւ եհաս նմա նահանգ սպանիացւոց աշխարհն՝ որ յայսկոյս է, եւ անտի եկեալ ի ճեմելն եւ: Իսկ իբրեւ բազում ժամանակս անդ լինէր, Պ. Սկիպիոն Ափրիկանոս յերկրորդում հիւպատին, յորոյ առաջնում հիւպատին կապարճակիր եկաց, կամէր զնա ի գաւա-

ռէն մերժել եւ կալ փոխանակ նորա։ Ռամ եւ ոչ ի ձեռն ծերակուտին կարէր այնմ հպատանել, Թեպէտ եւ Սկիպիոն բազում ճոխութիւն ի քաղաքի ունէր. քանզի յայնմ ժամանակի ոչ իշխանութեամբ ինչ, այլ արդարութեամբ վարէր քաղաքն։ Վասն այնորիկ բարկացեալ, իբրեւ ժամանակ իւրոյ հիւպատին կատարէր, եկաց առանց իշխանութեան ի քաղաքին։ Իսկ Կատոն նովին փղակկեաւ համարակար լինել, խստութեամբ վարէր զիշխանութիւն։ Զի եւ զամզումս յազնուականաց նեղէր, եւ բազում ինչ նոր հրաման յաւելոյր, որով զեղխութիւնն սանձահարեսցի, որ յայնժամ սկիզբն առնէր բուսանելոյ։ Գրեթէ ամս ութսուն, ի մանկութենէ մինչեւ ցհուսկ յետին հասակն, ոչ դանդաղեցաւ յանձին ունել թշնամութիւնս վասն քաղաքին։ Ի բազմաց փորձեցաւ, բայց ոչ միայն ըստգիւտ ինչ ի համբաւն չընկալաւ, այլ եւ զամենայն աւուրս որչափ եկաց լաւութեանցն դրուատեօք մեծացաւ։

Գ. ՅՈՒՄՆՆՈՑՆ իրս զարմանալի իմաստութիւն եւ ճարտարութիւն ի





կիր արկանէր, զի եւ երկրագործ ճարտար էր, եւ հմուտ իրաց քաղաքին, եւ իրաւագէտ, եւ զօրաւոր նշանաւոր, եւ ճարտարախօս քաջ, եւ դպրութեանց անհնարին ցանկացող։ Եւ թէպէտ ի ծերութեանն զնոցին դպրութեանց զհետ երթայր, այլ այնչափ յառաջադէմ ի նոսա եղեւ, զի չմարթէր դիւրաւ գտանել ինչ մի ի Յունաց կամ յիտաղացւոց իրաց, որ նմա անծանօթ իցէ։ Ի մանկութենէ բազում խօսս եդ. եւ ի ծերութեան պատմութիւնս եդ ի մտի հարկանել ի մատենի, եւ եւթն գիրք են վիպասանութեանն։ Առաջինն ունի զիրսն որ ի թագաւորաց Հռոմոց ժողովրդեանն գործեցան. երկրորդն եւ երրորդ թէ ուստի իւրաքանչիւր յիտաղական քաղաքաց ծագեալ իցէ. վասն այսորիկ թերեւս Օրիգինէս ամենայն մատեանն անուանեալ կոչի, որ են ելք։ Ի չորրորդ գիրսն պունիկեան պատերազմն կայ առաջին, ի հինգերորդումն երկրորդն. եւ այս ամենայն համառօտիւք է ասացեալ։ Զայլ եւս մարտս պատերազմաց ըստ նմին օրինակի ի մատենի եհար, մինչեւ յառա-

Ջնորդութիւն Սեր. Պաղբեայ որ զղեւախտանացիս կապուտ կողոպուտ արար: Բայց զանուանս առաջնորդաց այնց պատերազմաց չյիշեաց ինչ, այլ լոկ զիրսն նշանակեաց առանց անուանց: Ի նոսա յայտ արար թէ զինչ յիտաղացուց եւ իսպանիացուց աշխարհին իւր զարմանալիք կայցեն. յորս բազում ճարտարութիւն եւ հաւատիք երեւին, բազում ուսումն: Զաորս կենաց եւ զբաղուց բազում ինչ աւանդեցաք ի գիրսն՝ զոր առանձինն զնմանէ գրրեցաք Տիտոսի Պոմպոնեայ Ատտիկոսի հայցեալ: Կատն այնորիկ զայնոսիկ՝ որ ցանկանայցեն ուսանել զիրսն Կատոնի, յայն մատեան առաքեմք:

# ՑԱՆԴԻՄԱՆՈՒԹԻՒՆ

Ա. Ատտիկոս երեւելի հարքն եւ իմաստութեամբն եւ փութովն, որովք եւ քան զաշակերտակիցսն առաւել լինէր: Բ. Վասն Սուղպիկեայ խնամութեանն ի վտանգի կայր, եւ վասն կինանեան խռովութեանն յԱթէնս երթեալ ընչիւք Մարեայ եւ աթենացւոցն օգնական եղեւ: Գ. Անդէն պատուովք մեծարէր, բայց նա չառ յանձն զպատիւսն: Դ. Սիրելի եղեւ Սուղղայ. եւ յորժամ դառնայր դայր ի Հռոմ, արտասուօք յուղարկէին աթենացիքն: Ե. Ժառանգ եղեւ Կեկիղեայ, Կիկերոնեայ եւ Որտենսեայ զօդ: Զ. Ի պատուոց եւ ի հակառակութենէ եւ յիշխանութեանց մերժէր զանձն: Է. Բարեկամացն որ ընդ Պոմպէի միամտեալ էին, օգնական ընչիւք եղեւ. ոչ զՊոմպէոս զայրացոյց եւ ոչ ըզԿայսր: Ը. Մ. Բրուտեայ բարեկամ էր, յորժամ Կայսր սպանաւ, եւս եւ յորժամ ի բաց անկեալ երթայր փախստեայ: Թ. Եւ ոչ Անտոնեայ որ թշնամի իսկ դատեցաւ, թշնամի եղեւ. օգնական էր եւ Փուղուիայ: Ժ. Յորժամ եկն Անտոնիոս, մեկնեցաւ ի հրապարակէն, թէ գուցէ տարագիր լինիցի, բայց ապրեցաւ ի մրրկէ անտի: ԱԺ. Հաւատարիմ էր տարագրելոցն, եւ յաջողութեան եւ ի թշուառութեան: ԲԺ. ԶՎիպսանեայ եւ զԱնտոնեայ բարեկամութիւնն յայն եւեթ ի կիր արկանէր, զի զբարեկամսն ի վշտաց ապրեցուցանիցէ: ԳԺ. Տանուտէր ազնիւ եւ ոչ որ բազում

ծախս առնիցէ ։ Դժ. Ոչ երբեք առանց ընթերցուածոց ճաշ ուտէր. զինչ ի լաւ արկանէր ի կեր ։ Եժ. Ճշմարիտ ի բանս էր եւ ի գործս աշխատասէր ։ Զժ. Մարգասէր էր, սիրէր զնա Կիկերոն որպէս յայտ ի թղթոցն է ։ Էժ. Խնամոտ առ մայրն եւ առ քոյրն. վարուքն փիլիսոփա էր եւ ոչ ուսմամբ ։ Ըժ. Հմուտ նախնեաց եւ ազգահամարոյ եւ պոետէից արուեստին ։ Թժ. Վասն բարուցն ազնուականութեան Ոկտաւիանեայ Կայսեր խնամութեանն եհաս ։ Ի. Եւ Կայսեր եւ Անտոնեայ բարեկամ էր ԻԱ. Ի ծերութեան խաւթացեալ զխորհուրդ մահուանն ի վեր հանէ բարեկամացն ։ ԻԲ. Մատուցեալ աղաչէին բարեկամքն բայց նա չառնայր, եւ անսուաղ մեռեալ թաղէր մօտ յԱպեայ ճանապարհն ։

## ՔԱՌԱՍՆԵՐՈՐԴ ՀԻՆԳԵՐՈՐԴ

# Տ. ՊՈՄՊ. ԱՏՏԻԿՈՍ

## ՀՌՈՄԱՅԵՑԻ

Ա. Տ. ՊՈՄՊՈՆԻՈՍ Ատտիկոս յառաջին տոհմէ անտի Հռովմայ ազգին ծնեալ, հանապազ զհեծելոյ աստիճան զոր ի նախնեացն առ, հաստատուն ունէր։ Հայր ունէր ժիր եւ ներզգղ եւ ըստ ժամանակին ըստ այնորիկ մեծատուն եւ ընթերցուածասէր։ Եւ զոր օրինակ ինքն ընդ դըպրութիւնս յօժարէր, զամենայն ուսմունս վարդապետութեան, որովք մանկութեան հասակն պարտ է յարդարել, ուսուցանէր որդւոյն։ Եւ էին մանկանն ոչ միայն միտք մըտավարժք, այլ եւ անհնարին քաղցրութիւն բանից եւ բարբառոյ, որպէս զի ոչ միայն արագ արագ ընդունէր որ ինչ աւանդէրն, այլ եւ գեղեցիկս բարբառեալ խօսէր։ Նմին իրի երեւելի ի մանկութեան ի մէջ

զուգակայացն լինէր, եւ լուսաւորա–
գոյն իմն պայծառանայր, մինչեւ ա–
շակերտակիցքն առաքինիք չկարէին
այնմ ժոյժ ունել ։ Կ՛ան այնորիկ
զամենեսեան զուարթացուցանէր իւ–
րովն փութով. որոց սակի իսկ
էին Գ. Տորկուատոս, եւ Կ. Մարի–
ոս Կայեայ որդի, եւ Մ. Կիկերոն,
զորս այնպէս ընդելական սովորու–
թեամբն ած զիւրեւ, մինչ զի չէր ոք
ինչ նոցա հանապազորդ քան զնա
սիրելի։

Բ. ՀԱՅՐՆ վաղ մեռանէր, իսկ
պատանին վասն խնամութեան Գ.
Սուղպիկեայ՝ որ ռամկապետն էր եւ
սպանաւ, չեղեւ անմասն ի տագնա–
պէ անտի նորա ։ Քանզի Անիկիա,
դուստր մօրաքեռն Պոմպոնեայ ա–
մուսնացեալ էր ընդ Մ. Սերբիոսի,
Սուղպիկեայ եղբօրն ։ Այս յետ Գ.
Սուղպիկեայ սպանանելոյ, թէպէտ ե–
տես եթէ քաղաքն Կիննեայ խռո–
վութեամբ աղմկեալ է, եւ թէ չէ
մարթ նմա ըստ պատշաճի կալ թէ
ոչ միոյ յերկուց կողմանց անտի յա–
չաց ելանիցէ, զի բաժանեալ իմնէ–
ին քաղաքացեաց միտք, այնու զի ո–
մանք Սուղղայ կողմանն եւ այլք Կի–

նեայ լինէին զօրաւիգն. դէպ ժամանակ համարէր իւրոց ուսմանց պատկառ կալ, եւ դէմ եդեալ Աթէնս գնայր: Այդ մանկանն Մարեայ՝ որ թշնամին դառեցաւ, յիւրմէ անտի նպաստ լինէր, եւ իբրեւ փախստեայ ի քաղաքէն ելանէր, տայր ինչ.: Եւ զի մի վասն ի տար աշխարհ երթալոյ վնաս ինչ իւրոց առանին իւրաց հասանիցէ, զմեծ մասն ընչից իւրոց անդր փոխեաց. եւ այնպէս անդէն կեայր, զի յարժանի եւ յիրաւի ամենեցուն աթենացւոց կարի սիրելի լինէր: Զի ոչ միայն բարս իմն քաղցունս ունէր նա, այլ եւ բազում անգամ յիւրոց իմկ ընչից նոցա հասարակաց չքաւորութեանն դիւրութիւն առնէր: Վասնզի յորժամ հարկ հասանէր փոխ ուստեք առնուլ, եւ զպարտսն հաճել, եւ չունէին յումեքէ արդար պայմանաւ առնուլ, միշտ հանապազ զանձն առաջի արկանէր, այնպէս զի եւ վաշխ երբեք չառ ի նոցանէ, եւ ոչ երկայնաձիգ ժամանակս քան որչափ ասացեալն էր, յանձն առ պարտապանս լինել նոցա, զի եւ երկոքեանն շահաւէտ էր նոցա: Վասնզի չառնոյր յանձն թէ

ներելովն հնացի առ նոսա փոխն, եւ ոչ թէ ստուարանայցէ բազմապատիկ վաշխիւք ։ Եւ այլով իւիք առատութեամբ զդոյն երախտիս աճեցոյց . զի ամենեցուն արմտիս բաշխէր, եւ միում միում եւթն գրուան ցորենոյ շնորհէր . եւ այն չափանն մեդիմնոս յԱթէնս անուանեալ կոչի ։

Գ . Եւ անդ այնպէս զանձն ընծայեցուցանէր, զի հաւասար խոնարհագունացն երեւէր եւ զոյգ իշխանաց ։ Ուստի զընաւ իսկ պատիւ եւ զմեծարանս զոր կարէինն, դնէին նմա հրապարակաւ, եւ քաղաքակից կամէին առնել ։ Բայց նա չառյանձն զերախտիսն, զորմէ այնպէս ինչ ոմանք ածեն զմտաւ, թէ զհռոմայեցւոց քաղաքն թողու որ զայլ քաղաք օտարուստ առնուցու ։ Ցորքան ժամանակս անդ էր, ընդդէմ դարձաւ, զի մի ինչ իւր պատկեր կանգնիցի, այլ յորժամ մեկնեցաւն, չկարաց արգելուլ ։ Վասն որոյ նմա եւ Պիղիայ պատկերս ինչ ի մեհենական տեղւոն կանգնեցին ։ Զի յամենայն հոգս քաղաքին գործելի եւ առաջնորդ զնա ունէին ։ Արդ առաջին շնորհ բախտին էր, զի յայնմ

քաղաքի ծնաւ, . յորում ամենայն աշխարհաց տէրութեան բնակութիւն է, որպէս զի զնոյն եւ հայրենի գաւառ ունիցի եւ տիկին։ Իսկ նշանակ իմաստութեանն այն է զի յորժամ յայնպիսի քաղաք շրջաւ, որ նախաւորութեամբ եւ մարդասիրութեամբ եւ ուսմամբ առաւել քան զամենայն քաղաքս էր, սիրելի քան զայլսն ամենեսեան եղեւ քաղաքին։

Դ. ԻՍԿ յորժամ եկն անդր Սուղղա մեկնեալ յասիացւոց կողմանց, ցորչափ անդն եկաց, ընդ իւր ունէր ըզՊոմպոնիոս, ընդ մարդասիրութիւն եւ ընդ ուսումն պատանեկին զարմացեալ։ Զի այնպէս յունարէն խօսէր, մինչ զի յԱթէնս իսկ ծնեալ կարծեցուցանէր. եւ այնչափ քաղցըր խօսէր լատինացի բարբառով, զի յայտ իմն լինէր թէ բնածին իմն քաղցրութիւն գոյ ի նմա եւ ոչ եկամուտ։ Նոյն եւ զերգս վիպասանացն կարդայր եւ յունարէն եւ լատիներէն, որպէս զի չէր մարթ այնմ յաւելուած առնել։ Նմին իրի իսկ Սուղղա չարձակէր զնա երբեք յիւրմէ, եւ ընդ իւր ցանկայր տանել։ Զոր երբեւ ջանայրն ածել ի հաւան,

Աղաչեմ զքեզ, ասէ Պոմպոնիոս, մի տանիր զիս ի վերայ նոցա, զի զիտացիս յայն սակս թողի, զի մի նոքօք հանդերձ ընդ քեզ կռուիցիմ զինու։ Իսկ Սուղղայ գովեալ զգործ պատանեկին, զամենայն պատրագըս՝ զոր յԱթէնսն ընկալեալ էր, յորժամ երթայրն, հրաման տայր նմա մատուցանել։ Բազում ամս անդէն դադարեալ, թէպէտ եւ ըզտան իւրոց հոգայր, որչափ ժիր ոք տանուտէր պարտիցի հոգալ, եւ զամենայն զմնացեալ ժամանակն կամ դպրութեան կամ աթենացւոց քաղաքին հոգոց բաժանէր տայր, սակայն եւ այնպէս բարեկամացն զպատշաճ մարդասիրութիւնն ցուցանէր։ Զի եւ ի ժողովսն նոցա կանխեալ երթայր, եւ եթէ գործ ինչ մեծ հասանէր, անդէն առ նմին գտանէր. զոր օրինակ եւ Կիկերոնի յամենայն վիշտսն հաւատարիմ գտաւ, եւ յորժամ յաշխարհէն հատուածեալ երթայր, երկերիւր եւ յիսուն հազար լումայ ետ պարգեւս։ Իսկ իբրեւ հռոմայեցւոց իրք հանդարտեցին, ապա շրջեցաւ եկն ի Հռոմ քաղաք յորժամ Գ. Կոստայն եւ Գ. Տոր-

կուսատոսն բղեշխքն էին, որպէս ինձ թուի. այն որ ամենայն քաղաքն աթենացւոց կղկաթէր զնմանէ յորժամ մեկներն, մինչ զի արտասուօք զառյապա անձուկն յայտ առնէին եւ զմորմոքեն։

Ն. Էր նորա քեռի Կ. Կեկիղիոս Հեծեալ Հռոմայեցի, ընտանեակ Լ. Լուկուղղայ, մեծատուն նեխասաստ։ Որոյ խիստ բարոյիցն այնպէս արքանեկութիւն հարկանէր, զի որում չկարէր ոք տանել, նա առանց ի ցասումն ածելոյ ցծերութիւն պարարտութեան հաշտ ունէր զնա։ Աւաստի եւ զխնամոցն արդիւնան առ. քանզի Կեկիղիոս ի մեռանելն իւրում կտակաւ յորդեգիրս առեալ զնա, ժառանգ կացոյց երից չորրորդաց արարոցն. ի ժառանգութենէ անտի առ ինքն տասն բեւրս բիւրուց լումայից։ Ամուսնացեալ էր քոյրն Ատտիկեայ, Պ. Տուղղեայ Կիկերոնի, այնց հարսանեաց առիթ լեալ էր Մ. Կիկերոն, ընդ որում ընտանեբար կեայր յորմէհետէ աշակերտակիցն էր առաւել եւս ընտանեգոյնս քան ընդ Կուինտեայ, որպէս զի մարթ էր անուլ ի միտ թէ առաւել զօրաւոր ի

բարեկամութեան նմանութիւն բարուց է, քան խնամութիւն։ Մտերիմ եւս էր Կ. Որտենսեայ, որ ի ժամանակին յայնմիկ ճարտարախօսացն ճարտարապետն էր. մինչ զի չէր իսկ մարթ ընտրել թէ ո՛ ոք զնա յերկոցունց շատ սիրիցէ, Կիկերո՞ն արդեւք եթէ Որտենսիոս. եւ որ եւս իմն դըժուարին էր, այնպէս յարդարէր զի ի միջի նոցա՝ որ նախանձընդդէմ միմեանց գովութեան էին, ոչ մի ինչ պարսաւանք լինիցին, եւ իցէ իմն զօդ այնպիսի որերոյ։

Զ. Նոյնպէս շրջէր ի մէջ քաղաքացեացն, զի ցանգ ի լաւացն կողմն էր, եւ համարեալ իսկ էր նոյնպէս. սակայն եւ ոչ ի քաղաքային ալիսն զանձն ի ներքս խառնէր, զի ոչ աւելի ինչ անձանց տեարս համարէր զայնոսիկ՝ որ այնց ալեաց զանձինս տային քան զնոսա՝ որ ծփիցինն ի ծովու ալեաց ծփանաց։ Պատիւս չխընդրեաց, ուր առաջի կային նմա, եւ վասն հաճոյ ամենեցուն լինելոյ եւ վասն աշտիճանին. զի ոչ լաւութեամբ ըստ նախնեացն կրօնից մարթ էր խնդրել, եւ ոչ առնուլ զօրէնսն պահելով յայնչափ անհնարին պար-

դեւս շուրջանակի պատապարու-
թեան, եւ ոչ ունել իսկ զիշխանու-
թիւնն առանց մշտաց վտանգի յեղ-
ծագործն ապականութեան բարուց
քաղաքին: Ի հասարակաց վաճառս
հուպ երբեք ոչ գնաց. ոչ իրիք իրաց
եղեւ երաշխաւոր, եւ ոչ վարձեցաւ
ինչ ի ժողովրդենէ. ոչ զումեքէ ամ-
բաստան եղեւ, ոչ յիւր անուն եւ ոչ
ձեռնագիրն արկանելով. վասն ի-
րոց իրաց ի դատ ոչ չոգաւ, եւ ոչ մի
ինչ դատաստան կալաւ: Զբազում
բդեշխից եւ հազարապետաց մարզ-
պանութիւնս առ, բայց զուրուք
զհետ ոչ չոգաւ ի գաւառ անդր. շատ
համարէր զպատիւն, զոր իրացյա-
ւելուածս անփոյթ առնէր, որ եւ ոչ
ընդ Կուինկտեայ իսկ Կիկերոնեայ
կամէր յԱսիա երթալ, յորժամ կա-
րօղն էր ի նա յարել հրեշտակու-
թեան պայմանաւ: Քանզի այսպէս
համարէր, թէ չվայելէ անձին ար-
բանեակ լինել հազարապետի, ուր
զհազարապետութիւնն չկամեցաւ
ունել: Որով ոչ պատուոյն եւեթ
պատկառ կայր, այլ եւ խաղաղու-
թեանն, եւ ի կարծեաց եւս յանցա-
նաց ապրէր. ուստի եւ ամենեցուն

իսկ հաճոյ թուէր զգուշութիւն նորա, իբրեւ տեսանէինն թէ վասն պատշաճից է զգուշութիւնն, եւ ոչ առ ահի ինչ կամ ակնկալութեան։

Է. Գուգ եղեւ կայսերական քաղաքային պատերազմն, յորժամ էրն ամաց իբրեւ վաթսնից։ Եկաց դատարկացեալ վասն չափոյ հասակին, եւ ոչ խաղաց ուրեք ի քաղաքէ անտի։ Որչափ ինչ պիտոյ բարեկամացըն լինեալ էր, որ առ Պոմպէոս երթային, զամենայն յիւրմէ տայր։ Ոչ Պոմպէի՝ որ ազգականն էր նորա, յաչաց ել. զի ոչ մի ինչ երախտիս էր գտեալ ի նմանէ, որպէս այլքն՝ որ կամ զպատիւս կամ զմեծութիւն նովաւ ունէին. յորոց ոմանք յակամայ կամս դնացին զհետ բանակին, եւ կէսք մնացին անդէն յաշխարհին, եւ այնպէս դժկամակ եղեւ յոյժ ընդ նոսա Պոմպէոս։ Իսկ Ատտիկեայ դադարելն յոյժ հաճոյ թուեցաւ Կայսեր, զի յետ յաղթութեան յորժամ թուղթ յղեալ պահանջէր ինչս յայնցանէ՝ որ առանց իշխանութեան էին, զսա ոչ միայն չնեղեաց, այլ եւ զքեռն որդին եւ զԿ. Կիկերոնեայն զոր ի Պոմպէի բանակէն ըմբռնեաց,

շնորհեաց ։ Նոյնպէս հին իմն կարգօքն ի նորոգ վճռոյ ամրեցաւ ։

. Ի․ ՅԵՏ այնորիկ յետ Կայսեր բռնանալոյ, յորժամ առաջնորդութիւն քաղաքին ի ձեռս Ուրուտեանցըն էր եւ Կասեայ, եւ ամենայն քաղաքն ընդ Կասիոս նայէր, նա այնպէս ընդ Ա․ Ուրուտեայ գնայր, զի ոչ ընդ ումեք ի հասարակացն աւելադոյն ընտանութեամբ էր երիտասարդն, որպէս ընդ ծերունւոյս, եւ ոչ միայն խրատատու զնա ունէր, այլ եւ գլխաւոր ի կենակցացն լինել ։ Խորհուրդ ի մտի եդեալ ոմանց զի ի հեծելազօրաց անտի կարգեսցի այնոցիկ զանձնանակ, որ զԿայսր սպանին ։ Համարեցան թէ դիւրաւ այն լինիցի, եթէ իշխանք հեծելազօրացն առցեն արծաթ ։ Կամ որոյ կոչեցաւ Նատրիկոս ի Կ․ փոխանեալ յընտանեաց Ուրուտեայ, զի կայցէ ի գըլուխ իրացն ։ Նոյն նա որ արժան համարէր զպատուհասն շնորհել քաղեկանաց առանց խռովութեան իմն կամ՝ խափանութեան, եւ ցանկ իսկ եւ միշտ յայնոսիկ խորհրդոց զանձն ի բաց մերժէր, եւ պատասխանի եւ ասէ, Որպէս զհայր Ուրուտան կա-

միցի զիմ ինչս արկանիցէ ի կիր, որչափ բաւական լինիցին ինչ.քս. եւ զայսց իրաց ընդ ումեք չկամիմ խօսել եւ ոչ միաբանել։ Եւ այնպէս այն ամբոխ միաբանութեանն սորա եւեթ չմիաբանելովն ի բաց քակտեցաւ։ Ոչ յետ բազում ինչ աւուրց սկսանէր գլել Անտոնիոս, մինչեւ Բրուտոսն եւ Կասիոս անդյոյս լինեալ յիրաց անտի նահանգացն՝ որ ի բըդեշխիցն տուեալ էր նոցա պատճառանօք, գնացին յաքսորս։ Ատտիկոս որ զարծաթն միաբան ընդ այլոցն չկամեցաւ տալ զօրացելոցն, հարեւր հազար լումայ առաքեաց Բրուտեայ պարգեւս յորժամ ի բաց անկեալ երթայր յիտալացւոց աշխարհէն. եւ երեքհարեւր հազար եւս հրամայեաց նմին տալ յորժամ յԷպիրոսն էր։ Բայց եւ ոչ զԱնտոնիոս փաղաքշէր յորժամ զօրացեալն էր, եւ ոչ զվհատեալսն ի ձեռաց թողոյր։

Թ. ԱՊԱ եհաս պատերազմն որ առ Մուտինաւ եղեւ։ Յորում եթէ իմաստուն եւեթ զնա ասիցեմ, նուազագոյն քան որչափ պարտիցիմն ասիցեմ, ուր նա մանաւանդ իղձ ումն կարծեցաւ, եթէ ըղձութիւն պարտ

իցէ կոչել՝ զհանապազորդ հաստատութիւն բնութեան, որ ոչ միով ինչ իւիք ի պատահարաց աճէ կամ նուազէ։ Անտոնիոս Թշնամի դատեալ, մեկնեալ էր յիտաղացւոց աշխարհէն եւ անկանելութիւն դարձի չգայր. եւ ոչ միայն Թշնամիք նորա՝ որ յայնժամ բազումք էին եւ զօրագոյնք, այլ եւ որք ի հակառակորդան խառնելովն զանձինս եւ մնատելովն նմա ակն ունէին Թէ շահ ինչ օգտի գտանիցեն զընտանիսն հալածէին, զՓողուիա զկինն ամենեւին կամէին կապուտ կողոպուտ առնել, եւ զորդիսն եւս պատրաստ լինէին ջընջել սատակել։ Ատտիկոս Թէպէտ եւ մտերիմ եւս էր Կիկերոնեայ եւ բարեկամ Բրուտեայ, ոչ միայն չետ Թոյլ նոցա բուռն լինել Անտոնեայ, այլ եւ նմին հակառակ զընտանեակսըն նորա՝ որ ի քաղաքէ անտի փախուցեալ հատուած գնային, ծածկէր որչափ ինչ ձեռնհաս էր, եւ որովք կարօտացան օգնական եղեւ Իսկ Պ. Վոլումնեայ այնչափ ինչ շընորհեաց, զի աւելի քան զայն եւ հօրն չէր մարթ տալ։ Եւ Փուղուիայ իսկ, յորժամ ի պահանջանաց

այլ եւ ամենայն բարեկամացն նորա թշնամի էր, եւ կամէր տարագիր առնել զնոսա, սակայն ի բազմացն աղաչել, միշեաց զերախտիս խնամակալութեանն Ատտիկեայ։ Եւ յորժամ հարցանէրն Ատտիկոս թէ ուր կայցէ, · իւրով ձեռամբ գիր գրեաց, թէ Մ՛ի երկնչիր եւ փաղփաղակի եկ առ իս. եւ զքեզ եւ զԳելղիոս Կանիոս ի թուղթ այնոցիկ՝ որ տարագիրն լինիցին ի բաց հանի։ Եւ զի մի ի վտանգ անկանիցի, քանզի գիշերայն կատարէին իրքն, առաքեաց նմա պահապանս։ Այսպէս Ատտիկոս ի մեծ երկեղին ոչ անձինն միայն, այլ եւ այնմ որ սիրելին էր նմա, եղեւ օգնական։ Զի եւ ոչ զուրոյ անձինն եւեթ զփրկութիւն յումեքէ խնդրեաց, այլ խառն, որպէս զի յայտ լինէր թէ ոչ մի ինչ իւր փառաւորութիւն կամի զատ ի նմանէ։ Ապա թէ նաւավար դրուատ գտանիցէ, որ զնաւն ի կարեձմեռն ձմերայնոյ եւ ի ծովէ ուր խութքն կայցեն, պահիցէ. զմե՞ ոչ մեծ համարիցի իմաստութիւն նորա, որ յայնչափ անհնարին քաղաքային մրրկաց ողջանդամ ապրեցաւ։

Ը.Ժ.· ԽՈՐՆԻ յայնց չարեաց ի ծան-
ծաղ ել, այլ ինչ չարար, բայց բազ-
մաց օգնական լինել, որով ուխք ձե-
ռընհաս էր։ Յորժամ զտարագիրսն
խուզէր խուժանն փարձս ի զօրաւա-
րացն առեալ, ամենեքին որ յնպի-
րոս եկին, ոչ միով ինչ ուխք կարօ-
տացան, եւ ամենեցուն համարձակ
եղեւ հանապազ անդէն կալ։ Նա եւ
յետ փիզիպեան պատերազմին եւ
սպանանելոյ Կ. Կասեայ եւ Մ. Բրու-
տեայ, խնամակալ լինէր Գ. Յուղեայ
Մոկիղղայ, որ հազարապետն լեալ
էր, եւ նորին որդւոյ եւ Ըւղեայ Տոր-
կուատեայ եւ այլոցն եւս որ ի նոյն
վիշտս կային. եւ հրաման ետ զի ա-
մենայն ինչ յեպիրացւոց քաղաքէն
ի Սամոթրակիա բերցի նոցա։ Ըայլ
դժուարին է զամենայն մի ըստ միոջէ
գրել, եւ ոչ ինչ կարեւոր։ Բայց զայն
եւեթ կամիմ եթէ յայտնի լինիցի,
թէ առատութիւն նորա ոչ վասն
ժամանակացն էր եւ ոչ խորամանգ-
մաօք։ Մարթի եւ անդստին իսկ յի-
րացն եւ ի ժամանակացն առնուլ ի
միտ. զի ոչ առ զօրաւորօքն յաւ-
րացաւ, այլ նեղելոցն ցանգ ի Թի-
կունս հասանէր։ Եւ Սերուիղեայ իսկ,

Բրուտեայ մօրն, յետ նորա մահուն նոյնպէս խապաուկայր, որպէս յորժամ յաջողեալն էր: Այսպէս առատութիւն ի կիր արկեալ, ոչ ընդ ումեք թշնամութիւն կալաւ, զի ոչ ումեք վնասէր, եւ եթէ զրկեալ յումեքէ էր, լաւ համարէր մոռանալ քան վրէժ առնուլ: Նոյնպէս եւ զերախտիսն անմահ յիշատակօք ի մտի ունէր. իսկ զերախտիսն զոր ինքն առնէր, ցայն վայր եւեթ յիշատակէր, ցորչափ նա՝ որ զերախտիսն ընկալաւ, շնորհակալ լինէր: Վասն որոյ աս եցոյց թէ ճշմարտիւ ասացեալ իցէ, եթէ Իւրաքանչիւր ումեք իւր բարքն կերպարանեն զբախտն: Այլ սակայն նա ոչ զբախտն յառաջ քան զիւր անձնն ած ի կերպարանս, որ զգուշացաւ զի մի ուրեք իրաւամբք ի տանջանս մտանիցէ:

ԺԲ. ՎԱՍՆ այսր ամենայնի Ա. Վիպսանիոս Ագրիպպա, որ մտերիմ էր պատանեկին Կեսարեայ, յորժամ վասն իւրոյ մեծի անուանն եւ Կայսերն զօրութեան ձեռնհաս էր ամենայն ուրեք կին առնել, առաւել զնորա խնամութիւնն ընտրեաց, եւ զհեծելոյ ուրուք դուստրն քան ըզ-

Հարսանիս ազնուական օրիորդացն
մեծարոյ համարեցաւ։ Եւ այնց Հար-
սանեաց առիթ ; քանզի եւ զայս չէ
պարտ զեղչել, Մ. Ընտանիս եղեւ,
մի. ոմն յերից արանց անտի որ չի-
նութիւն առնելոց էին քաղաքին.
եւ մինչ կարօղն էր նորա պատասխա-
րութեամբ զիւր արարան բազմա-
ցուցանել, այնչափ մեկուսի էր յըն-
չից ցանկութենէ, զի ոչ յայլ ինչ ըղ-
նորա պատասպարութիւնն ի կիր ար-
կանէր, բայց վասն զբարեկամին ի
վշտաց կամ ի նեղութեանց ապրե-
ցուցանելոյ։ Նյա յայտ իմն առա-
ւել եղեւ ի տարագրութեանն ժա-
մանակի։ Զի յործամ երեք արքն,
ըստ սովորութեանն որ յայնժամ էր
վաճառէին զարարս Մաւփէի հեծե-
լոյ հռոմայեցւոյ, իւրոյ զուգականնին,
որ զբազում ամս վասն փիղխոփայ-
ութեանն փուխթոյ յՆ.թէնս բնա-
կէր, եւ յիտաղիա ունէր ստացուածս
մեծագինս, Ռատիկեայ աշխատու-
թեամբն եւ իմաստութեամբ այն-
պէս գէպ եղեւ, զի Մաւփեոս ի նմին
պատգամաւորէ լուաւ թէ զժառան-
գութիւնն հայրենի կորզյս եւ դար-
ձեալ առ։ Նոյն եւ զՅուղիոս Կաղի-

դոս զուամ մարթի, որպէս ինձն թըւի, վճռել թէ յետ Լուկրետեայ եւ Կատուղեայ մահուն, ճարտար քան զամենեսին պէտս կացեալ իցէ ի մերում տիս, զայրն առաքինի եւ գեղեցիկ գեղեցիկ արուեստից հմուտ, ի տարագրութենէ ապրեցոյց, զի յետ հեծելազօրացն տարագիր լինելոյ, վասն բազում արարոն յափրիկեցւոց աշխարհին ունելոյ, ի տարագրելոցն համար խառնեալ էր զնա Պ. Վօլումնեայ՝ որ ոստիկանն էր հիւսանցն Անտոնեայ, եւ ինքն Յուղիոս չէր անդ։ Եւ դժուարին էր ի ժամանակին յայնմիկ ընտրել, եթէ առաւել աշխատութեան էր գործն եթէ փառաց. քանզի յայտ եղեւ թէ զբարեկամացն հեռաւորաց եւ մերձաւորաց զնոյն օրինակ խնամ ունիցի Ատտիկոս ի վիշտանս նոցա։

Գ.Ժ. Զոր օրինակ բարւոք քաղաքացին էր, նոյնպէս եւ լաւ տանուտէր էր այրն։ Զի թէպէտեւ ընչաւէտ էր, ոչ ոք սակաւ քան զնա ուտէր, եւ շինուածս յօրինէր։ Սակայն եւ ի բարւոք տան բնակէր, եւ զամենայն ընտիր ընտիր իրաց արկանէր ի կիր։ Զի ի Կուիրինաղիս բլերն

զտամփիղեան ապարանսն ունէր, զոր ժառանգութեամբ թողեալ էր քեռւոյն, որոյ գեղեցկութիւն ոչ ի կազմածոյն էր, այլ ի մայրույ անտի։ Զի ինքն իսկ յարկն որ ի հնումն կազմեալ էր, առաւել լի էր վայելչութեամբ եւ ոչ ծախիւք. յորում ոչ մի ինչ փոփոխեաց, բայց միայն զոր ի հարկէն վասն հնութեանն փոխեաց։ Էր նորա տուն լաւ եւ բարի, եթէ պարտ իցէ պիտանութեանն դատաւոր լինել, ապա թէ կերպարանացն հազիւ թէ չափաւոր իսկ։ Զի էին ի նմա մանկունք հմուտք դըպրութեան, եւ բարւոք ընթերցիչք, եւ բազումք որ գրիցեն օրինակս գըրոց. որպէս զի չէր ոք ի գերդաստանաց որ չկարէր քաջ ընթեռնուլ կամ գրել օրինակս գրոց։ Ըստ նմին օրինակի եւ այլ եւս քաջ ճարտարապետք գոյին արուեստից, որովք կարօտ է տան սպասաւորութիւնն։ Սակայն ամենեքին ի նոցանէ անդէն յաշխարհին ծնելոց էին, եւ ի կըրթելոյն անդէն, որ ոչ միայն ժուժկալութեան նշանակ է, այլ եւ փութոյն եւ հաւաստեաց։ Քանզի ըղստատիկն չցանկանալ, զոր բազումք

ցանկանան, ժուժկալութեան պարտ է համարել. եւ առաւել փութոյն եւ վաստակովք քան գնովք զպէտսըն պատրաստել, ոչ դոյզն ճարտարութեան է։ փառաւոր եւ ոչ շքեղ, մեծապայծառ եւ ոչ ի բազում ծախըս հատեալ, սրբութեան եւ ոչ յղփութեան պատկառ կայր. չափ ինչ կահ եւ կազմած եւ ոչ բազում, ի հասարակակշիռն չափու։ Նա եւ ոչ զայնու արարից զանց, թէպէտ եւ գիտիցեմ թէ ոմանց թեթեւ ինչ թուիցի։ Թէպէտ եւ մեծատունն հեծեալ հռոմայեցի էր, եւ ոչ սակաւ առատութեամբ ի տուն հրաւիրէր արս յամենայն կարգէ, բայց ոչ աւելի քան զերիս երիս հազարս պղընծոյ ծախս ամսոյ ամսոյ լեալ գտանէր յօրըստօրէ գիրսն։ Եւ զայս ոչ ի լսելոյ պատմեմք, այլ մեզէն իսկ ի վերայ հասեալ. քանզի բազում անգամ առ ընտանութեան առընթեր էաք տան իրաց։

Գ.Ժ.. Ոչ ոք ի կոչունս նորա այլ ինչ լուր լուաւ, բայց միայն զընթերցիչն. զոր եւ մեք իսկ հեշտականագոյն համարիմք։ Եւ ոչ երբեք ճաշ եղեւ առ նմա առանց իրիք ընթեր-

ցուածոյ, որպէս զի ոչ սակաւ միօք
քան պորտով զուարճասցին կոչնա-
կանքն. զի զնոսա կոչէր, որոց բարք
չէին օտար յիւրոց բարոյիցն։ Թէ-
պէտ եւ այնչափ յաւելուած եղեւ
ընչիցն, ոչ ինչ ի համապազօրդ ըն-
պասուէն փոփոխեաց, եւ ոչ ի կար-
գացն սովորութենէ, եւ այնչափ ըզ-
գաստութիւն ի կիր արկանէր, զի ոչ
յորժամ զերկու հազարս հազարաց
լումայից ունէր, զոր ի հօրէն ժա-
ռանգեալ էր, առանց շքոյ կեայր.
եւ ոչ յորժամ զտասն հազարս հա-
զարաց լումայից ունէր աւելի յըղ-
փութեամբ եկեաց քան զհանապա-
զօրդ կարգն. այլ ի նմին փառաւո-
րութեան եկաց յերկոսեան ժամա-
նակսն։ Դրախտս չունէր, եւ ոչ ա-
րուարձանեայ կամ ծովեզերեայ
հանգրուանս, վասն որոյ բազում
ծախք առնիցին, եւ ոչ յԻտալիա իսկ
բաց յԱրդէատինեայ եւ Նումենտա-
նեայ շինականութեան կալուածոց.
բնաւ իսկ հաս ընչից նորա ի ստա-
ցուածոց անտի էին, որ յԵպիրոս եւ
ի Հռոմ էին։ Աստի մարթի ի վերայ
կալ հաւաստեաւ, թէ նա զընչիցն
պիտանութիւն ոչ յաճախութեամբն

այլ իմաստութեամբն սովոր էր չափել։

ԺԵ. ՍՈՒՏ չասէր, և ոչ ստութեան կարէր տանել։ Նմին իրի ընդընկերաւէր բարք նորա ոչ առանց խստութեան էին, և ոչ սաստկութիւն առանց հեզութեան. որպէս զի դժուարին առ իմանալ էր թէ առաւել ա՞կն ածիցեն ի նմանէ բարեկամքն, եթէ սիրիցեն զնա։ Վասն որոյ իրիք աղաչէրն, խնամով խոստանայր. զի ոչ առատութեան այլ ցոփութեան համարէր, զոր չիցէն ձեռնհաս տալ, խոստանալ։ Նոյնչափ հոգաբարձութիւն ունէր գուն գործել վասն այնր զոր միանգամ յանձին կալաւ, զի կարծեցուցանէր այսպէս թէ ոչ զյանձն եղեալ ինչ, այլ զիւր իսկ իրս վճարիցէ։ Ոչ ի գործոյ ինչ զոր յանձն առ, տաղտկացաւ երբեք. քանզի համարէր թէ նովին մեծարոյ լինիցի, և ոչ մի ինչ քան զմեծարոյն համարել սիրելի էր նմա։ Ուստի զամենայն իրս զՄ. և Կ. Կիկերոնայն, զԿատոնին, և ըզՄարեայն, և զԿ. Որտենսեայն, և զՂուկեայ Տորկուատեայ, և զայլոց ևս բազում հռոմայեցւոց հեծելոց

իւրքն հոգայր։ Որով մարթ էր ընտրել թէ ոչ ծուլութեամբ, այլ մտախորհ լինելով իմաստութեամբ ի հոգաբարձութենէ քաղաքին փախչէր։

ԶԳ. Իսկ մարդասիրութեանն չեմ տեսակ մեծ ինչ քան զայս վկայութիւն յառաջ բերել, զի յերիտասարդութեանն Աուղղայ ծերունւոյ քաղցր եւ բարերար թուեցաւ, եւ ի ծերութեանն Ա՝. Որուտենայ առն երիտասարդի. իսկ ընդ իւրոցն զուգակցանաց Կ. Որտենսեայ եւ Մ՝. Սիկերոնի այնպէս կեայր, որպէս զի դժուարին էր ընտրել, թէ որում հասակի արդեւք պատշաճագոյն իցէ. թէպէտ եւ աւելի իմն սիրեաց զնա Սիկերոն, որպէս զի եղբայր իսկ իւր Կոյինկտոս չէր նմա եւս առաւելագոյն սիրեցեալ եւ ընտանեգոյն։ Եւ իւրացն նշանակիչք լինիցին, ոչ միայն մատեանքն յորս զնմանէ առնիցէ յիշատակս, որք ի խառնաղանձն սփռեցան, այլ եւ վեշտասան մատեանք թղթոցն, որ ի բդեշխութենէ անտի նորա մինչեւ ցվերջին ժամանակն առաքեցան առ Ատտիկոս. զոր թէ ընթեռնուցու ոք, չկարօտիցի տաղեալ պատմութեան այնց ժամանա-

կաց. քանզի ամենայն ինչ որ վասն փութոյ իշխանացն իցէ, եւ վասն յուղութեանց զօրաւորաց, եւ փոփոխմանց քաղաքին մի ըստ միոջէ գրեալ կան, մինչեւ չիք իսկ ինչ որ ոչ յայտնի լինիցի ի նոսա, եւ դիւրաւ մարթիցի կարծել թէ իմաստութիւնն բղձութիւն իմն է: Քանզի ոչ եթէ զայնցանէ եւեթ յառաջագոյն խօսեցաւ Կիկերոն թէ լինելոց են, որ առ նորա կենդանութեամբ ի գլուխ ելին. այլ եւ որ ինչ այժմն դիպին, իբրեւ իղձ նուագեալ հնչեաց:

ԺԷ. ԻՍԿ վասն գթոյ եւ խնամոց Ատտիկեայ զի՞ իցէ եթէ բազում ինչ յիշատակիցեմ, որովհետեւ լըւայ ի նմանէ յորժամ վասն նորին պարծէր ի մօրն յուղարկաւորութեան զոր իննսնամենի թաղեաց, յորժամ ինքն վաթսուն եւ եւթն ամաց էր, թէ ոչ երբեք ընդ մօրս ի հաշտութիւն եկի, ոչ երբեք ընդ քեռն թըշնամացայ, որ գրեթէ զուգական իւր էր նմա: Եւ այս յայտնի իսկ նշանակ է, թէ կամ ոչ մի ինչ երբեք գժտութիւն ի միջի լեալ իցէ նոցա, կամ զի սա այնչափ ներելով ընդ իւրան գնայր, մինչ զի զորս սիրելն

պարտէր, նոցա չհամարէր արժան ցանուլ։ Եւ զայդ ոչ յախտաւորական եւեթ արար, թէպէտ եւ ամենեքեան բնութեանն հնազանդ լինիցին․, այլ եւ ուսմամբն։ Զի եւ զհրամանս ճարտարապետացն փիլիսոփայից այնպէս ի մտի ունէր, զի ըզնոսա առ վարուցն լաւութիւն ի կիր արկանէր եւ ոչ ի ցոյց։

ԻԹ․ ՆԱԽՆԵԱՑՆ եւս բարոյից առաւել նմանող նախանձաւոր եղեւ, եւ նախաւորութեան սիրելի․ որում այնպէս հաւատեաւ հմուտ էր, զի զբնաւ իսկ զհին յիշատակս եհար ի մատեններն, որով զիւր իշխանութիններն պայծառացոյց։ Քանզի չգոն օրէնք, չիք խաղաղութիւն եւ պատերազմ, եւ երեւելի ինչ իրք Հռովմոց ժողովրդեան, որ ոչ ըստ իւրաքանչիւր ժամանակաց գրեալ կայցէ ի մատեններն․ եւ որ եւս իմն դըժուարին իցէ, այնպէս զսկիզբն տոհմիցն իւրաքանչիւր կարգ ըստ կարգէ յեռու, զի անտի մարթի ի վերայ կալ ծննդոց արանց երեւելեաց։ Իզդոյն իսկ յայլ գիրս ուրոյն գրեաց, որպէս ի Մ․ Բրուտեայ խնդրոյ ըզյուլիական տոհմն ի զարմէ մինչեւ

ցուրս կարգաւ համարեցաւ, նշա-
նակեալ թէ ս յումէ ծնաւ, եւ զոր
պատիւս յոր ժամանակս առ: Նոյն-
պէս եւ Մ. Կղաւդեայ աղաչելով,
զՄարկեղեանց տոհմէ գրեաց. եւ
Սկիպիոնեայ Կոռնեղեայ եւ փաբեայ
Մաքսիմեայ խնդրով, զԿոռնեղեան-
ցըն եւ զփաբեանց եւ զԷմիղեանց
եւս: Չիք ինչ քան զայն գիրս հեշ-
տական այնոցիկ որոց կայցէ ինչ ցան-
կութիւն ի մտի տեղեակ լինելոյ ա-
րանց երեւելեաց: Ձեռն արկ եւ ի
պուետէից արուեստն. մեզ այսպէս
թուի թէ ոչ անմասն էր յայնր ա-
րուեստի քաղցրութենէ: Քանզի
չափով բանիւք նշանակեաց թէ ոյք
ի Հռովմոց ժողովրդենէ պատուովն
եւ նահատակութեամբք զայլովք
անցուցին. այնպէս զի ընդ պատկե-
րօք միոյ միոյ ի նոցանէ, զգործս եւ
զիշխանութիւնսն զոր կալան, ոչ ա-
ւելի քան չորիւք չորիւք կամ հինգ
հինգ չափոյ բանիւք գրէր. որ չա-
ւատալի իսկ թուի թէ հնար իցէ
այնչափ իրաց այնպէս համառօտիւք
յայտնի լինել: Գոյ եւ գիր ինչ գը-
րեալ յունարէն վասն բդեշխութեան
Կիկերոնեայ:

Թ. Գ.։ ՄԻՆՉԵՒ ցայս վայր առ Ատ-
տիկեայ կենդանութեամբ առ ի մէնջ
գրեցան տողքս։ Այժմիկ քանզի այս-
պէս կամ եղեւ բախտին զի մեք ա-
ւելի քան զնա կեցցեմք, ընդ միա-
ցեալսն մի ըստ միոջէ անցանիցեմք,
եւ որչափ կարողքն իցեմք յիւրացն օ-
րինակաց ուսուցանիցեմք այնոցիկ որ
ընթեռնուցուն, որպէս վերագոյնն
նշանակեցաք, թէ բազում անգամ
իւրաքանչիւր ումեք իւր բարքն ա-
ռիթ լինիցին բախտին։ Քանզի սա
շատ համարեալ զհեծելազօրաց կար-
գըն, յորում ծնեալն էր, եհաս ի
խնամութիւն քաջի զօրավարի Յու-
ղեայ որդւոյ, զի եւ յառաջն իսկ
ընտանեցեալ էր ընդ նմա, ոչ այ-
լով ինչ իւիք բայց ընտիր կարգօքն,
որովք եւ զայլ եւս իշխանս քաղա-
քին զիւրեւ էր ածեալ, որք ի նոյն
կշիռ պատուի վայելէին, այլ ոչ ի
նմին ազնուութեան։ Ըստ այնչափ ա-
ջողութիւն զհետ երթայր սորա Կայ-
սեր, զի զինաւ շնորհէր նմա բախտն,
զոր տուեալ էր ումեք յառաջ ժա-
մանակաւ, եւ զայն ամենայն որում
չկարէր հասանել այր հռոմայեցի,
շնորհէր։ Նմա Ատտիկեայ աղջիկ

մի Մ. Ագրիպպեայ, որում զդուստրն իւրյս տուեալ էր ի կնութիւն։ Զա. յորժամ աղջիկ տարեւոր էր,· Խօսե-ցաւ Կայսր Տիբերիոս Կղաւդեայ Նե-րոնի իւրայ ընձուլին, որ ի Դրուսիդեայ ծնաւ։ Այն իսկ խնամութիւն հաստատուն արար զբարեկամութիւն նոցա, եւ զընտանութիւնն եցոյց յանձախադոյն։

Ի. Թ.Վ.Գ.Վ.Տ եւ յառաջ իսկ քան զխօսել Հարսանեացն, ոչ միայն յորժամ ի բացեայն էր ի քաղաքէն, ոչ երբեք առաքէր թուղթ առ մի ոք յիւրոցն, առանց եւ Մ. Ատտիկեայ առաքելոյ թէ զինչ գործիցէ, եւ մանաւանդ թէ զինչ ընթեռնուցու, յոր տեղիս յինչ վայրս իցէ, եւ որչափ ժամանակս անդ կայցէ. այլ եւ յորժամ ի քաղաքի անդ էր, եւ վասն բազում զբօսանացն ոչ որպէս կամէրն վայելէր Մ. Ատտիկոս, ոչ զանց վայրապար օր յորում ոչ գրեաց առ նա գիր, եւ խնդրեաց հին ինչ յիշատակըս ի նմանէ, մերթ խնդիր ինչ պոետէից ճարտարութեան առաջի դնէր նմա, մերթ ընդ խաղ իմն զըրելով բազմաբան թուղթս ի նմանէ առնոյր հնարիւք։ Ուստի դէպ ե-

եւ մեծութեամբ, քանզի բազում ժառանգութիւն ստացաւ, ոչ այլով իւիք այդ լաւութեամբն, եւ այնչափ յառողջութեան վայելեաց, զի զամս երեսուն դեղոց ոչ կարօտացաւ, ախտ կալաւ զնա. բայց իսկզբանն ոչ ինքն եւ ոչ բժիշք գրէին ինչ զախտն, զի կարծեցին թէ տենդամոս իցէ, որում արագագոյն եւ կակղիչ դարմանք բժշկութեան կազմէին: Իբրեւ ի նմին հանէր ի գլուխ զերիս ամիսս առանց ցաւոց, բայց միայն ի ցաւոցն որ ի դարմանոյ անտի լինէր, յանկարծակի այնչափ յորդեաց բռնութիւն ցաւոցն ի մի յաղեացն, զի ի յետին ժամանակին ընդ մէջս թարախ. ելանէր: Այլ մինչ չեւ այն հասեալ էր ի վերայ նորա, իբրեւ իմացաւ թէ օր ըստ օրէ ցաւքն զայրանան եւ ջերմն յաւելու, հրաման ետ զՄ.գրիպպա զփեսայն առ ինքն կոչել եւ ընդ նմա զՂ. Կոռնեղիոս Ռուղբոս եւ զՄեքսիոս Պեդուկէոս: Իբրեւ ետես եթէ եկին, յարմուկնն յեցեալ ասէ. Թէ որչափ հոգաբարձութիւն յանձին կալայ ի ժամանակի աստ յայսմիկ վասն խաթութեանս դարմանոյ, որովհետեւ զձեզ իսկ վկայս իրացն ունիմ, չէք

ինչ հարկ ի վերայ բազում բանիւք յիշատակել։ Մեծ քանզի զձեր միտքս հաճեցի, որպէս կարծեմ, եւ ոչ մի ինչ թողի որ առ իմ առողջութիւն էր, կայ մնայ զի եւ ինձ ինձէն խնամ կալայց։ Ոչ կամեցայ եթէ տգէտք իցէք ի սմանէ. զի իմ ի մտի այն կայ, դադարել այսու հետեւ ի զախտն պարարելոյ։ Քանզի յաւուրս յայսոսիկ զոր ինչ կերայ, նովին զկեանս ձգեալ յերկարեցի եւ զցաւսն աճեցուցի, առանց յուսոյ փրկութեան։ Նմին իրի նախ խորդրեմ ի ձէնջ զի խորհուրդ իմ հաճոյ թուեսցի ձեզ, յետ այնորիկ զի մի ընդ վայր աշխատ լինիցիք յորդորելով եւ աղաչելով։

ԻԲ. ԻԲՐԵՒ զայս խօսեցաւ, այնչափ հաստատուն էր բարբառն եւ երեսացն տեսիլն, զի ոչ ի կենաց, այլ ի տանէ ի տուն կարծեցուցանէր չուել եւ գնալ։ Իսկ յորժամ Ագրիպպա լայր զնա եւ համբուրեալ աղաչէր եւ փարելի լինէր, թէ մի զայն՝ զոր բնութիւնն տագնապիցէ եւ ինքնին եւս երագեցուսցէ. եւ զի կարող է դեռ եւս ժամանակ ինչ կենդանի կալ, պահեսցէ իւր եւ իւրոյն

զանձն. նա կարծեաց զաղաչանս նոցա յամառեալ պնդեալ լուռ։ Իբրեւ այնպէս զաւուրս երկուս ի կերակրոյ ժուժկալէր, յանկարծ տենդն ի բաց փարատեցաւ, եւ ախտն սկսաւ թեթեւանալ։ Սակայն զոր ի մտին եդեալ էր, արար։ Վասն որոյ յետ չորից աւուրց զխորհուրդն զայն խորհելոյ, մինչ աւուրք յառաջ քան զկաղանդս ապրիլիս ամսեան, որ է ահեկանի, վախճանեցաւ, եւ Կն. Դոմետիոս եւ Կն. Սոսիոս հիւպատք կային յայնժամ։ Հանաւ դին ի գահոյսն որպէս ինքն իսկ հրաման տուեալ էր, առանց ինչ շքոյ յուղարկաւորութեան, եւ լինէին ուղեկիցք նմա լաւքն ամենեքին հանդերձ բազմամբոխ յաճախութեամբ ռամկին։ Թաղեցաւ մօտ յԱպեայ պողոտայն ի վէմն հինգերորդ[19], ի շիրիմն անդ Կեկիլեայ քեռւոյ իւրոյ։

# ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՔ

1. ՈՄԱՆՔ զմայրն Թեմիստոկլի աքառնացի կոչեն: Եւ Պղուտարքոս իսկ յայտ առնէ եթէ բազում չմիաբանութիւն ի մէջ մատենագրաց վասն կնոջն քաղաքի կրի:

2. Փոխանակ այնր զի առէ ի բոցոյ անտի, ոմանք ի համբաւէ անտի, ասեն: Քանզի բոցոյ անուն ի նոցա լեզու ի համբաւ մերձ է. զի զատենացիք ըստ իւրեանց բարբառոյ զբոց Փղամմա անուանեն եւ զհամբաւ Փամա:

3. Պղուտարքոս յայտ առնէ թէ որպիսի ինչ խեցեկայտ վճիռն իցէ: Եւ զի, ասէ, ի կարճոյ հատոյց, այսպիսի օրինակաւ այն կատարէր: Իւրաքանչիւր ոք զխեցին առնոյր, եւ զքաղաքացին զոր կամէր թէ ըստ աշխարհէ եղանիցէ, գրէր ի խեցուոջն, եւ առեալ ածէին ի տեղի հրապարակին, զորով խաղխամք պատեալ էին: Այս իշխանքն նախ կային համարէին զամենայն կուտեալ խեցին. եւ եթէ չանցանէր ընդ վեց հազար թիւ համարոյ այնոցիկ որ գրեցինն, զուր էր խեցեկայտ վճիռն: Յետ այնորիկ զիւրաքանչիւր անուանս ուրոյն զատ ի միմեանց դնէին. եւ որ ի բազմացն գրեալ էր, նմա առհմանէին զտասն ամ տարագիր լինել, բայց զինչս շնորհէին: Պղուտ. յԱրիս. Ցուց. Գ. 21:

4. Ոմանք, Առանց ուրուք ի նաւարդաց դիտելոյ, ասեն:

5. Իւս իմն զարմանալիս զնմանէ պատմէ Պղուտարքոս։ Մինչ դեռ, ասէ, զանուանսըն ի խեցիսն գրէին, ասի թէ առանց դպրութեան ոք եւ ամենեւին իսկ խամ, Արիստիդեայ իբրեւ՝ միում ումեք ի ռամկէ անտի զխեցին ետ, եւ աղաչեաց զի զԱրիստիդէս գրեսցէ։ Նորա զարմացեալ եհարց, թէ Գործեա՞ց ինչ քեզ Արիստիդէս. Ոչ, ասէ, նա ինձ եւ ծանօթ իսկ չէ. այլ դըժկամակ լինիմ, զի ամենայն ուրեք լսեմ թէ արդար կոչի։ Զոր լուեալ, ոչ ինչ պատասխանի տայ, պատմեն զԱրիստիդեայ, եւ գրեալ զանունն ի վերայ խեցւոյն տայ նմա։ Պղուտ. յԱրիս. Ցում. Գ. 21։

6. Թէ զինչ սկիւտաղէ իցէ, պատմէ Հաւաստեաւ Պղուտարքոս։ Ղակեդմոնացւոց պարէտք, ասէ, յորժամ զոք իշխանհրամանատար ուրեք կարգիցեն, յօրինեն ցուպս երկուս, ամենեւին հանգոյն միմեանց կշիռ հաւասարակ, զմին անդէն առ իւրեանս պահեն եւ զմեւսն եւս զօրավարին տան։ Եւ իբրեւ իրս ինչ երեւելիս ի ծածուկ կամիցին ազդ առնել, առեալ մագաղաթ նեղ եւ նուրբ պատեն զցպովն շուրջանակի, եւ գրեալ ի վերայ զոր կամիցինն, հանեալ զմագաղաթն առանց ցպոյն առաքեն առ զօրավարն որ զմեւս ցուպն ունիցի։ Իսկ նա թէպէտ եւ զառաջինն չկարէ ընթեռնուլ. քանզի մեկնեալ ի միմեանց են նշանագիրքն, այլ իբրեւ անդէն զցպովն պատիցէ, զոր առ իւրն ունիցի, ի վերայ հասանիցէ բանիցն։ Արդ քանզի ի յոյն լեզու սկիւտաղէ զցուպըն կոչեն, վասն այնորիկ եւ հրովարտակն

զնոյն անուն կալաւ ։ Պղուտ. ի Դիւոն. Յամ. Գ. 340 ։

7. Ցայսմ վայրի Թերի է պատմութիւնն, եւ պակասէ իսկ յամենայն օրինակս. այդ դիցուք զԹերին կարճ ի կարճոյ ։ Հրապարակախօս լինէր յՆրակղեայ մեծհեննին ողոք բանիւք եւ քաղցրութեամբ, այնոցիկ որ ձայնեցեալ էին ի քաղաքի անդ ։ Իսկ փախըստականացն հաւատացեալ բանից նորա, զի Թողութիւն տանէր եւ բազում ինչ խոստանայր. դարձան ի տունս իւրեանց ։ Բայց յետ ոչ բազում աւուրց ամենեքին իսկ կոտորեցան ։

8. ԱյլքՊակտիւէն անուան կոչեն քաղաքին եւ զերեւոյն աւանան Բաանաս, Բիւսանթէս եւ Նէանտիքէ անուանեն ։ Այսպիսի այլակերպութիւնք բազում անդամ դտանին. այդ մեք առաւել մերում օրինակի զհետ երթեալ, զգլխաւորան եւեթ նշանակեմք ։

9. Ոմանք համառօտ համարեալ այսպէս առանն, Որ ինչ բանք իցեն արքայի ընդ Ղակեդմոնացիս, անօգուտ իցեն, Թէ ոչ. այլովքն համդերձ ։

10. Ոմանք, Զառաջինն, ասեն, ոչ նա, այլ սակաւութիւն նորա արհամարհ Թուէր բանաւորացն ։

11. ԶԱքերոնտեայ ասեն պոետայք, եԹէ գետ է սանդարամետաց, եւ առասպելարկեն այսպէս եԹէ մինչ չեւ գիտակութիւնք մեռելոց անդր հասեալ իցեն, խարխուլ նաւաւ ընդ այն գետ անցանեն, որոյ նաւանաւավար Կարոն կոչիցի ։

12. Մերն եւեթ Երկքթոնէս ասէ ։

զհակառակութիւնսն ցանուցանէ։ Դարձեալ նշանակ ինչ է խաղաղութեան պագամաւորաց, զորով երկու օձք գալարեալ կային. զի զոր օրինակ նոքա մոռացեալ զժանգաւոր դժնդակութիւնն միաբանիցեն ընդ միմեանս, նոյնպէս թշնամեացն զթշնամութիւն մերժեալ ի բարեկամութիւն դառնայցեն։

18. Այս մատեան յորում զհռոմայեցւոց երեւելի զօրաւարաց ճառէ մատենագիրն, կորեաւ. նոյնպէս եւ մատեանն զոր զպատմագրաց Յունաց գրեալ էր, որպէս ինքնին ի Դիոնի վարսն յայտ առնէ, եւ միւսըն եւս զոր զԿատոնէ գրեաց, զորմէ ինքըն ի վարսն Կատոնի ճառէ, չեն ի միջի։

19. Այս ինքն հինգ,մղոնաւ հեռի ի Հըռոմ քաղաքէ. քանզի վէմք կանգնեալ էին մղոնի միոջ անջրպետութեամբ։

# ԴԻՐ ԳԼԽՈՑ